

# Մ Ա Տ Ե Ն Ա Գ Ր Ո Ւ Թ Ի Ւ Ն Ք

# ՆԱԽՆԵԱՑ

---

## ՆԵՄԵՍԻՈՍ

# ՆԱԽԱԲԱՆ

Ի լոյս ածել զնախինի մտաւորական երկուցս հանճարեղ որերոյն՝ գոգցես իմն կէտ նպատակի լեալ է մերոցս ժամանակաց, յորում քաջ 'ի վերայ հասեալ կամք եթէ 'ի զուր է խնդրել զյառաջադէմ զարգացումն դպրութեանց և գիտութեանց և արուեստից՝ առանց առաջնորդ ունելոյ զիմաստախնդիր փորձս նախնեաց մերոց: Այլ իմն դարձեալ հրատարակութեան երկասիրութեանց հնոց՝ դիտումն մտաց գտանի՝ տալ 'ի միտ առնուլ մտացեաց մերոցս ժամանակաց՝ որչափ պարտական գտանիմք առ անդուլ ջանս վաստակոց նոցին, և որքան շնորհ ունել առաջի կայցէ մեզ զաշխատալից հետազօտութեանց, զհամբերատար խուզարկութենէ, զհանճարեղ դրութեանց և զբարեբաստիկ գիւտիցն: Քաջ իսկ հարկ 'ի վերայ կայ մէն միոյ դարուց ժամանակի զարգանալ քան զնախորդս իւրաքանչիւր, այլ ոչ 'ի դէպ մոռանալ՝ զի և այն յառաջադիմութիւն հիմն ինքեան ունի զվաստակս առաջնոց, յորոց ժառանգեալ զմեծագոյնն և մասն ինչ լոկ յաւելուած սեփական 'ի վերայ եդեալ՝ թողու զայն առ որս զհետ իւր յաջորդեսցեն: — Սոյն այս ահաւասիկ և դիտումն կամաց մերոց 'ի հրատարակութեան աստ մատենիս, որ ընծայէ զճառս Նեմեսիոսի Իմաստասիրի՝ Յաղագս բնութեան մարդոյ:

Առ սակաւս ամանս 'ի բանասիրաց ծանօթ համարիմ զանուն Նեմեսեայ Եմեսացւոյ. յոլովագոյնք 'ի պատմագրաց և յիմաստասիրաց ոչինչ յիշատակեալ նշանակեն զնմանէ. այլ մատեանս այս՝ արդիւնք ուշիմ մտաց առնն՝ յարժանաւորաց անտի հռչակեն զնա 'ի շարս իմաստնոց նախնի դարուց. զի ակներև նշմարեմք 'ի սմա զանարատ վարդապետութիւն լաւութեան բարոյից, զեռանդուն հաւատոց, վսեմախոհ մտաց

և հաստահիմն ընծայութեանց բանից, ոչ ինչ սահմանափակ
գիտութեամբք նաև արտաքին հեթանոսական աւանդու-
թեանց։ Եւ զի վախճան մտաց Նեմեսիոսի ոչ միայն ճառել է
զմարդոյ իբրև զիմաստասէր և զքրիստոնեայ, այլ յաւէտ
որպէս քննող հոգեբանական և նիւթական մարդկեղէն կազ-
մածոյս, այսու մեծագոյն ևս և օգտաւէտ արժանիս բերէ
յինքեան մատեանս ըստ մասին բնական գիտութեանց, զի
խօսի զմարդոյ՝ նկարելով զնա էակ 'ի կարգի արարածա-
կան բնութեան, անկեալ ընդ ազդեցութեամբք ազգի ազգի
հանգամանաց և յեղափոխութեանց՝ ընդհանուր և մասնա-
ւոր օրինաց բնութեան, յորում ծնանի, զարգանայ և մեռա-
նի։ Զարմանք արդարև յարուցեալ 'ի միտս անդ ընծային 'ի
լսել մեր 'ի բերանոյ իմաստասիրիս՝ վեշտասան չրջանօք գա-
րուց հինաւուրց քան զմեզ՝ դիտողութիւնս և վարդապետու-
թիւնս զգայնոց մարդոյ, զկանոնաւոր ամփոփմանէ և զընդ-
լայնելոյ նրակաց՝ որոց զսիրտ աւանդէ պատճառ, զշնչառու-
թենէ՝ զոր 'ի բաղդատութիւն ձգէ ընդ այրեցման, այլովքն
հանդերձ, զորս տեսանել է մտացի ընթերցանելեաց յառա-
ջիկայս գլուխ բանից նորին։

Ճոխագոյն ինչ աւանդել զհանգամանաց կենաց մատե-
նագրիս փափաքելի էր և մեզ, այլ քօղարկեալ հնութեան՝
չթողու մեզ ստուգագոյնս գիտել զնմանէ։ Ածից աստ 'ի մէջ
զբանս գիտնագունի ուրումն 'ի մերայնոց Հարց, յեղլով 'ի
բարբառ գրոց զաշխարհիկ լեզուաւ գրոշմեալսն 'ի նմանէ 'ի
հմտալից մատենին իւրում որ Ցաղագս Թարգմանութեանց
Նախնեաց. (էջ 629)։

«Ի Մատենադարանի Հարց տպագրելոյ 'ի Լուգդոն Գաղ-
«ղիոյ՝ կարգեալ տեսանի անուանեալն Ցաղագս բնութեան
«մարդոյ յանուն Նեմեսիոսի. կանուխ ժամանակաւ 'ի լոյս
«ընծայեալն (1565) 'ի ձեռն Ելլեբոտեայ Նիկասիոսի, և ըն-
«տրելագոյն ևս 'ի Քրիստիան Փր. Մատթէէ 'ի Հալլ Գեր-
«մանիոյ, յամին 1802։ Քառասուն և հինգ գլուխք բանից
«պարունակին 'ի գիրս անդ. յորոց երկրորդն և երրորդ ըն-
«ծային յոմանց Գրիգորի Նիւսացւոյ, որպէս յայլոց նաև բո-
«վանդակ մատեանն, առանց ինչ հաւաստեաց 'ի միջի եղե-
«լոյ։ Մանաւանդ զի տեսանեմք յայտնապէս յերկրորդումն
«անդ գլուխ գրոցս զվարդապետութիւն նախագոյութեան
«(préexistence) հոգւոց, զորոյ զհակառակն ամենևին հան-

«դիտացուցանէ ճառս Նիւսացին Գրիգոր 'ի նմանօրինակ
«մատենին իւրում Ցաղագս կազմութեանն մարդոյ. Թող և զայլ
«ինչ անհամաձայնութիւնս, յորոց սակի և արհամարհու-
«թեան իմն ցոյց առ նշանաւորն արանց Որոգինէս՝ մեծարե-
«լոյն առ Նիւսացւոյ, և այլն։

«Ոչինչ հաւանութեան ինձ թուի՝ ընծայել զեղանակ գրու-
«թեան մանրամասն անդամազննական դիտողութեանց, զո-
«րըս է տեսանել 'ի ԻԾ գլուխ մատենիս, առ Նիւսացին և
«կամ առ այլ ոք 'ի գիտնոց ժամանակին՝ պայծառացելոյ նաև
«աստիճանաւ բարձի եպիսկոպոսութեան։ Թող զի՝ թէպէտ
«և բազմահմուտ ոք իմաստասիրական գիտութեանց, այլ ոչ
«նոյնպիսի ինչ և 'ի ճշմարտութիւնս կրօնից երևի Նեմեսիոս,
«զոր լաւ համարիմ անուանել քաղաքապետ զոք Կապպա-
«դովկիայ, առ որ զմի 'ի քերթութեանցն նուիրեալ է Աս-
«տուածաբանն (Գրիգոր), քան հայրապետ զոք Եմեսացւոցն
«քաղաքի։

«Ցիշատակ անուանց և հերձուածոցն Ապողինարի և Եւնո-
«մեայ՝ յայտ առնեն զի ոչ կանուխ քան զամն 375 լեալ է
«յօրինումն մատենիս։

«Գրչագիր օրինակք հայկական թարգմանութեանս միա-
«համուռ զանուն Գրիգորի Եպիսկոպոսի Նիւսացւոյ դրոշմեն
«'ի խորագրի անդ ճառիցս, բաց յանանուն ձեռագրէ միոյ՝
«պահելոյ յԷջմիածին. Թիւ 433»։

Հայկական թարգմանութեանն ոճ բանից վկայէ Սիւնեցւոյն Ստեփանոսի գոլ, (որպէս հաւաստի և 'ի յիշատակարանի գրոցս), յունախօս և դժուարիմաց հելլենաբանութեամբն։

Առաջիկայս հրատարակութիւն եղև բաղդատութեամբ ըն-տրելագոյն օրինակաց մատենադարանի Վանացս, ուրեք ուրեք մեկնեալ 'ի ստորև գլխրթնագոյնս 'ի դարձուածոցն՝ համեմատութեամբ յոյն բնագրին, և կամ պարզելով 'ի Լուծմանն գրոցս, զոր արարեալ աւանդէ Սկեւռացւոյն Գէորգայ, զորոյ զանունն բերեն գրչագրողք ուրեք ուրեք 'ի լուսանցս անդ Լուծմանցն՝ Գէ կամ Գէորգ դրոշմելով։



# ՆԵՄԵՍԻՈՍԻ

## ՓԻԼԻՍՈՓԱՅԻ ԵՄԵՍԱՑԻՈՑ

# ՅԱՂԱԳՍ ԲՆՈՒԹԵԱՆ ՄԱՐԴՈՅ*

---

## ԳԼՈՒԽ ԱՌԱՋԻՆ

Զմարդն 'ի հոգւոյ իմանալւոյ և 'ի մարմնոյ՝ գեղեցիկ կազմեալ, և այնպէս բարւոք՝ որպէս ոչ հնար գոլ այլ լինել կամ հաստիլ՝ թուեցաւ բազմաց և արանց բարեաց։ Իսկ իմանալի ասել զհոգին՝ երկբայութիւն ունելով [1], թերևս արդեօք հպեալ միտք 'ի հոգի, որպէս այլ ոք յայլ [2], իմանալի արար զնա. և կամ թէ զիմանալին գոլ յինքենէ և բնութեամբ ունիցի հոգի ստացեալ. և. այս է գեղեցիկ նորա մասն, որպէս ակն 'ի մարմնի։ Ոմանք՝ յորոց և Պղոտոնիոս [3], այլ գոլ ասացին զհոգին և այլ զմիտս. յերից հաստիլ զմարդն, 'ի մարմնոյ և 'ի հոգւոյ և 'ի մտաց. որոց հետևեալ Ապողինարէս՝ [4] Լաւոդիկեցւոցն եղեալ եպիսկոպոս. քանզի զայս կառուցեալ հիմն իւրոց կարծեացն, և շինեալ զայլսն

* Յամենայն օրինակս մեր ձեռագիրս (Թուով վեց) դնի 'ի խորագրին Գրիգորի Եպիսկոպոսի Նիւսացւոյ. զորմէ 'ի վերոյ։

1 Այսինքն՝ կրկին եղանակաւ մարթի իմանալի ասել զհոգին։

2 Այսինքն՝ որպէս իր ինչ կցեալ առ այլ իր։

3 Յօրինակս ինչ Պղատոնիոս։ Պղոտինոս ոչ միայն որիշ զհոգին 'ի մտաց վարդապետէր, այլ ասէր զառաջնոյն որպէս յառաջխաղացումն ինչ և կամ արդիւնս մտաց։ Այսպէս և Ս. Աւգոստինոս 'ի ճառս Հանգամանակին աւանդէ զմարդոյ՝ յերից կազմեալ մասանց, 'ի մտաց, 'ի հոգւոյ և 'ի մարմնոյ, գոլով այսու 'ի պատկեր Սրբոյ Երրորդութեան։

4 Ի չորրորդում դարու երկուք այսու անուամբ կային իմաստասէրք, որք և գլուխ եղեն առանձին դպրոցաց. կրսերն՝ (հերետիկոսն) զորմէ բանք են աստանօր՝ մեռաւ յամին 381։

'ի սորին վերայ՝ ըստ իւրոյ աղանդոյն։ Բայց ոմանք ոչ որոշեցին 'ի հոգւոյ զմիտսն, այլ նորին ինքեան իշխանական գոլ զիմացականն համարին [1]։ Իսկ Արիստոտելէս [2] զզօրութեամբ միտսն՝ ընդ մարդոյն կազմիլ ասէ, բայց զներգործութեամբն 'ի դրուստ մըտեալ 'ի մեզ. ոչ զգոյութիւն և զէութիւն մարդոյն կատարեալ, այլ յաճումն բնաւորականացն գիտութեան և տեսութեան նպաստ եղեալ. ամենևին յոյժ սակաւուց 'ի մարդկանէ, և միայն իմաստասիրացն ունել զներգործութեամբ միտսն՝ հաստատէ։ Իսկ Պղատոնի ոչ թուեցաւ ասել զերկաքանչիւրսն գոլ զմարդոյն՝ զհոգին և զմարմինն, այլ զհոգին՝ մարմնով, այսպիսեաւ վարելով՝ արժանավայելչագոյն տեսեալ զոր 'ի մարդումն [3]. և յայսմանէ դարձուցանելով 'ի միայն 'ի հոգւոյն աստուածայնութիւնն և հպատականս, զի հոգին զմեզ ինքեանս գոլ հաւատացեալս [4], զհետ հոգւոյն բարութեանց ընթասցուք միայն՝ առաքինութեամբ և բարեպաշտութեամբ, և մի զմարմնոյ ցանկութիւնս սիրեսցուք, որպէս ոչ մարդոյ կամ մարդ [5], այլ կենդանւոյ նախկնաբար, բայց մարդոյ հետևաբար, վասն զի և կենդանի է մարդն։ Իսկ և այլազգ՝ տիրագոյն քան զմարմին՝ խոստովանի գոլ յամենայն մարդկանէ՝ հոգի. քանզի 'ի սմանէ որպէս գործարան շարժի մարմինն. և յայտնէ զայս մահ. քանզի 'ի բաց զատուցելոյ հոգւոյն՝ անշարժ մնայ մարմինն ամենևին և առանց ներգործութեան. որպէս արուեստաւորի 'ի բաց զատուցելոյ՝ անշարժ մնան գործիքն։ Բայց ծանօթ է [6] զի

1 Այսինքն, համարին զմիտս՝ առաջին կամ սկիզբն լինել կարողութեանց հոգւոյն։

2 Գիրք Բ. Յաղագս հոգւոյ. Գլ. Ա։

3 Այսինքն, Պղատոն ոչ 'ի հոգւոյ և 'ի մարմնոյ կազմիլ զմարդն ասաց. այլ 'ի հոգւոյ՝ սպասաւորեալ 'ի մարմնոյ, ոչ ուշ եդեալ այսու՝ բայց եթէ արժանաւորագունին (հոգւոյն) 'ի մարդումս։

4 Այս է, զի հաւատալով հոգիս զմեզ գոլ։

5 Այսպէս յօրինակն. յոյնն որպէս ոչ մարդոյ՝ որովք մարդն, Լծմն. Զհետ ցանկութեան գնալ և զմարմին սիրել՝ այս չվայելէ մարդոյ, և կամ թէ 'ի մարդն էր 'ի սկզբանն, այլ յառաջ 'ի յանասունսն եղև, և ապա յետոյ 'ի մարդն յարեցաւ։

6 Այս է՝ ճանաչելի է։

և անշնչիցն հասարակորդ է, և անբանիցն կենդանեաց հաղորդի կենաց, և բանականացն հաղորդ եղև իմանալոյն. քանզի հաղորդի անշնչիցն ըստ մարմնոյ, և ըստ չորեց տարերցն խառնուածի. իսկ տնկոցն՝ և ըստ այսոցիկ և ըստ սննդականին և ըստ սերմնականին զօրութեան. իսկ անբանիցն թէ և ըստ այսոցիկ՝ սակայն չափաւորապէս, ըստ արձակող շարժութեանն [1] և ըստ բնաւորականի ցանկութեան և սրտմտութեան, և զգայականին և տուրևառ շնչոյն զօրութեան. քանզի և այս ամենայն հասարակաց է մարդկան և անասնոց, թէ և ոչ ամենեցուն ամենայն [2]: իսկ հպի բնաւորութեամբ և յանմարմինս և յիմանալիս բնութիւնս՝ խորհելոյն և իմանալոյն և դատելոյն զիւրաքանչիւրսն [3], և զառաքինութեանց զհետ ընթանալով և զգագաթն առաքինութեանց՝ զբարեպաշտութիւն 'ի գիրկս ամփոփելով: վասն որոյ և որպէս 'ի միջասահման է իմացականին և զգալոյ էութեանս. հպելով ըստ մարմնոյն և մարմնականացն զօրութեանց՝ յայլսն կենդանիս և յանշունչսն, իսկ ըստ բանականին՝ յանմարմին էութիւնս, որպէս ասացաւ յառաջագոյն: Քանզի արարչագործն ըստ փոքուն [4] նմանեցոյց մերձիլ առ միմեանըս զզանազանսն բնութիւնս՝ որպէս մի գոլ և ազգակիցս զամենայն զստացուածս. յորմէ մանաւանդ ցուցանի՝ մի գոլ զամենայն էիցս արարչագործ [5]: Քանզի ոչ միայն միաւորեաց զէութիւնս ըստ մասին անհատիցն [6], այլ և զիւրաքանչիւրսն առ միմեանս պատկանեաց ընդանեբար:

1 Յոյնն Τοῖς δὲ ἀλόγοις καὶ ἐν τούτοις μέν, և այլն. այսինքն. Իսկ անբանիցս՝ բաց յայսցանէ, նաև ըստ կամաւոր շարժմանն, և այլն:

2 Լծմն. Մարդս միայն զամէնն ունի, իսկ այլքն մի քան զմի պակաս:

3 Զբառդ իւրաքանչիւր յոլով ուրեք չէզոքաբար առնու 'ի կիր Թարգմանիչս, ըստ յունական ոճոյ (ἕκαστα), իմաստիւք ամենայնի կամ մէն միոյ:

4 Այս է՝ անզգալի խորոցաւ մերձեցոյց առ միմեանս, և այլն:

5 Ըստ յունին՝ զամարչագործ առեալ 'ի ներգործական միտս, եբր արարչագործող. և ըստ այնմ՝ զամենայն եդեալ զէնդեբին:

6 Լծմն. Ոչ միայն զանհատ մարդն և զէութիւն և զտեսակ միաւորեաց, այլ և զմէկ մէկ մարդոյ և զամենայն կենդանւոյ՝ զանզգայան ընդ զգայականին խառնեաց, այս է զոսկրն ընդ ջիլն:

Քանզի որպէս յիւրաքանչիւրում կենդանիս միաւորեաց զանզգայսն ընդ զգայականացն, զոսկր և զմազ և զեղեւնգունսն, զճարպ.քաղրթին և զայլսն զանզգայսն՝ ընդ զգայնովք ջլօք. և արար յանզգայից և 'ի զգայնոց շարակացեալ զկենդանին, և ոչ միայն շարակացեալ՝ այլ և մի գոլ եցոյց: Այսպէս և 'ի վերայ այլոյս ըստ տեսակի ստացուածոցս՝[1] արար շարամօտիլ առ միմեանս, ըստ փոքու ընդանութեամբ աննմանութեամբ բնութեանցն. որպէս զի ոչ բազում ինչ մեկուսիլ ամենեւին անշնչիցն՝ յունողացն զսննդական զօրութիւն տնկոցն, և ոչ դարձեալ այսոցիկ՝ անբանիցն և 'ի զգայականացն կենդանեաց, այլ և ոչ անբանիցն 'ի բանաւորացն ամենեւին օտար և անհաղորդ և առանց շաղկապի լինել բնակցի և բնաւորի[2]: Քանզի տարբերի և քար 'ի քարէ զօրութեամբ իւիք. այլուր մագնիտն քար արտաքս ելեալ թուի յայլոց քարանց բնութենէ և զօրութենէ, յայտնրեալ քարշելով յինքն և ըմբռնելով զերկաթ, որպէս կերակուր ինչ իւր առնել կամեցեալ. և ոչ միայն 'ի մինն երկաթ առնէ զայս, այլ և զայլս այլով ըմբռնել, հաղորդեցուցանելով զըմբռնեալսն զամենեսեան իւրոյ զօրութեան. քանզի ըմբռնէ և երկաթ զերկաթ՝ յորժամ 'ի մագնիտն քարէ ըմբռնիցի: Եւ ապա դարձեալ զնոյնհետայն 'ի տնկոցն 'ի կենդանիսն փոխանցելով, ոչ անդէն 'ի զգայունն և 'ի գնայունն դիմէ բնութիւնս, այլ ըստ փոքու ինչ հպատակաբար[3] յայս եկն յառաջ: Քանզի զխեցեմորթսն զեռունս[4], որպէս զգայունս ծառս կազմեաց, և արմատացոյց զնոսա 'ի ծովու զօրէն տնկոց, և իբրև զփայտ եդ զխեցին շուրջ զնոքօք, և կանգնեաց զնոսա որպէս տունկս: Եւ ետ նոցին զգայութիւնս զշօշափականն՝ զհասարակացն ամենայն կենդանեացն զգայութիւնն, որպէս զի կցորդ լինել տնկոցն՝ արմա-

1 Լծմն. Այլ մարդ և այլ մարդ, և այլ անասունք և տունկք. բայց ըստ մասին խառնեաց զնոսա ընդ իրեարս:

2 Այսինքն, ոչ է առանց բնակից և բնաւոր շաղկապի:

3 Այս է, ըստ յոյն բնագրին՝ աստիճանաբար 'ի փոքունէն և ըստ չափու յառաջ խաղալով:

4 Յոյնն ունի τὰς πίννας καὶ τὰς ἀκαλύφας. այս է՝ զպինան (pinne-marine) և զեղինձն (ortie de mer).

տանարմն և կանգուն կալով, իսկ կենդանեացն՝ ըստ շօշափման. քանզի և սպունգն՝ որ արմատացեալ է 'ի վէմս, և ամփոփիլ և քինախնդիր լինել՝ [1] յորժամ ոք մատուցեալ շօշափիցէ, որպէս գրէ Արիստոտելէս [2], վասն որոյ և զայսպիսիս՝ կենդանատունկս [3] սովորեցան կոչել հինքն իմաստասէրք:

Իսկ դարձեալ 'ի պինեան և յայլսն խեցէմորթան՝ հպեցոյց զգնայուն [4] կենդանեացն լինելութիւնն, զոչ կարողացն երթալ հեռաւոր, այլ անդէն անդ շարժեցելոց. քանզի են և այսպիսիք ինչ բազումք 'ի խեցէմորթիցն, որք կոչին փորոտիք երկրի [5]: Եւ այսպէս ըստ մասին յաւելեալ ոմանց զգայութիւնս առաւելագոյնս, իսկ ոմանց՝ զգնալն առաւելագոյն, 'ի կատարելագոյնն անբանից կենդանեացն հասանէ. և ասեմ կատարելագոյնըս՝ զունողսն զամենայն զգայութիւնսն և զկարողսն գնալ հեռաւորս: Իսկ դարձեալ փոխանցելով յանբանիցն կենդանեացն 'ի բանական կենդանի՝ մարդն, և ոչ զնա անդէն վաղվաղակի կազմեաց, այլ նախկին և յայլսն կենդանիս եդ բնաւորականս ինչս հանճարս, հնարս, խորամանկութիւնս առ 'ի փրկութիւն, որպէս զի մերձ 'ի բանաւորսն երևել նոցա. և այսպէս զճշմարտապէս բանական կենդանի՝ զմարդն՝ ած յառաջ:

Ըստ նմին օրինակի և զձայնն խնդրեալ գտցես. 'ի պարզ և 'ի միատեսակ ձայնէ ձիոյ և արջառոյ ըստ մասին՝ [6] 'ի պէսպէս և 'ի զանազան եկեալ յառաջ՝ յագռաւուց և յայլոց նմանախօսիցն հաւուց ձայն, մինչև ցյօդաւորն և կատարեալ ձայն մարդոյն վախճանեաց: Իսկ դարձեալ զպատկանաւորն բարբառ շարամանեալ ընդ մտածութեանցն և խորհրդոյ, զեկուցիչ եղեալ մտաց շարժութեանց: Այսպէս յամենեցունց զամենայն գեղեցկապէս 'ի մի ժողովեաց զիմացականն և զերևե-

1 Յոյնն συστέλλεσθαι καὶ ἀνοίγεσθαι ἢ μᾶλλον ἐκτείνεσθαι: այսինքն է, և ամփոփի և բանայ կամ մանաւանդ ծաւալի:
2 Յաղագս կենդանեաց. Գիրք Ա. Գլ. Ժ:
3 Ζωόφυτα (zoophytes).
4 Յօրինակին զգայուն. եդաք ըստ յունին:
5 Τά καλούμενα γῆς ἔντερα.
6 Այս է՝ առ սակաւ սակաւ կամ մասն առ մասն (κατὰ μέρος).

լիսս՝ միջնորդութեամբ մարդոյն լինելութեան ։ վասն որոյ և գեղեցկապէս Մովսէս զարարչագործութիւնն արտադրեալ, յետոյ ասաց զմարդն լինել, ոչ միայն՝ զի ամենեցունց վասն նորա եղելոյ, պատշաճ էր՝ նախ զառ 'ի պէտս նորա պատրաստել, և այսպէս զնա՝ որ վարէրն նորոք՝ ածել յառաջ, այլ զի իմացականին ելոյ էութեան և դարձեալ երևելւոյս՝ պարտ էր լինել ումեք շաղկապ երկաքանչիւրեցն, զի մի իցէ ամենայն և կրակից [1] ինքեան, և մի օտար ինքն ինքեան ։ Արդ եղև՝ որ շաղկապէն զերկաքանչիւր բնութիւնս՝ կենդանի մարդն. զորս իմաստութիւնն արարչագործին համառօտաբար ասել այսպիսիս [2] ։

Միջասահման բանին և բանականին բնութեան մարդն կարգեալ, եթէ 'ի մարմինն կոյս շեղեսցի, և զմարմնոյսն առաւելագոյնս սիրէ՝ զանասնոցն առընկալցի զվարս յինքն, և ընդ նոսին եղիցի թուակից, և հողեղէն կոչեսցի ըստ Պաւղոսի ձայնին, և լուիցէ՝ թէ Հող էիր և հող դարձցիս, և հաւասարեաց անասնոց անմտից և նմանեաց նոցա ։ Իսկ եթէ 'ի բանականն տարցի՝ արհամարհեալ զմարմնականսն զամենայն հեշտութիւնս, զաստուածայինսն և զվերինսն Աստուծոյ ընտրեսցէ կեանս, և զնախկինսն [3] մարդոյն, եղիցի որպէս երկնաւորն. ըստ ասացելոյն թէ Որպէս հողեղէնն՝ նոյնպէս և հողեղէնքս, և որպէս երկնաւորն՝ նոյնպէս և երկնաւորքն ։ Եւ է բանականին բնութեան գլուխ՝ փախչել 'ի չարեաց և փոխիլ, և զհետ երթալ բարեաց ։ Իսկ բարեացն է ինչ՝ որ ըստ կցորդութեան հոգւոյն և մարմնոյն, (ունողաց և այսոցիկ 'ի հոգին կոյս զվերաբերութիւնն, իբր զի անձին՝ [4] վարեալ մարմնովն), որպիսի

1 Լծմն. Զի ինքն զինքն կրէր ։ Յոյնն՝ ἵνα ἓν ᾖ το πᾶν καὶ συμπαθὲς ἑαυτῷ, այս է, զի լիցի միութիւն և յարմարութիւն յարարածս ամենայն ։

2 Յոյնն. Τὰ μὲν οὖν τῆς σοφίας τοῦ δημιουργοῦ συντόμως εἰπεῖν, τοιαῦτα, այս է, առհասարակ հանդէս իմաստութեան Արարչին սղագունիւք յայտնեալ ։

3 Այս է՝ զոր առաջնաբար պատշաճի մարդոյն (τὴν ὡς ἀνθρώπου προηγουμένως).

4 Բառդ անձն 'ի Թարգմանչէն 'ի գործ վարի աստ, որպէս և յընթացս մատենիս, իբր համանիշ հոգւոյ. որով կամի ասել, իւր անձին կամ հոգւոյ՝ որում ծառայէ մարմին ։

ինչ[1] առաքինութիւնք. և է ինչ՝ որ հոգւոյն իւր ըստ ինքեան միայնոյ, ոչ եղելոյ կարօտ մարմնոյն, որպէս բարեպաշտութիւն և կամ էիցս տեսութիւն։ Արդ որք զմարդոյն զվարսն՝ որպէս զմարդոյն զկեանս յօժարին[2], և ոչ որպէս այլ կենդանւոյ միայն, առաքինութեամբք զընան և բարեպաշտութեամբ։ Իսկ եթէ զինչ են առաքինութեանցն և զինչ բարեպաշտութեանն, յորս զկնի սորին՝ որոշեսցի, յորժամ յաղագս անձին[3] և մարմնոյ բացատրեսցուք բան։ Քանզի չև ես ծանուցելոյ մեզ՝ թէ զինչ երբեք իցէ անձն ըստ էութեանն, ոչ է պատշաճ՝ յաղագս ներգործութեանն նորա այժմ բուռն հարկանել։

Երբայեցիքն զմարդն 'ի սկզբանէ խոստովանին ոչ մահկանացու և ոչ անմահ լինել, այլ 'ի միջասահմանն երկաքանչիւր բնութեանցն. զի եթէ մարմնոյն հետևեսցի ախտից՝ անկցի և 'ի մարմնական փոխադրութիւնսն. իսկ եթէ զհոգւոյն նախապատուեսցէ զբարութիւնս՝ անմահութեանն արժանաւորեսցի։ Քանզի եթէ 'ի սկըզբանէն մահկանացու արարեալ էր զնա Աստուծոյ, ոչ արդեօք 'ի մահ դատապարտեալ էր զնա յետ մեղանչելոյն. քանզի զմահկանացու 'ի մահկանացութիւն ոչ ոք դատապարտէ։ Իսկ եթէ դարձեալ անմահ, ոչ արդեօք կերակրոյ կարօտ էր կազմեալ զնա. քանզի ոչ ոք յանմահիցն՝ կերակրոյ մարմնականի կարօտի. և ոչ էր այսպէս դիւրաւ ստրջացեալ, և զեղեալն անմահ՝ անդրէն մահկանացու արարեալ։ Քանզի և ոչ 'ի վերայ մեղուցելոցն հրեշտակացն արարեալ երևի զայս, այլ ըստ յսկզբանէն բնութեանն անմահք մնացին, այլ պատիժ ակն ունել ընդունելով յանցանաց, այլ ոչ մահ։ Արդ լաւագոյն է կամ այսու յեղանակաւ իմանալ զառաջի եղեալ զբանս, կամ թէ մահկանացու կազմեցաւ՝ կարող գոլով յառաջադիմութենէն կատարեալ անմահ լինել, այսինքն՝ զօրութեամբ անմահ լինել։ Իսկ վասն զի ոչ էր նմա յօգուտ նախ քան զկատարումն՝ զիւր բը-

1 Յօրինակն մեր՝ որպէս մինչ։
2 Յոյնն՝ որպէս զմարդոյ կեալ յօժարեն։
3 Այսինքն հոգւոյ, որպէս 'ի վերոյ։

նութիւնն գիտել, հրաժարեցոյց զնա ճաշակել 'ի փայտէն գիտութեան. քանզի չէին իսկ, յաւէտ զի են տակաւին և այժմ զօրութիւնք 'ի տունկս մեծամեծք. իսկ յայնժամ 'ի սկզբանն աշխարհագործութեանն ծայրագոյն զօրով հզօրագոյն ունէին զներգործութիւն: Էր ուրեմն և ճաշակումն իրիք պտղոյ՝ ծանուցումն առնել կերակրողին բնութիւն [1]: Ոչ կամէր Աստուած գիտելն նմա՝ նախ քան զկատարումն՝ զիւր բնութիւն, զի մի՛ գտուցեալ զինքն կարօտ բազմաց, մարմնականաց պիտոյից հոգ տարցի, թողեալ զհոգւոյն խնամակալութիւնն. և վասն այսորիկ պատճառի՝ արգել զնա 'ի ճաշակմանէ պտղոյ փայտին գիտութեան: Իսկ նորա ըստունգանեալ, և գիտացեալ զինքն՝ 'ի կատարմանէն 'ի բաց անկաւ, և եղև ընդ մարմնականաց պիտոյից. քանզի անդէն ծածկոյթ խնդրեաց. զի ասէ Մովսէս, եթէ Գիտաց թէ մերկ էր. նախ 'ի զարմացման արար զնա և յանգիտութեան ինքեան [2]:

Արդ անկեալ 'ի կատարմանէն՝ նմանապէս անկաւ և յանմահութենէն, զոր յետոյ առցէ շնորհիւ Արարողին իւրոյ: Իսկ յետ անկանելոյն՝ և մօտ վայելման թոյլ ետ նմա. քանզի յառաջագոյն յորոց 'ի յերկրէս միայն՝ հրամայեաց նմա բաւականանալ, քանզի այսոքիկ միայն էին 'ի դրախտին. իսկ անյոյս մնացեալ 'ի կատարմանէն 'ի վայր անկմամբն, այնուհետև թոյլ ետ նմա ըզվայելմանցն: Իսկ վասն զի 'ի մարմնոյ է մարդ, և ամենայն մարմին 'ի չորից տարերց հաստատեցաւ, հարկ է ընդ այսոցիկ ախտիւք անկանել նմա՝ յորոց և տարերքս, փոխադրութեամբ և հատմամբ և հոսմամբ, որք են միայն մարմնոյ. փոխադրութիւնք ըստ որակութեան, իսկ հոսումն՝ ըստ թափման. քանզի թափի կենդանին 'ի ձեռն յայտից վտառից և անյայտից. յաղագս որոյ յետոյ ասասցուք [3]:

Արդ հարկ է, կամ թափմանն՝ փոխանակ 'ի ներքս

1 Այսինքն, որում (անկոյն) էր զօրութիւն տալ գիտել առ որ ճաշակէրն՝ զբնութիւն անձին:

2 Այսինքն՝ յանգիտութեան անձին:

3 Car l'animal perd constamment sa substance par les pores visibles et invisibles. *Trad. de J. B. Thibault.*

բերել հաւասարս, կամ լուծանել կենդանւոյն՝ կարօտանօք 'ի ներքս մտեցելոցն։ Ջորին և խոնաւին և օդւոյն թափեցելոյ՝ հարկ է չորին և խոնաւ կերակրոյ կարօտ լինել կենդանւոյն և օդւոյն [1]։ Եւ է մեզ կերակուր և ըմպելի 'ի ձեռն տարերցս՝ յորոց և հաստատեցաքս։ Քանզի իւրաքանչիւր է ինչ՝ որ ընտանեաւ և նմանեաւ կերակրի, և է ինչ՝ որ 'ի հակառակիցն ուրախանայ [2]։ Իսկ տարերցս է ինչ՝ որ 'ի ձեռն միջնորդից ոմանց մատչիմք. որպէս ջուր՝ երբեմն ըստ ինքեան և երբեմն 'ի ձեռն միջնորդից՝ գինւոյ և իւղոյ և ամենայն խոնաւուտ կոչեցելոցն պտղոց. քանզի ոչ ինչ է այլ գինի, բայց միայն ջուր՝ յայգւոյ որակացեալ։ Նմանապէս և հրոյ հաղորդիմք՝ երբեմն մերձաւորապէս 'ի նմանէ ջեռեալ, և երբեմն 'ի ձեռն միջնորդից՝ յորոց ուտեմք և ըմպեմք, քանզի յամենեսին կամ առաւելապէս կամ նուազաբար մասն հրոյն սփռի։ Ըստ նմին օրինակի և զօդս մերձաւորապէս ունիմք 'ի տուր և առ շնչոյ և հեղեալ շուրջ զմեօք, և յուտելն և յըմպելն՝ 'ի մեզ քարշելով 'ի ձեռն միջնորդութեանց այլոցն ամենեցունց՝ որոց մատչիմք։ Իսկ զերկիր մերձաւորապէս մեք ոչ ունիմք, այլ 'ի ձեռն այլոց. քանզի յերկրի լինի ցորեան, և մեք զցորեանն ուտեմք. իսկ աղաւնիք, կաքաւք և այլք 'ի հաւուց՝ հող ճարակին [3]. բայց մարդիկ 'ի ձեռն միջնորդութեան սերմանեաց և բանջարոց և մարմնոց։ Իսկ վասն զի ոչ միայն վասն գեղեցկութեան, այլ և վասն բարւոք զգեստուց՝ [4] որ ըստ շօշափելեաց, որով մանաւանդ առաւելու քան զայլ կենդանիս՝ մարդն, ոչ էարկ շուրջ զմեօք մորթ թանձրամորթիւք, և ոչ մազ կուռ և խիտ, որպէս այծից և ոչխարաց և նապաս-

1 Այսինքն է, թափեցելոցն արտաքս 'ի մարմնոյն մասանց գոլով կամ հաստատուն ինչ, կամ լուծական և կամ օդեղէն, կարօտի կենդանին նորոգել և հաստատունն և լուծականն և օդեղէն սննդովք։

2 Այսպէս յօրինակին Մեր. ըստ յունին՝ հակառակաւն դարմանի (τῷδε ἐναντίῳ θεραπεύεται).

3 Ամենայն հաւք թռչունք առհասարակ ուտեն երբեմն և զհող, ոչ եթէ առ 'ի սնունդ, այլ առ 'ի մանրել նոքօք 'ի ձեռն չփման 'ի ստամոքի զպնդագոյն մասունս սննդական կերակրոյն։

4 Յոյնն ունի. Այլ և վասն ընտիր զգայութեան, որ ըստ շօշափելեաց։

տակաց, և ոչ թեփ՝ որպէս օձից և ձկանց, և ոչ խեցի որպէս կրայից և գաղտակրաց [1], ոչ թևս՝ որպէս հաւուց։ Հարկաւորապէս զգեստու կարօտ եղեալք 'ի լրումն մեզ, զոր ինչ այլոց կենդանեացն՝ բնութիւնն պարգևեաց։ Վասն այսորիկ և կերակրոց և հանդերձից պէտս ունիմք, այլ և բնակութեան ոչ վայրապար՝ վասն և 'ի գազանաց խոյս տալոյ։ Իսկ վասն ոչ բարեխառնութեան որակութեանցն, և յաճախ լուծման մարմնոյ՝ բժշկաց և բժշկութեան պէտք կարգեցան։ Իսկ փոխադրութեան ըստ որակութեան եղելոյ՝ հարկ է, վասն հակառակ որակութեան՝ 'ի չափաւորն ածել զկարգ մարմնոյն [2]։ Քանզի ոչ որպէս ոմանք վարկանին՝ զջեռեալն մարմին ցրտացուցանել կայ առաջի բժշկաց, այլ 'ի բարեխառնութիւն փոփոխել. քանզի թէ ցրտասցի՝ 'ի հակառակն փոխադրեսցի հիւանդութիւն կամ տրամադրութիւն։ Արդ պիտոյ է մարդոյ կերակուր և ըմպելի վասն թափման [3], իսկ հանդերձ՝ վասն և ոչ մի ինչ ունելով բնաւորապէս հզօր [4] վերարկու, իսկ տուն՝ վասն ոչ բարեխառնութեան օդոյ և գազանաց. իսկ բժշկութիւն՝ վասն փոխադրութեանց որակութեանց, և վասն զգայութեանն՝ որ է 'ի մարմին. քանզի թէ ոչ էր 'ի մեզ զգայութիւն, և ոչ խօթանայաք երբեք, և ոչ բժշկութեան կարօտանայաք. խօթացեալք և ապականեալք անգիտութեամբ չարին՝ ոչ զգալով ախտին [5]։ Իսկ վասն արուեստից և մակացութեանց և յայսցանէ պիտոյից՝ միմեանց պէտս ունիմք. և վասն կարօտ գոլոյն միմեանց, 'ի միասին ժողովեալք բազումք՝ հաղորդիմք միմեանց ըստ կենցաղոյս պիտոյից 'ի տուր և առ. զորս

1 Յօրինակս ինչ չիք գաղտակրաց, որպէս և ոչ 'ի յոյնն։

2 Այսինքն է, զի 'ի զգալ անդ մերում փոփոխութիւն ինչ մնասաբեր 'ի մարմնի մերում, հարկ լինի մեզ գիտել 'ի հակառակն նորին, առ 'ի պատշաճաչափու ունել զանձինս. որպէս 'ի զգալ ցրտոյ՝ առ ջերմութիւն, նօթութեան՝ առ 'ի յագուրդ, և որ ըստ նոցանէն։

3 Յոյնն, διά τᾶς κενώσεις καί διαφορήσεις. վասն կորուսմանցն և վասն աւելորդացն արտաքսման։

4 Այլ օրինակ՝ հոծ վերարկու։

5 Լծմն. Թէ ոչ ունէաք զգայութիւն, թէ և խօթանայաք չարիւն, այս է՝ ցաւովն, և ապականէաք, ոչ զգայաք։

ժողովումն և կենակցութիւն՝ քաղաք անուանեցին, զի 'ի մօտուստ և մի 'ի հեռաստանէ զառ 'ի միմեանց օգուտն շահեսցուք։ Քանզի և բնութեամբ ժողովասէր և քաղաքական է կենդանի[1] եղեալ. քանզի մինն ոչ է բաւական ինքեամբ առ ամենայն. արդ յայտ է թէ քաղաքք վասն տուր և առից և ուսմանց շինեցան։

Բայց երկուքս այսոքիկ առաւելապէս ընծայեցան մարդոյ. քանզի սա միայն հանդիպի թողութեան մեղաց զղջացեալ, և սորա միայնոյ մարմին մահկանացու գոլով՝ անմահանայ. և մարմնականին՝ վասն հոգւոյն, իսկ հոգեկանին՝ վասն մարմնոյն հանդիպեցաւ[2]։ Քանզի միայն մարդ 'ի բանականացն՝ առաւել ունի թողութեան արժանաւորիլ 'ի զղջանալն։ Քանզի ոչ դևք և ոչ հրեշտակք զղջացեալք թողութեան արժանաւորին, և այսուիկ մանաւանդ արդարև ողորմած ցուցանի և ասի Աստուած։ Քանզի հրեշտակաց ոչինչ ունելով հարկեցուցիչ քարշելով 'ի մեղս, այլ ազատ գոլով բնութեամբ 'ի մարմնականաց ախտից և 'ի պիտոյից և 'ի հեշտութեանց, յիրաւի և ոչ մի թողութիւն տուեալ լինի 'ի զղջանալն. բայց մարդ ոչ միայն բանական է՝ այլ և կենդանի. իսկ պէտք կենդանւոյ և ախտք՝ յոլովակի քարշելով զբանականին զխորհուրդս. արդ յորժամ զգաստացեալ 'ի բաց փախիցի յայսցանէ, և տարեալ լինի յառաքինութիւնս, ողորմութեան արդարացւոյ հանդիպի և թողութեան մեղաց։ Եւ որպէս իւր է բնութեան նորա ծիծաղականն[3], վասն զի սորա միայնոյ է ամենևին և միշտ, այսպէս յորոց ըստ շնորհի՝ իւր է յամենայնի բանականացն ստացուածոց՝[4] 'ի ձեռն զղջման 'ի բաց մերկանալ զյառաջագոյնսն զյանցան-

1 Ամենայն օրինակք մեր ունին՝ քաղաք է կենդանի. ուղղեցաք ըստ յոյն բնագրին։

2 Լծմն. Մարմինն յառնէ 'ի մեռելոց, զի հոգին՝ անմահ է. իսկ հոգին թողութեան արժանաւորի, զի մարմինն ակար է։

3 Նախնի իմաստասէրք զմարդ կոչէին կենդանի ծիծաղկոտ (ζῶον γελαστικόν), զի սորա միայնոյ է ծիծաղելոյ կարողութիւն յամենայն կենդանիս։

4 Այսինքն, սեփական ինչ է մարդոյ՝ յամենայն արարածս բանականս, ըստ շնորհացն Աստուծոյ՝ քաւութիւն գտանել յանցանաց։

սըն․ քանզի միայնոյ մարդոյ պարգևի այս, և ամենևին և միշտ, 'ի ժամանակի աշխարհիս կենաց. իսկ յետ մահուանն ոչ ևս։ Այսպէս և ոմանք զհրեշտակս ասեն ոչ ևս հանդիպել յետ անկմանն՝ 'ի զղջմանէ՝ թողութեան, քանզի մահ նոցա՝ անկումն է. իսկ նախ քան զանկանելն՝ ըստ նմանութեան կենաց մարդկան՝ և նոցա արժանաւորիլ թողութեան. զոր թէ ոչ արարեալ՝ առանց թողութեան և յաւիտենականին ունին այնուհետև զպատուհասի վայելուչ դատաստանն։ Եւ յայտ է յայսցանէ՝ որպէս զի որք զապաշխարութիւն ոչ ընդունին, զգերամբարձեալս պարգև որ իւրն է մարդոյն՝ տարագիր առնեն։ Եւ է իւր նորա և գերամբարձեալ և միայնոյ յայլոց կենդանեաց՝ մարմնոյն յետ մահուանըն յառնելն և յանմահութիւն դառնալն. և հանդիպի այսմիկ՝ վասն հոգւոյն անմահութեան, որպէս և այնմիկ՝ վասն մարմնոյն տկարութեան և բազմախտութեան։ Իւր են նորա և որքան ինչ արուեստից և մակացութեանց ուսմունք և ներգործութիւնք։ Վասն որոյ և զմարդն սահմանեն, կենդանի բանաւոր, մահկանացու, մտաց և մակացութեանց ընդունակ։ Կենդանի՝ վասն զի և մարդն էութեամբ է շնչաւոր և զգայական. քանզի այս է սահման կենդանւոյն։ Իսկ բանաւոր՝ զի որոշեցի յանբանիցն. և մահկանացու՝ զի զատցի յանմահիցն կենդանեացն. իսկ մտաց և մակացութեան ընդունակ՝ վասն զի 'ի ձեռն ուսմանց առլինին 'ի մեզ արուեստք և մակացութիւնք. ունին և զօրութիւն ընդունական և մտաց և արուեստից, իսկ զներգործութիւնս՝ ստացեալ յուսմանց։ Եւ ասեն զայս առդնիլ 'ի սահմանն յետոյ, ամբողջ գոլով և առանց այսորիկ՝ սահմանին։ Այլ վասն զի հարսունս և այլ ոմանս ազգս դիւաց ասեն ոմանք բազմաժամանակեայս, սակայն ոչ անմահս. և զի 'ի սոցանէ 'ի բաց որոշեսցեն զմարդն՝ յաւելին զմտաց և զմակացութեանց ընդունակն. քանզի ոչ ոք 'ի սոցանէ ուսանի ինչ, այլ բնութեամբ գիտէ զոր ինչ գիտէն, ասեն։

Իսկ Եբրայեցւոցն օրէնքն՝ զամենայն զայսոսիկ վասն մարդոյն եղեալ և մերձաւորապէս վասն նորա. որպէս զբեռնակիրսն և զեզինս առ 'ի յերկրագործութիւն, իսկ

խոտ՝ վասն նոցա. քանզի յեղելոցն է ինչ՝ որ վասն ինքեանց եղեն, և է ինչ՝ որ վասն այլոց. վասն ինքեանց՝ բանականք ամենայն, իսկ վասն այլոց՝ անբանք և անշունչք։ Իսկ եթէ այսոքիկ վասն այլոց եղեն, վասն որոյ եղենն՝ տեսցուք։ Արդեօք վասն հրեշտակա՞ց. այլ ոչ ոք 'ի բարւոք իմացողացն վասն հրեշտակաց ասիցէ զայս լինել. քանզի վասն այլոց եղեալքն, 'ի հաստատումն նոցա և վասն տևողութեան և հանգստի եղեն. քանզի փոխանորդութեան ազգի սակս կամ կերակրոյ կամ բժշկութեան կամ օթևանի և հանգստեան. իսկ հրեշտակք ոչ ինչ են յայսցանէ կարօտք. քանզի ոչ փոխանորդութիւն ազգի ունին, և ոչ կերակրոյ մարմնականի պէտս, ոչ հովանւոյ, և ոչ այլ ինչ իրիք։ Իսկ եթէ ոչ հրեշտակք, յայտ է թէ և ոչ այլ ինչ բնութիւն վերագոյն քան զհրեշտակս. քանզի որչափ գերագոյնն կայ, այնքան յաւէտ և անկարօտ է այնց ամենայնի։ Արդ խնդրելի է բնութիւն բանական և կարօտ յառաջագոյն ասացելոցս։ Ո՞վ ոք այլ այսպիսի երևեսցի՝ 'ի բաց թողեալ զմարդն. ապա ուրեմն ժողովի՝ [1] վասն նորա եղեալ անբանքն և անշունչք։ Արդ, վասն զի սորա աղագաւ՝ որպէս ասացաւ՝ եղեն, վասն այսորիկ և իշխան սոցա կարգեցաւ. և է գործ իշխանի՝ առ չափ պիտոյից հպիլ յորս ընդ իշխանութեամբն, և մի առ հեշտութիւն վաւաշոտաբար թշնամանել, և մի ծանրաբար և տարժանապէս բերիլ առ որս ընդ իշխանութեամբն։ Արդ մեղանչեն՝ որք անասնովքն ոչ բարւոք վարին. քանզի ոչ գործեն զգործ իշխանի, և ոչ արդարոյ [2]. ըստ գրեցելումն՝ Այր ողորմած ողորմի 'ի վերայ գրաստու իւրոյ։

Այլ թերևս ասիցէ ոք՝ թէ ոչինչ վասն այլոյ ուրուք, այլ իւրաքանչիւր ոք վասն իւր եղև։ Ապա ուրեմն որոշեալ նախ զչնչաւորն յանշընչիցն, տեսցուք թէ կարիցեն անշունչքն վասն ինքեանց լինել. քանզի թէ այնոքիկ վասն ինքեանց եղեն, զի՞արդ կամ ուստի՞ կերակրեսցին կենդանիք։ Քանզի տեսանեմք զբնութիւն՝ բաշխելով կենդանեաց կերակուրս 'ի յերկրէ, պտուղս

1 Այս է, ապա ուրեմն զհետ գայ, ճշմարտի, ստուգի։

2 Յօրինակն՝ և ոչ արդարացի՝ ըստ գրեցելումն, և այլն. ուղղեցաք ըստ յունին։

և բոյսս, բայց միայն 'ի յետնոցն 'ի մարմնակերացն [1]։ Եւ այսոքիկ նոյն մարմնակերքս կերակրին 'ի կենդանեաց՝ որք 'ի յերկրէ ճարակին, որպէս գայլք և առիւծք զգառինս և զայլ զկենդանիս։ իսկ արծուիք՝ կաքաւս և նապաստակս [2] և այլս այսպիսիս, որք զպտուղս երկրին ճարակին։ քանզի և ձկանց բնութիւն՝ որք ըզմիմեանս ուտեն, այլ մնաց [3] 'ի նոցանէն ճարակել և զմամուռ, և այլ ինչ որ 'ի ջուրս բուսք։ քանզի թէ էր ամենայն ձկանց ազգք մարմնակեր, և ոչ ինչ էր արտաքոյ յայսմանէ, ոչ արդեօք լինէր բաւական և ոչ փոքր ինչ [4], այլ ապականէր ոմանք 'ի միմեանց, և այլք 'ի կերակրոց նուազութենէ։ իսկ վասն զի մի այս եղիցի, ոմանք 'ի ձկանցն կազմեցան հեռի 'ի մարմնակերութենէ, որպիսի ինչ ասիցէ ոք՝ զծովու բոյս ճարակել, զի 'ի սոցանէ և այլք ամբողջ պահեսցին։ քանզի լինի սոցա կերակուր՝ մամուռն [5], իսկ նոքա՝ այլոց, և նոքա դարձեալ այլոց, որպէս վասն վերջնոցն կերակրոցն՝ աննիազաբար յերկրայնոցն՝ որ 'ի ծովուն բաշխեալ, և այլոց գոյացութիւնն ամբողջ պահեսցի։ Արդ ուստի բանս զբուսոցն լինելութիւնն ոչինչ վասն ինքեանց, այլ 'ի կերակուր և 'ի հաստումն մարդկան և այլոց կենդանեաց եղեալ։ իսկ եթէ այսոքիկ վասն մարդոյ և կենդանւոյ, յայտ է թէ այսոցիկ աճման և լինելութեան պատճառ՝ վասն այսորիկ եղև։ Ապա ուրեմն և աստեղաց շարժութիւնք, և երկին և ժամք և անձրևք, և ամենեքին այսոքիկ՝ վասն այսորիկ եղեն, զի կերակրոցն՝ որպէս շրջագայիւ միշտ բաշխեցելոց, անպակաս և մատուցողացն զպտուղս՝ մնասցէ բնութիւն [6]. որ-

1 Այս է՝ ըստ յունին, բայց միայն 'ի սակաւուց մարմնակերաց. որք առ Գաղղիացիս կոչին carnassiers կամ carnivores.

2 Յոյնն. Որպէս գայլք և առիւծք՝ զգառինս, զայծս, զխոզս և զեղջերուս. իսկ արծուիք՝ կաքաւս և հաւփալս և նապաստակս կերակրին։

3 Յօրինակս ինչ ոմանց։ Իսկ յոյնն ունի. Քանզի և 'ի ձկանց բնութենէ՝ որք զմիմեանս ուտեն, ոչ ամենեցուն է մարմնակերս լինել, այլ զկայ առնու յայնս՝ որք ճարակեն զմամուռ. և այլն։

4 Այս է՝ զկնի սուղ ժամանակի չմնայր և ոչ մի, միմեանց և կամ սովոյ եղեալ ճարակ։

5 Լծմն. Մամուռ՝ կանաչ աղտեկն որ 'ի քարն լինի. վերջի ձուկըն՝ որ ոչ է մարմնակեր, զերկրային բոյսս՝ որ 'ի ծով լինի՝ ուտէ։

6 Այսինքն է, զի յապահովի կացուսցեն՝ դարձադարձ շրջանքն

պէս զի գտանիլ այսոցիկ՝ վասն պտղոց, իսկ պտուղ՝ վասն կենդանեաց և վասն մարդոյ։

Է այսուհետև տեսանել՝ եթէ արդեօք և անբանիցն բնութիւն վասն ինքեան եղև, թէ վասն մարդոյն։ Այլ թերևս անտեղի է՝ զանբաժան յիմանալոյ և ըստ բնաւորական յարձակման միայն կենդանիս և յերկիր կորացեալս, և զծառայութիւն 'ի ձեռն ձևոյն ցուցեալս [1], ասել վասն ինքեանց գոլ յառաջ։ Բայց բազում ինչ հընար գոլով ասել առ այս, և գրեթէ առանձինն շարագրութիւնս առնել. ոչ տանելով [2] առընթեր պատճառս զերկայնութիւն բանիցն, համառօտագոյնս ասացից, սակայն և ամբողջս։ Արդ՝ եթէ որպէս 'ի պատկերի՝ զորս յանբանիցն են 'ի մարդն հայեցեալ տեսանեմք՝ 'ի նմանէն գիտեմք առնել զցուցումն էութեանն՝ զոր խնդրեմքն։ Տեսանեմք այժմ 'ի մերումս անձին զանբանութիւն և զսորայս մասունս. և ասեմք զբնաւորական ցանկութիւն և սրտմտութիւն՝ առ 'ի սպասաւորութիւն տուեալ բանականին. զի նա իշխան է և նոքա ընդ իշխանութեամբ, և նա հրամայող, իսկ նոքա հրամանակատարք և սպասաւորեալք պիտոյիւքն, որով բանն ընձեռէ, յորժամ ամբողջ ունի մարդն զըստ բնութեանն [3]։ Արդ՝ եթէ 'ի մեզ է անբանն յանբանից, և որ 'ի մեզ բանականն՝ է իշխան [4], զիարդ ոչ է վայելուչ և արտաքնոց անբանից նմա տիրել, և առ 'ի պէտս նորա տուեալս. քանզի 'ի սպասաւորել բնութեամբ է կարգեալ անբանն բանականին, որպէս որովք և 'ի մեզս ցուցաւ։ Եւ յայտնի է այսու և բազմացն կենդանեաց կազմութիւն առ 'ի սպասաւորութիւն մարդոյն եղեալ,

զարդիւնս բերոց երկրի, առ 'ի կերակուր անպակաս ամենայն ազգի կենդանեաց։

1 Այսինքն է՝ զանբանսն, որ ձևովն իւրեանց յայտնեն զիւրեանց նպատակ ծառայելոյ մարդկան։ Բնաւորական յարձակումն իմա զանգափոխութիւն։

2 Յօրինակս երկուս՝ տանջելով։

3 Այս է, ցորչափ յիւրում 'ի բնական պայմանին և յօրէնս կացցէ մնասցէ մարդն։

4 Յոյնն ունի. εἰ δὲ τῶν ἐν ἡμῖν ἀλόγων τὸ ἐν ἡμῖν ἄρχει λογικόν, այս է. իսկ եթէ բանն որ 'ի մեզ է, իշխէ անբանականացն որ 'ի մեզ մասանց, և այլն։

՚եղինք և ամենայն բեռնակիրք առ ՚ի յերկրագործութիւն և ՚ի բեռնակրութիւն. և բազումք ՚ի թռչնոց և ՚ի ջրայնոց և ՚ի ցամաքայնոց՝ առ ՚ի վայելուչս. իսկ զխօսողականն իմն ՚ի զուարճութիւն։ իսկ եթէ ոչ ամենայն այսպիսեօք պիտոյիւք սպասաւորեն, այլ են և որք ապականեն զմարդն, գիտելի է թէ յառաջագոյն ընդ որովք վասն սպասաւորութեան եղեն. և այլքն ամենայն կարևորք կազմեցան, զի մի՛ ինչ եղիցի պակաս յարարածս ՚ի կարևորացն լինել։ Եւ ոչ այսոքիկ ամենայն ամենևին հեռի են ՚ի մարդոյս օգտութենէ. այլ և ՚ի վնասակարսն՝ առ ՚ի յօգուտ նմա պտղաբերէ բան. քանզի վարի նոքօք առ ՚ի բժշկութիւն, առ ՚ի նոցայոցըն վնասակարութենէ՝ այլոցն հիւանդութեանց յառողջութիւն. այսպիսիք իմն են թիւրակէքն կոչեցեալք՝ զոր բանն իմացաւ և կազմեաց, զի և նոցա՝ իշխանականն իշխեսցէ նոքումբք. և որպէս ՚ի թշնամեաց ըմբռնեցելոց օգտեսցի, և նոցա զինուքն զնոսա սպանցէ։ Եւ ունի մարդ բիւր զօրութիւնս հակառակ սոցա տուեալ առ ՚ի յարարչագործութենէ՝ արգելուլ և վրէժս առնուլ, և յուղղութիւն ածել զդաւաճանութիւնս նոցա։ Քանզի այլ ինչ այլոց պիտոյ իցէ պատշաճ, իսկ հասարակաց ամենայն առ ՚ի յօգուտ մարդոյն կատարիլ բընաւորեցաւ, և որք ոչ այլ ինչ՝ պիտոյից են պիտանիք։

Եւ այսոքիկ առ ժամուս կարգ կենցաղոյս մերոյ ասացի. վասն զի ՚ի սկզբանն ոչինչ յայլոցն կենդանեաց իշխէր վնասել զմարդն, այլ էին ամենայն նորա ծառայք և հնազանդեալք և հաւանեալք նմա, ցորքան իշխան էր իւրոցն ախտից և անբանութեանն՝ որ ՚ի նմա. իսկ յորժամ ոչն յաղթեաց իւրոցն ախտից, այլ յաղթեցաւ, իրաւամբք և յարտաքուստ գազանացն՝ ՚ի ներքս եմուտ ընդ մեղացն՝ և որ առ ՚ի նոցանէն վնաս։ Եւ զի է այս ճշմարիտ՝ յայտ է՝ յորոց առաքինութեամբն անցին ընդ կենցաղս. քանզի առանց մարտի զօրագոյնք երևեցան քան զգազանացն վնասակարութիւնն. որպէս քան զառիւծունսն Դանիէլ, և Պաւղոս քան զիժին խածանելն։

Արդ ո՞վ ոք արժանաւորապէս սքանչասցի ընդ բարետոհմութիւն այս կենդանւոյս, շաղկապողիս ընդ ինքեան զմահկանացուս ընդ անմահիցն, զբանականս ընդ ան-

բանիցն խառնողի, բերողիս յիւրում բնութեան զամենայն արարածոցս պատկեր, վասն որոյ և փոքր աշխարհ ասի, այսքան արժանաւորեցելոյ առ 'ի յԱստուծոյ նախախնամութեանն. վասն որոյ և ամենայն՝ և՛ այժմուքս և հանդերձեալքն. վասն որոյ և Աստուած մարդ եղև, յանապականութիւն և յանմահութիւն փոփոխեալ յերկնից թագաւորութիւնն, ըստ պատկերի և ըստ նըմանութեան Աստուծոյ եղեալք, Քրիստոսի կենակից և Աստուծոյ ժառանգ, ամենայն իշխանութեանց և պետութեանց գահերէցք նստեալք: Եւ ո՜վ ոք արդեօք ասել կարիցէ զայսր կենդանւոյ զառաւելութիւն. ընդ լայնութիւն ծովու անցանէ, ընդ երկինս գնայ՝ տեսութեամբ, զաստեղայն շարժութիւնսն և զմեկուսութիւնս և զչափս նկատէ, զպտուղս երկրի և ծովու վայելէ, ըզգազանս և զկէտս արհամարհէ, զամենայն մակացութիւն և զարուեստս կանգնէ, հեռաստանէ 'ի ձեռն գըրոյ՝ ընդ որս կամի՝ խօսի, ոչինչ 'ի մարմնոյս խափանեալ, մարգարէանայ զհանդերձեալսն, ամենայնի իշխէ, զամենեսեան վայելէ. ընդ հրեշտակաց և ընդ Աստուծոյ խօսի. արարածոցս հրաման տայ, դիւաց սաստէ. զէիցս բնութիւն քննէ, զաստուծոյսն հարցափորձէ, տուն և տաճար Աստուծոյ լինել. և զայս ամենայն՝ առաքինութեամբք օգտի և բարեպաշտութեամբ: Այլ զի մի՛ թըւեսցուք ոմանց անգեղեցկափորձապէս ներբողել զմարդըն, և ոչ՝ միայն զբնութիւն նորա արտագրել, որպէս առաջի եդաք, աստանօր հանգուսցուք զբանս. մանաւանդ զի թէ և զբնութեանն զառաւելութիւն ասեմք՝ զնոյն բնութիւն պատմեմք:

Արդ, տեսանելով զնոյն բնութիւն՝ թէ որքան բարետոհմութեան հաղորդեալք, և զի տունկք եմք երկնայինք, մի՛ ամօթ արասցուք զբնութիւնս, և մի՛ այսքան պարգևաց երևեսցուք անարժանք, և մի՛ յայսքան իշխանութենէ և 'ի փառաց և յերանութենէ զրկեսցուք զմեզ· ընդ փոքր ժամանակի և դոյզն հեշտութեան՝ փոխանակելով զամենայն յաւիտենից վայելումն: Այլ 'ի ձեռն բարեաց գործոց՝ 'ի բաց հեռանալ 'ի չարաց, և ուղիղ գնացիւք՝ որոց գործակից եղիցի Աստուած, և աղօթիւք զբարեպաշտութիւնս ամբողջ պահեսցուք:

Իսկ յաղագս այսոցիկ բաւական է այսքան ։ Բայց վասն զի զմարդն 'ի հոգւոյ և 'ի մարմնոյ ենթակայեալ յարակայ բանն, բեր 'ի բաց որոշեալ՝ նախ յաղագս անձին ձեռնարկեսցուք ասել, զկայծ նրբագոյնսն և զդժուարինսն և զբազմաց անգիտելիս 'ի խնդրելեացն 'ի բաց թողեալ ։

## ԳԼՈՒԽ ԵՐԿՐՈՐԴ

Գրեթէ անմիաբան է հնոցն ամենեցունց՝ որ յաղագս անձինն է բան. քանզի Դիմոկրատէս և Եպիկուրոս և ամենայն Ստոյիկեանցն իմաստասիրացն ժողով՝ մարմին ասեն զանձն. և նոքա նոյնք՝ որք մարմին ասեն զանձն՝ տարբերին յէութիւն նորա. քանզի Ստոյիկեանք հոգի ասեն զնա ջերմային և հրային. իսկ կռէտիաս՝ արիւն. իպպոն իմաստասէր՝ ջուր, Դիմոկռատէս՝ հուր. քանզի գնդատեսակ ձևք անհատիցն բաղդատեալք [1] հուր և օդ՝ անձն կատարեն [2]. իսկ Հերակլիտոս զամենեցունցն անձն՝ վերածխութիւն 'ի խոնաւուտիցն. իսկ զօրեան-ասուննն՝ յարտաքուստ և 'ի նոցայոցն վերածխութենէ համասեռ բնաւորիլ ։ Դարձեալ և անմարմին ասողացն զանձն՝ յոլովակի եղև անմիաբանութիւն. ոմանց գոյութիւն և անմահ ասացեալ զնա. իսկ ոմանց թէ և անմարմին, սակայն ոչ գոյութիւն և ոչ անմահ ։ Նախ Թաղէս ասաց զանձն մշտաշարժ և ինքնաշարժ. իսկ Պիւթագորաս՝ թիւ՝ զանձն շարժող ըստ թուոյ յօդաւորի [3]. իսկ Արիստոտելէս՝ կատարունութիւն առա-

1 Օրինակ մի բաղկացեալք ։

2 Այս է. քանզի (ըստ Դեմոկրիտեայ) հոգի (անձն՝ ըստ բնագրին) կազմեալ է 'ի բաղադրութենէ գնդատեսակ հիւլէից՝ յորոց և օդ և հուր ։ Լծմն. Դիմոկրիտէս ասէ, թէ գնդատեսակ են օդ և հուր՝ շուրջ զաշխարհաւս և անհատ 'ի միմեանց, համեմատեալք հոգի գոյացուցանեն ։ Իսկ Հերակլիտոս՝ զամենեցուն անձն 'ի վերածխութենէ երկրիս ասաց լինել, որ 'ի գոլորշեաց լինի. իսկ անասնոց հոգի՝ 'ի վերածխութենէ ասաց, բայց այլ տեսակ ծխոյ՝ արտաքոյ մարոյս՝ 'ի համասեռս իւրեանց ։

3 Ἀριθμὸν ἑαυτὸν κινοῦντα, այսինքն է. թիւ՝ շարժող զինքն ինքեամբ ։ Իսկ ըստ Լծմն. Պիւթագորաս շարժական թիւ ասաց զհոգի

ջին՝ մարմնոյ բնաւորականի, գործարանականի, զօրութեամբ կենդանութիւն ունողի[1]. իսկ Դինարքոս՝ յօդաւորութիւն չորից տարերցս, այսինքն՝ խառնումն և համաձայնութիւն տարերցս. քանզի ոչ 'ի բարբառոյ ըղհաստեալն՝ այլ զոր 'ի մարմնի, ջերմոյն և ցրտոյն, խոնաւոյ և ցամաքի յօդաւորն խառնումն և համաձայնութիւն կամի ասել: Ցայտ է թէ և 'ի սոցանէ՝ այլքն գոյութիւն ասեն զանձն. բայց Արիստոտելէս և Դինարքոս՝ անգոյ: Եւս առ այսոքիկ՝ ոմանք մի գոլ ասացին զնոյնն ամենեցուն անձն, տրամատեալ յիւրաքանչիւրսն, և դարձեալ յինքն ժողովեալ. որպէս Մանիքեցիքն և այլք ոմանք. իսկ ոմանք՝ բազումս և տարբերս ըստ տեսակի. ոմանք դարձեալ՝ և մի և բազումս:

Հարկ է այժմ ամենայնիւ երկայնել զբանս՝ այսքան կարծեաց ընդդիմաբանելով: Արդ՝ հասարակաց առ ամենեսին՝ որք ասեն զանձն մարմին՝ բաւական է առ 'ի յԱմոնիոսայն[2] վարդապետէն Պղատոնի[3] և 'ի Նումենեայ[4] պիւթագորականէ ասացեալքն. և են այսոքիկ. Մարմինքն ընտանի բնութեամբն փոփոխելիք գոլով և ցրուելիք, և ամենևինյանբաւութիւն հատանելիք, ոչ ուրուք 'ի նոցանէ առանց փոխադրութեան մնացելոյ՝ կարօտ են շարունակողի և շաղկապողի, և որպէս 'ի միասին

յօդաւոր. որպէս թիւ 'ի վերայ թուոյ յօդեալ առաւելու: — Այսպէս խառնակ և պակասաւոր են ամենայն ձեռագիր օրինակք մեր, և ըստ նոցանէ՝ լուծմանցն պարապմունք, որք բազում այն է՝ զի տարաձայն յիրերաց, տարաձայնին յոլով ուրեք և 'ի մտաց Նեմեսիոսի. որպէս և աստանօր ըստ բերման կամաց մեկնելով օտար իմացուածովք զպակասաւոր գրութիւն նախկին ընդօրինակողին. զոր ըստ յունին ուղղելի է այսպէս. Իսկ Պիւթագորաս, թիւ՝ զանձըն շարժող. իսկ Պղատոն (ժ. Գիրք Օրինաց) գոյութիւն՝ որ մըտօք իմանի և ինքեամբ շարժի ըստ համաձայնութեան թուոյ. իսկ Արիստոտելէս, և այլն:

1 Թէ զինչ արդեօք իմացեալ լինի կատարունուրին բառիւդ՝ յայտնեսցի ճոխագոյն յընթացս ճառին, յորում մեկնել առնուցու զասացեալսն յԱրիստոտելէ:

2 Ամմոնիոս Սակկաս, իմաստասէր նէոպղատոնեան, որ հետամուտ գտաւ 'ի համաձայնութիւն ածել զվարդապետութիւնս Պղատոնի և զԱրիստոտելեայ:

3 Իմա՛ Պլոտինոսի (Πλωτίνου).

4 Նումենիոս Ապամիացի, որ ընդգրկեաց զվարդապետութիւն աննիւթականութեան հոգւոյ և զանմահութեան նորին:

պնդողի, կլողի զնոսա. զոր ասեմք անձն: Արդ՝ եթէ մարմին է անձն, որպէս և իցէ, թէ և նրբագոյն, զի՞նչ դարձեալ է որ շարունակէ զնա. քանզի ցուցաւ ամենայն մարմին կարօտ շարունակողի. և այսպէս յանբաւութիւն՝ մինչև հանդիպեսցի անմարմնոյն: իսկ եթէ ասիցեն, որպէս և Ստոյիկեանքն, տևողական իմն գոլ շարժութիւն յար 'ի մարմինս՝ 'ի ներքս համանգամայն և արտաքս շարժեալ, և է ինչ որ արտաքս մեծութեանց և որակութեանց կատարողական գոլ, և է ինչ՝ որ 'ի ներքս կոյս միաւորութեան և էութեան. հարցանելի է ցնոսա, թէ վասն զի ամենայն շարժութիւն 'ի զօրութենէ իմեքէ, զի՞նչ է զօրութիւն այն և յումմէ գոյացեալ: Արդ՝ եթէ զօրութիւնն նիւթ ինչ իցէ, նոյնումբք դարձեալ վարեսցուք բանիւք. իսկ եթէ ոչ նիւթ՝ այլ նիւթաւոր, (այլ է նիւթաւորն՝ քան զնիւթն. քանզի հաղորդ նիւթոյ՝ ասի նիւթաւոր), զի՞նչ իրբեք արդեօք իցէ հաղորդ նիւթոյ. թերևս նիւթ է և նա, թէ աննիւթ: Արդ՝ եթէ նիւթ, զի՞արդ նիւթաւոր և ո՛չ նիւթ. իսկ եթէ ո՛չ նիւթ, աննիւթ ուրեմն է. և եթէ աննիւթ՝ ոչ մարմինն է, քանզի ամենայն մարմին նիւթ է: իսկ եթէ ասիցեն, թէ մարմինք եռակի տարորոշք են, և անձն ընդ բոլորն գոլով թափանցանց մարմին՝ եռակի տարորոշ է, և վասն այսորիկ ամենայն իրք և մարմին. ասեմք՝ եթէ ամենայն եռակի տարորոշ է, այլ ոչ ամենայն եռակի տարորոշ՝ մարմին. քանզի տեղի և որակ՝ անմարմինք ըստ ինքեանց, ըստ պատահմանց 'ի թանձրութիւն քանականան [1]. այսպէս և անձն ըստ ինքեան՝ անեռակի տարորոշ է, բայց ըստ պատահմանն յորում էն՝ յեռակի տարորոշի, գոլով ընդ նմին տեսակի և նա եռակի տարորոշ:

Եւս՝ ամենայն մարմին կամ՝ արտաքուստ շարժի կամ 'ի ներքուստ. այլ եթէ արտաքուստ՝ անանձն է, իսկ եթէ 'ի ներքուստ՝ անձնաւոր. իսկ եթէ մարմին է անձն, եթէ արտաքուստ շարժի՝ անանձն է, իսկ

1 Յօրինակս մեր՝ ի բանձրութեան քանականաց. ուղղեցաւ ըստ յունին: Լծմն. Տեղի և ձև, որ է եռանկիւն կամ քառանկիւն, 'ի միտս անմարմին է. իսկ նիւթի պատահեալ՝ երևի աչաց 'ի նիւթն:

եթէ 'ի ներքուստ՝ անձնաւոր. անտեղի է և՛ անձնաւոր և՛ անանձն ասել զանձն. ոչ ուրեմն է մարմին անձն։

Իսկ, անձն եթէ կերակրի՝ յանմարմնոցն կերակրի, քանզի ուսմունք կերակրեն զնա. և ոչինչ մարմին յանմարմնոյ կերակրի. ոչ ուրեմն է մարմին անձն։ Իսկ եթէ ոչ կերակրի, և ամենայն մարմին կենդանւոյ՝ կերակրի, ո՛չ ուրեմն է մարմին անձն [1]։

Եւ այսոքիկ հասարակաց առ ամենեսին՝ որք ասեն մարմին գոլ զանձն։

Եւ առանձինն՝ առ որս ասենն արիւն կամ շունչ գոլ զանձն, վասն զի շնչոյ կամ արեան զատուցելոյ՝ մեռանի կենդանին, ապա և զայն է ասելի՝ զոր ինչ ոմանք՝ յորոց վարկանին գոլ ինչ՝ գրեցին ասելով [2]. Ապա ուրեմն յորժամ մասն ինչ հոսէ յարենէ՝ մասն ինչ հոսէ յանձնէ. քանզի ունայնաբանութիւն է այսպիսիս. զի 'ի վերայ նմանամասնիցն՝ մնացեալն մասն նոյն է ամենեին. ջուր՝ և բազում և նուազն նոյն է. նմանապէս և արծաթն և ոսկին, և ամենայն որոց մասունքն ոչ տարափոխին 'ի միմեանց ըստ էութեանն. այսպէս և մնացեալն արիւն՝ որքան ինչ է՝ անձն է, եթէ անձն արիւն է։ Արդ զայս յայտ է ասելի. Թէ այն է անձն՝ որոյ 'ի բաց բարձելոյ՝ մեռանի կենդանին, ապա ամենայն իրզք և մաղաս անձն է, և մաղձք երկաքանչիւրքն. քանզի որ ոք 'ի սոցանէ պակասի՝ վախճան ածէ կենացն։ Եւ ևս, և լեարդն և ուղեղ գլխոյ և սիրտ և ստամոքք և երիկամունքն և ընդերք և այլ բազումք. քանզի ո՞ր ուրուք 'ի սոցանէ 'ի բաց բարձեցելոյ՝ ո՞չ մեռանիցի կենդանին։ Իսկ այլ ազգք բազումք են անարիւնք, բայց շնչաւորք. որպէս սիպէքն և տեւթիեղէպքն և այլք այսպիսի փափկամորթքն. այսպէս և ամենայն խեցեմորթքն, որպէս

1 Ի յոյն բնագրին այս վերջին իմաստ բանի 'ի դիմաց Քսենոկրատեայ աւանդի, այսպէս. Ξενοκράτης οὕτω συνῆγεν· εἰ δὲ μὴ τρέφεται, և այլն։

2 Այսպէս մթին և խառնակ յամենայն օրինակս մեր։ Յոյնն ունի. Οὐκ ἐκεῖνο ῥητέον, ὅπερ τινὲς τῶν οἰομένων εἶναί τι γεγραφήκασι λέγοντες. այսինքն. Ոչ զայն ինչ յառաջ բերել ընդդէմ, զոր ոմանք՝ իբրև գեղեցիկ ինչ ընծայութեան գիւտ՝ 'ի մէջ ածեն ասելով. և այլն։

կարկինոսքն և աստակոսքն և գաղտակուրքն և նմանք սոցին [1]: Արդ, եթէ շնչաւորք են և անարիւնք, յայտ է ոչ արիւն՝ անձն:

Իսկ առ որս ասեն ջուր գոլ զանձն՝ զի ջուր կենդանարար երևի ամենայնի, և առանց ջրոյ կեալ ոչ է կար, բազումք [2] են որ ընդդիմանան. քանզի և ոչ առանց կերակրոյ կեալ կարէ անձն, ուրեմն [3] և զկերակուրս է ասել ըստ նոցա: Որ է և բազում ինչ 'ի կենդանեաց՝ որ ոչ ըմպեն, որպէս և զոմանց արծուեաց ասի. և կաքաւ կարէ կեալ առանց ըմպելոյ: Եւ վասն էր յաւէտ ջուր է անձն՝ և ոչ օդ. քանզի առանց ջրոյ է և տեսել, բայց առանց տուրևառի օդոյս՝ և ոչ դոյզն ինչ: Այլ և օդ չէ անձն. քանզի բազումք են կենդանիք առանց տուրևառի օդոյս, որպէս մեղուք և պիծակք և մրջիւնք, և անարիւնք 'ի ջրայնոցն բազումք, և ամենայն որոց ոչ են թոքք. քանզի ոչինչ յոչունողաց թոքս՝ տայ և առնու զօդս, և ոչ ոք՝ յորոց ոչ տան և առնուն զօդս՝ ունին թոքս [4]:

Իսկ վասն զի 'ի կղէանթեայ 'ի Ստոյիկեանցն և Քռիւսիպեայ՝ բերին բանք ինչ՝ ոչ զանց առնելիք, դնելի է և զսոցայն լուծմունս, որպէս լուծին որք 'ի Պղատոնեանցըն: կղէանթէս այսպիսի իմն շարամանէ մտածութիւնս. Ոչ միայն ըստ մարմնոյ լինիմք նմանք ծնողացն, այլ և ըստ անձին, ախտիւք, բարոյիւք, տրամադրութեամբք. և մարմնոյ է՝ նմանութիւն և աննմանութիւն, և ոչ անմարմնոյ. մարմին ուրեմն է անձն: Այլ նախ քան զամենայն ասասցուք. Ցորոց մասնէ՝ որք ըստ բոլորումն՝ ոչ կազմին համանգամայն [5]: Իսկ առ այսու և ոչ

1 Յոյնն. 'Ως τὰ σελάχη καὶ μαλάκια, οἷον σηπίαι καὶ τευθίδες καὶ ὀσμύλαι καὶ πάντα τὰ ὀστρακόδερμα καὶ ἀπαλόστρακα, ὡς οἱ κάραβοι καὶ καρκίνοι καὶ ἀστακοί.

2 Այսինքն՝ բազում իրք են, չէզոքաբար առեալ ըստ յունին:

3 Օրինակ մի՝ անձն ուրեմն և զկերակուրս:

4 Արդարև ստնաւոր, թռչուն և զեռուն կենդանեաց ևեթ սեփական են թոքք, այլ 'ի ձկունս և 'ի կակղամորթս զպաշտօն թոքաց վարեն ականջք. իսկ 'ի միջատս և 'ի ստորին դասու կենդանիս՝ շնչանօթք. ուստի յայտ է զի պակասութիւն թոքաց չէ նշան անգոյութեան տուրևառի շնչոյ:

5 Այսինքն է, 'ի մասնաւորէ առ ընդհանուրն չէ մարթ երբէք ընծայութեան առնուլ հաւաստիս: Լծմն. Մասնաւոր մի մարդ կամ

անմարմնոյ ասելն զնմանութիւն սուտ է [1]. քանզի ասեմք զթիւս նմանս գոլ՝ որոց կողմունք համեմատք են, որպէս զվեցն, և զքսան և զչորսն. քանզի կողմունքն վեցին՝ երկուք և երեքն, իսկ քսան և չորիցն՝ չորքն և վեցըն [2]. և համեմատութիւն ունի երկուքն առ չորսն, և երեքն առ վեցն. քանզի կրկնապատիկ բանիւ տեսանի, զի չորքն՝ երկուցն կրկնապատիկ է, և վեցն՝ երիցն. և են անմարմինք թիւք: Եւ ձեւք ձեւոյն նմանք են. զի որքան ինչ զանկիւնսն հաւասար ունի, և ըստ հաւասարանկեանցն՝ զկողմունսն համեմատս. իսկ զձեւս՝ և նոքա անմարմինս խոստովանին գոլ: Եւս, որպէս քանակի՝ իւրն է հաւասարն և անհաւասարն, այսպէս և որակի [3] նմանն և աննման, ուրեմն և անմարմին անմարմնոյ նըման է: Եւս, ասէ (Կղէանթէս). Ոչինչ անմարմին ախտակից լինի մարմնոյ, և ոչ անմարմնոյ՝ մարմին. բայց ախտակից լինի անձն մարմնոյ 'ի հիւանդանալ և 'ի հատանիլ, և մարմին՝ անձին, քանզի յամաչել ուրուք շառագունի, և յերկնչելն դեղնի. մարմին ուրեմն է անձն: Եւ է միւս ևս սուտ իմն ասացելոցն՝ ըստ առման շարակացեալ, ասելն՝ ոչ ինչ անմարմին՝ ախտակից լինի մարմնոյ. քանզի զի՞նչ է՝ եթէ միայն անձին առ է այս [4]. որպէս թէ մինչ ոք ասիցէ, ոչ ինչ 'ի կենդանեաց զվերին կլափնն շարժիցէ, իսկ կոկորդիլոսն զվերին կլափն շարժէ, ոչ ուրեմն է կենդանի կոկորդիլոս. քանզի սուտ է առաջարկութիւն, զի և աստանօր ըստ առման՝ ո՛չ ասէն թէ ոչինչ 'ի կենդանեաց զվերին կլափն շարժէ. զի ահա և կոկորդիլոս և՛ կենդանի է և՛ զվերին կլափն շարժէ. ըստ նորին օրինակի և յորժամ ասիցէ՝ թէ ոչինչ անմարմին՝ մարմնոյ ախտակից լինի. քանզի առեալ

երկու ես՝ լինին նմանք ծնողաց մարմնով և ոգւոյ կրիւք, բայց բովանդակ մարդկութիւնս ոչ լինի:

1 Լծմն. Իսկ այն՝ որ ասեն թէ մարմնոյ է նմանութիւնն և ոչ անմարմնոյ՝ սուտ են:

2 Զոր ասէն աստանօր՝ մարթ է մեկին իմանալ 'ի հետեւեալ կէտանիշ շարուածս ձեւոցս. (6 : : : և 24 ⋮ ⋮ ⋮ ⋮ ⋮ ⋮), որոց համեմատութիւն կողմանցն՝ են որպէս 2 առ 4, և 3 առ 6, ըստ վերոյգրեալ բանից Նեմեսիոսի:

3 Օրինակն մեր՝ այս է և որակի, և այլն. ուղղեցաւ ըստ յունին:

4 Իմա՝ անձին կամ հոգւոյ սեփական իցէ այս:

լինի խնդրելիդ՝ բացասացութեամբ։ իսկ եթէ ոք դիցէ ճշմարիտ գոլ՝ զոչինչ անմարմին՝ մարմնոյ ախտակից լինել, այլ ասացեալն ո՛չ է խոստովանելի՝ զի ախտակից լինի անձն 'ի հիւանդանալ և 'ի հատանել մարմնոյն. քանզի երկբայի[1] թէ մարմինն միայն է՝ որ հիւանդանայն, առեալ յանձնէ զգայութիւն, իսկ ինքն մնայ անախտ, թէ խօթակից լինի մարմնոյն։ Եւ կալնու յաւէտ[2] առ 'ի փառաւորագունիցն՝ նախկինն, և ոչ է պարտ յերկբայ ասացելոցն՝ ժողովել խորհուրդ, այլ 'ի խոստովանեցելոցն։ Զի 'ի սեփականութենէ ցուցանի և ոմանց անմարմնոց՝ ախտակից լինել մարմնոյ. քանզի որակութիւնք անմարմինք գոլով՝ յախտանալ մարմնոյն՝ և նոքա ախտակից լինին մարմնոյն յապականութեան և 'ի լինելութեան։

իսկ Քռիւսիպոս ասէ. Մահ՝ է որոշումն անձին 'ի մարմնոյ. և ոչինչ անմարմին 'ի մարմնոյ որոշի, քանզի և ոչ հպի 'ի մարմին անմարմինն, իսկ անձն և՛ հպի և որոշի 'ի մարմնոյ. ոչ ուրեմն է անմարմին՝ անձն։ Յայսցանէ մահու լինել որոշումն անձին 'ի մարմնոյ՝ ճշմարիտ է, բայց ոչ հպել անմարմնոյ 'ի մարմին՝ սուտ է ամենևին ասացեալն. բայց 'ի վերայ անձին ճշմարիտ է։ Եւ է սուտ՝ վասն զի գիծ անմարմին գոլով՝ հպի 'ի մարմին և որոշի. նոյնպէս և սպիտակութիւն։ իսկ 'ի վերայ անձին՝ ճշմարիտ, քանզի ոչ հպի 'ի մարմին՝ անձն. քանզի թէ հպի՝ յայտ է թէ առընթեր կայ նորա. և եթէ այս է՝ ոչ բոլորին կայ առընթեր. քանզի անկար է մարմնոյն բոլորին կալ առընթեր. և եթէ այսպէս ոչ է՝ բոլորն ոչ եղիցի անձնաւոր կենդանին, որպէս զի թէ հպի՝ մարմին եղիցի անձն, բոլորն ոչ եղիցի անձնաւոր կենդանին. իսկ եթէ բոլորն է անձնաւոր և ոչ հպի, և ոչ մարմին է անձն։ Բայց կենդանին բոլորն անձնաւոր է, ոչ ուրեմն հպի, և ոչ մարմին է, և որոշի՝ անմարմին գոլով։ Եւ արդ՝ զի ոչ է անձն մարմին՝ յայտ

1 Իմա՝ յերկբայութեան մնայ։

2 Այսինքն՝ ընկալեալ լինի. հաւատարմագոյն վկայի նախկինն։ Յոյնն ունի. Καὶ κρατεῖ μᾶλλον παρὰ τοῖς ἐνδοξοτέροις τὸ πρότερον. այսինքն է. Առաջինն (յերկուց կարծեացդ) ընտրելագոյն վկայի առ ականաւորսն (իմաստասէրս)։

է յառաջելոցս. իսկ զի և ոչ անգոյ է՝ զայնհետայն է ասել։

Իսկ վասն զի և Դինարքոս յօդումն [1] կոչեաց զանձն, և Սիմիաս ընդդիմաբանելով Սոկրատայ՝ յօդումն ասէր գոլ զանձն, ասելով թէ նման է անձն՝ յօդման աղեաց, իսկ մարմին՝ քնարի, արտադրելի է զլուծմունս այսորիկ՝ զորս 'ի գիրսն Պղատոնի կայ։ Եւ է մի 'ի նախացուցելոցն 'ի նմա. քանզի նախացուցանի՝ եթէ ուսմունք վերստին յիշեցմունք են։ Արդ՝ զայս առեալ որպէս խոստովանելի, կազմէ զբանսն այսպէս. Եթէ ուսմունք վերստին յիշեցմունք են, էր անձն ուրեմն նախ քան 'ի մարդումն լինել. իսկ եթէ յօդումն է՝ նախկին ոչ է, այլ յետոյ եղև յօդեալ ընդ մարմնոյս. քանզի ամենայն շարադրութիւն ոչ այլ ազգ ունի, բայց միայն որպէս ունի զայն՝ որոց շարակային, քանզի կցորդութիւն ինն է շարադրելոցն. շարադրութիւն յօդումն [2] գոլով և ոչ արգելու զոչ հաղորդել [3] նմա նոցա՝ յորոց շարադրեցաւն, այլ հետևել նոցա։ Արդ պատերազմի այժմ յօդումն գոլն զանձն՝ ընդ ուսմանց վերստին յիշեցմանցն լինելոյն. իսկ եթէ վերստին յիշմանցն ճշմարիտ է, սուտ ուրեմն է անձին յօդումն գոլ։ Եւս, անձն ներհական է մարմնոյ, և զիշխանական ունի բան՝ որպէս իշխելով նմա. իսկ յօդումն ոչ համարեալ նմա լինի իշխան և ոչ ներհական է. ոչ ուրեմն է անձն յօդաւորութիւն։ Եւս, յօդումն յաւէտ կամ նուազ է՝ 'ի թուլացուցանելն և 'ի պնդելն. ոչ բան է յօդումն, [4] քանզի ան-

1 Յոյնն ἀρμονίων, ներդաշնակութիւն։

2 Լծմն. Յօդումն ասի դաշնակութիւն ձայնի. որպէս աղեաց քնարի յօդանալ։

3 Երկու օրինակք՝ համարել։ Այսպէս խառնակ և անիմանալի ունին զայս իմաստ բանից ամենայն ձեռագիր օրինակք մեր, զոր ըստ յունին իմանալի է մեկին. «Քանզի ամենայն շարադրութիւն՝ ոչ այլով իւիք է շարադրեալ, բայց եթէ յորոց շարադրին. արդ դաշնաւորութիւն ձայնի՝ շարադրութիւն ինն է յառաջ եկեալ 'ի շարակայելոց մասանց, ուստի ոչ նախկին նոցուն համարելի է, այլ հետևութիւն։ Յայտ ուրեմն է պատերազմող մասց գոլ՝ ասել զհոգին յօդումն (ներդաշնակութիւն) և միանգամայն զուսմունս՝ վերստին յիշեցմանս խոստովանել. այլ զի ճշմարտիւ ուսմունք վերստին յիշեցմունքն են, ապա սուտ է լինել՝ հոգւոյն յօդումն խոստովանութիւն»։

4 Յոյնն ունի. Οὐ τῷ λόγῳ δὲ τῆς ἁρμονίαν, այս է. Այլ ոչ ըստ

կար է բանի զյաւէտն և զնուազն ունել, այլ յօդման. քանզի թէ խառնեալն սուր վանգ է և կամ ծանր և ապա թօղացին՝ զբանն զնոյն ամբողջ պահեն 'ի մեծութեան վանկիցն, բայց փոփոխումն առնու յօդումն [1], ըստ յօդելոյն յաւէտ կամ նուազ ձգեալ զաղին. իսկ անձն քան զանձն՝ ոչ է յաւէտ կամ նուազ. ոչ ուրեմն է յօդումն՝ անձն: Եւս, անձն առաքինութիւն և չարութիւն մակընդունի. իսկ յօդումն՝ յօդումն և անյօդումն ոչ մակընդունի. ոչ ուրեմն է անձն՝ յօդումն: Եւս, անձն մակընդունելով զներհական անպակաս 'ի մասնէ [2] էութիւն է և ենթակայ, իսկ յօդումն՝ որակութիւն և յենթակայումն. իսկ էութիւն այլ է քան զորակութիւն. անձն ուրեմն այլ է քան զյօդումն: Արդ՝ յօդման հաւասար գոլ անձին՝ ոչ ինչ է անտեղի, այլ ոչ առ այս՝ յօդումն. քանզի և ոչ՝ վասն զի առաքինութեան հաղորդ է՝ առաքինութիւն է անձն:

Իսկ Գաղիանոս ճշգրտիւ ոչ ինչ ասէ, այլ և վկայէ մակացուցականօքն իւրովք բանիւ, եթէ ոչ ինչ ոք ասաց ճշմարտիւ յաղագս անձին [3], բայց նման է յորոց ասէն փորձել յաւէտ զխառնուած բնութեանն ասել զանձն [4], քանզի այսմիկ՝ հետևեալ բարոյիցն տարբե-

բանի յօդման, (non quidem ratione harmoniæ). — Լծմն. Բան այժմ զերգն ասէ զերաժշտին:

1 Մթին են ասացեալքդ 'ի Նեմեսիոսէ. քանզի չէք ինչ հարկ փոփոխելոյ կամ աղաւաղելոյ յօդմանն (ներդաշնակութեանն) 'ի սրութենէ և 'ի ծանրութենէ վանկիցն (ձայնիցն), քանզի փոփոխութիւնքդ զներդաշնակաւորումն միշտ 'ի ներդաշնակութեան պահեն, թէպէտ և տարազ եղանակացն այլայլեսցին: Պղատոնի ասացեալ է միայն. 'Αρμονία μᾶλλον καὶ ἧττόν ἐστιν· ἡ δὲ ψυχὴ οὐ μᾶλλον καὶ ἕττον ηστι. որ է. Ներդաշնակութեան առաւելութիւն կամ նուազութիւն գոյ, իսկ հոգւոյ չէք կարի կամ սակաւ:

2 Յօրինակս սպակասի մասնէ: Լծմն. Մասն մի անձն և մասն մի մարմինն. արդ մի մասն՝ որ է անձն՝ կարէ առանց մարմնոյն ընդունել զներհականն, զառաքինութիւն և զչարութիւն. և է անձն էութիւն կատարեալ, և առնու զառաքինութիւն յինքեան վերայ իբրև յենթակայի:

3 Իմա ըստ յունին. Ոչինչ տեղեկագոյնս ասացեալ ինքեան ըղհոգւոյ: Մակցուցակութիւնքդ, որպէս ինձ երևի, առանձինն մատեան լեալ իցէ անշուշտ Գաղիանոսի:

4 Այսպէս յօրինակն. յոյն բնագիրն ունի. Ἔοικε δὲ, ἐξ ὧν λέγει, δοκιμάζειν μᾶλλον, τὸ κρᾶσιν εἶναι τὴν ψυχήν· այս է. Այլ յորոց ասէն՝ երևի յաւէտ զխառնուած բնութեանն (tempérament) հոգի

րութեան ։ ի Հիպոկրատեայ կազմէ զբանն ։ իսկ եթէ այսպէս՝ յայտ է թէ և մահկանացու զնա գոլ վարկանի, բայց ոչ զամենայն՝ այլ զոմնբանն միայն անձն մարդոյ ։ Բայց վասն բանականին երկբայի՝ ասելով այսպէս [1], թէ վասն զի ոչ է կար՝ մարմնոյն խառնուածի լինել անձն՝ յայտ յայսմանէ է. ամենայն մարմին անձնաւոր և ան-անձն՝ 'ի չորից տարերցս է խառնեալ, քանզի սոցայս խառնուած՝ զմարմինս գործէ. արդ եթէ մարմնոյ խառ-նուած է անձն, ոչ ինչ եղիցի անանձն ։ Եւ ժողովի բանս այսպէս. Եթէ խառնուած մարմնոյ՝ անձն է, ամենայն մարմին խառնուած ունի, ապա ամենայն մարմին ունի անձն. իսկ եթէ ամենայն մարմին անձն ունի, և ոչ մի մարմին է անանձն, և ոչ քար ուրեմն և ոչ փայտ և ոչ երկաթ, և ոչ այլ ինչ եղիցի անանձն ։ իսկ եթէ ոչ ընդ-հանուր զամենայն խառնուած մարմնոյ ասէ (Գաղիա-նոս) անձն լինել, այլ զայսպիսիսն ինչ, հարցանելի է։ Ո՞ր խառնուած է՝ որ առնէ կենդանի անձն և բան ունող. քանզի զեր և ասասցէ խառնուած՝ այսպի-սիս գտանեմք և յանշունչսն. քանզի ինն [2] գոլով խառ-

առնելն ։ — Գուցէ հայ Թարգմանութիւնն ընթեռնլի իցէ. Բայց յայնմանէ՝ յորոց ասէն՝ կարծի յաւէտ, և այլն ։ — Քանզի այսմիկ հետևեալ բարոյիցն տարբերութեան. իմա. Քանզի տարբերութիւն բարոյից՝ զհետ գայ զանազանութեան խառնուածոյ բնութեան ։

1 Ասա պակասին՝ որպէս 'ի Թարգմանութեանս՝ նոյնպէս և 'ի յոյն բնագրին՝ բանք Գաղիանոսի. այլ հայ Թարգմանիչն (Ստեփա-նոս Սիւնեցի) համաձայն ձեռագիր օրինակաց ինչ յունականաց՝ զյաջորդութիւն բանիցն իբրև հատուած վկայութեան 'ի Գաղիա-նոսէ 'ի մէջ ածեալ՝ ընդ նախընթացիցն յօդեալ շաղկապէ. այլ մը-տացեալ ոչ սակաւուց, որպէս և իմաստք բանին պահանջեն մանա-ւանդ, 'ի հերքումն կարծեաց Գաղիանու՝ Նեմեսիոսի Թուին այնո-քիկ, ընթեռնլով. Բայց վասն բանականին երկբայի՝ ասելով այս-պէս ... Այլ զի ոչ է կար՝ մարմնոյն խառնուածի, և այլն ։ Ըստ այսմ ունին և բազմաթիւ ընդօրինակութիւնք յունականք ։

2 Լծմն. Վասնախառն այս է. յորժամ հողն աւելի 'ի միում մար-մնոյ խառնուած՝ քան զայլ երիսն, զհուրն ասեմ և զջուրն և զօդն, վաս եղև այն մարմնոյն խառնուածն. և յորժամ 'ի միւս այլում մարմնոյ խառնուած՝ հողն պակաս լինի քան զայս երիսն՝ եղև վաս. և է այս երկու՝ հողոյն, որ 'ի միումն աւելի եղև 'ի միւսումն պա-կաս. և է երկու վաս՝ հողոյն. այսպէս և 'ի ջուրն և 'ի յօդն և 'ի հուրն՝ երկու վաս լինի, յորժամ առաւել կամ պակաս լինի մին քան զայլ երիսն. և այսպէս լինի ութ վասնախառն 'ի կազմած ում և իցէ, թէ մարդոյ, թէ անասնոյ, թէ փայտի, թէ քարի. և յոր-

նուածոցն, (նոյնպէս եցոյց՝ յորում Յաղագս խառնուա-ծոյս [1]) ութ զվատախառնիցն և մի զբարեխառն՝ ինն, և թէ ըստ բարեխառնին, ասէ, խառնեալ զմարդն, բայց ոչ զամենայն՝ այլ զմիջակին խառնուածոյ. իսկ ըստ այլոց վատախառնիցն՝ զայլս կենդանիս ըստ տեսակի՝ հանդերձ յաւէտ և նուազ թուլութեամբ և սաստկու-թեամբ: Գտանին և յանշունչսն ինոյնքն խառնուածք հանդերձ յաւէտիւն և նուազիւ. նոյնպէս դարձեալ և 'ի Պարզսն [2] եցոյց: Եւս, եթէ անձն խառնուած է, իսկ խառնուածք բնութեան փոփոխին ըստ հասակին և ըստ ժամանակին, ապա և անձն փոփոխի. իսկ եթէ փոփոխի՝ ոչ զնոյն ունիմք անձն, այլ ըստ խառնուածին երբեմն ա-ռիւծու և երբեմն ոչխարի և երբեմն զայլոյ ուրուք, որ է անտեղի: Եւս, խառնուած բնութեան՝ ոչ ներհակայի ցանկութեանց մարմնոյն, այլ և գործակից լինի, քանզի նա է՝ որ շարժէն, իսկ անձն ներհակայի. ոչ ուրեմն խառ-նուած է անձն: Եւս, եթէ խառնուած է անձն, իսկ խառնուած՝ որակութիւն, և որակութիւնն՝ և՛ լինի և՛ բացալինի՝ առանց ենթակային ապականութեան, և ան-ձըն ուրեմն որոշեսցի առանց ենթակային ապականու-թեան. բայց այս ոչ է ճշմարիտ. ոչ ուրեմն է խառնուած և ոչ որակութիւն անձն: Քանզի ոչ ուրեք զմիւս հակա-կայիցն բնաւորապէս առլինել ասացին կենդանւոյն [3], որպէս հրոյ է ջեռուցանելն. քանզի անփոխադրելի է այս. բայց խառնուածն երևի փոխադրեալ, յաւէտ զի ինքեանք են՝ որ 'ի ձեռն բժշկականի արուեստին զխառ-նուածսն փոխադրեն: Եւս, ամենայն մարմնոյ որակու-թիւնք զգալիք են, բայց անձն ոչ զգալի, այլ իմացական.

Ժամ չորքն հաւասար լինին 'ի խառնուած բնութեան՝ այն է բարի և լաւ խառնուած. և յորժամ զութ վատն համարիս և զմի զայս բարի՝ լինի ինն. և այս է ինն խառնուածն:

1 Այս է 'ի գիրսն Յաղագս խառնուածոյ (ἐν τῷ περὶ κράσεως).

2 Իմա զգիրս՝ որ զՊարզից (ἐν τοῖς ἁπλοῖς).

3 Յոյն բնագիրն ունի. Οὐ γὰρ δήπου τὸ ἕτερον τῶν ἀντικειμένων φυσικῶς προςεῖναι φύσουσι τῷ ζώῳ. այս է. Ապաքէն ոչ զայնպիսեաց ինչ որակութեանց ասասցի, որք բնաւորականք են կենդանւոյն. որ-պէս ջերմութիւն բնակից գտանի հրոյ. (զի այսգունակ որակու-թեանց չէք փոփոխել, մինչդեռ խառնուածոյ հնարաւոր է. նա զի և 'ի բժշկաց իսկ են՝ որք 'ի ձեռն արուեստին զխառնուածսն փոփո-խեն):

ոչ ուրեմն է որակութիւն 'ի մարմնի[1] անձն։ Եւս, մարմնոյ և հոգւոյ[2] (յարադրութեամբ իսկ մարմնոյ և ջլաց և այլոց) բարեխառնութիւն՝ զօրութիւն է. և ջերմոյ և ցրտոյ և ցամաքի և խոնաւի բարեխառնութիւն՝ առողջութիւն է. իսկ բարեչափութիւն անդամոց՝ հանդերձ վայելուչ գունով՝ գեղեցկութիւն առնէ մարմնոյ։ Արդ՝ եթէ յօդումն առողջութեանն և զօրութեան և գեղեցկութեան՝ անձն է, հարկ էր մարդոյ որքան կենդանի էր՝ ոչ հիւանդանալ և ոչ տկարանալ և ոչ տգեղ լինել. բայց պատահի յոլովակի ոչ զմի միայն, այլ և զերեսինս զայս բարեխառնութիւնս կորուսանել՝ և կենդանի գոլ մարդոյն, քանզի հանդիպի նմա համանգամայն և՛ տըգեղ գոլ և՛ տկարանալ և՛ հիւանդանալ. ոչ ուրեմն է բարեխառնութիւն մարմնոյն՝ անձն։ Արդ, զիա՞րդ բնաւորական իմն չարութիւնք և առաքինութիւնք հետևին մարդկան. այս ճշմարտապէս 'ի մարմնոյն խառնուածոյ լինի. քանզի որպէս բնութեամբ առողջք և հիւանդոտք են 'ի խառնուածէն, այսպէս և ոմանք բնութեամբ դառնամաղձեայք և բարկացողք են, այլք վախողք, այլք 'ի վայր բերեալք. այլք է երբեք զի բուռն հարեալ ունին և յաղթկու լինին. յայտ է՝ զխառնուածէն բուռն հարեալ ունին. այլ է որ ունին և այլ է զոր ունին[3]. այլ ուրեմն է խառնուածն և այլ անձն։ Քանզի գործարան գոլով մարմին անձին, թէ պատեհապէս կազմեսցի՝ գործակից լինի անձին, իսկ եթէ անպատեհաբար՝ խափանիչ. և յայնժամ պէտք են անձինն իրաց ինչ՝ որք մարտնչին ընդ անպատեհութեան գործարանին։ Եւ եթէ ոչ յօժ զգաստասցի, այլ ընդ նմա խոտորեսցի. որպէս ոք երաժիշտ զհետ երթիցէ քնարին թիւրութեան, թէ ոչ նախ զնա բարւոք կազմեսցէ։ վասն որոյ և պիտոյ է անձին հպատակ լինել[4] մարմնոյ,

1 Յօրինակս մեր որակութիւն անմարմնին. ուղղեցաք ըստ յունին։

2 Յոյնն, τοῦ αἵματος καὶ πνεύματος, այսինքն՝ արեան և հոգւոյ։ — Գիտելի է զի Թարգմանիչս զանազանէ 'ի հայումս զանձն (ψυχή) 'ի հոգւոյ (πνεῦμα).

3 Ἄλλο δέ ἐστι τό κρατοῦν καὶ ἄλλο τὸ κρατούμενον.

4 Ըստ յունականն ոճոյ (διό καὶ χρεία τῇ ψυχῇ τῆς ἐπιμελείας τοῦ σώματος), որ է, զգոյշ լինել, ուշ ունել պարտ է հոգւոյ՝ զի մարմինն իցէ ինքեան գործարան պատշաճաւոր։

զի կազմեսցէ զնա գործարան իւր ըստ պատեհութեան. և զայս առնէ 'ի ձեռն բանի և սովորականաց հրահանգից, որպէս յօդմամբ՝ զոմանս թուլացուցանել և զոմանս պնդել, զի պատշաճ զնա իւր կազմեսցէ և վարեսցի պատեհ գործարանաւ. ևթէ ոչ՝ ինքն ընդ նմին թիւրեսցի. քանզի պատահի և այս։

Իսկ Արիստոտելէս զանձն կատարունութիւն ասելով՝ ոչ ինչ պակաս բերի յայնցանէ՝ որք որակութիւնս ասեն զնա։ Բայց յայտնեսցուք նախ թէ զինչ կոչէ զկատարունութիւնն։ Զէութիւն՝ եռակի ասէ [1]. է ինչ՝ զոր որպէս նիւթ ենթակայ, որ ըստ ինքեան ոչինչ է, բայց ունի զօրութիւն առ լինելութիւն. իսկ զմիւսն՝ կերպարան և տեսակ՝ ըստ որում տեսակագործի նիւթն. և երրորդ՝ որ հանդերձ երկաքանչիւրիւքն՝ 'ի նիւթոյն և 'ի տեսակէն՝ եղեալն, որ է ապա անձնաւոր։ Արդ, նիւթն՝ զօրութիւն, իսկ տեսակն՝ կատարունութիւն. և այս՝ երկակի, ոմն՝ որպէս մակացութիւն, ոմն՝ որպէս տեսանել ըստ մակացութեանն. այսինքն՝ ոմն որպէս տրամադրութիւն, և ոմն որպէս ներգործութիւն մակացութեան. զի 'ի գոլոյն անձին և քուն և արթնութիւն է [2]. իսկ համեմատ արթնութեանն՝ տեսանելն և գործելն. իսկ քնոյն՝ տեսանելն և ոչ գործելն։ Եւ նախկին է մակացութիւն քան զներգործութիւն. վասն որոյ առաջին կատարունութիւն կոչէ (Արիստոտէլ) զտեսակն, և երկրորդ զներգործութիւնն։ Որպէս ակն յենթակայէ է և 'ի տեսակէ. և է ենթակայն 'ի նմա՝ ընկալեալ զտեսութիւն՝ նիւթականն, և կոչի և նա համանունակի՝ ակն. իսկ տեսակն և կատարունութիւն առաջին՝ ականն՝ նոյնըն [3] երեսք՝ որ կարօղն է զտեսանելն տալ նմա. իսկ երկրորդն կատարունութիւն է ական՝ ներգործութիւնն՝ ըստ որում տեսանէն։ Արդ՝ որպէս արդի ծնեալ կորիւն

1 Յաղագս Հոգւոյ. Գիրք Բ. Գլ. առաջին։

2 Պակասաւոր կամ խառնակ թուին աստ օրինակք մեր։ Ըստ յոյն բնագրին իմաստ բանին պարտի լինել. Որպիսի իմն ցուցանէ անձն զերկոսին զայսոսիկ (զտրամադրութիւնն և զներգործութիւնն մակացութեան) յորժամ 'ի քուն գտանիցի և կամ յարթնութեան։ — Լծմն. Օրինակաւ ցուցանէ թէ անձն գոյ 'ի մարդն 'ի քունն և յարթնութիւնն։

3 Յոյնն ունի. Նոյն ինքն տեսութիւնն (αὐτὴ ἡ ὄψις).

շան, և ոչ մի ինչ ունի կատարունութիւն, բայց զօրութիւն ունի ընդունելոյ զկատարունութիւն, այսպէս պարտ է առնուլ և զանձինն ։ Քանզի որպէս անդ՝ ծնեալ երեաք[1] կատարէ զակն, այսպէս աստանօր՝ ծնեալ անձն 'ի մարմնի՝ կատարէ զկենդանին. քանզի ոչ առանց մարմնոյ գոլ երբեք զանձն, և ոչ մարմին անանձն. քանզի մարմին ոչ է, բայց 'ի մարմնոյ է. և վասն այսորիկ 'ի մարմնի է, և 'ի մարմնի այսպիսում. ինքն ըստ ինքեան ոչ գոյ ։

Այլ նախ զկրականն մասն անձին՝ անձն կոչէ (Արիստոտէլ), զատանելով 'ի նմանէ զբանականն. և պարտ էր զամենայն առնուլ զանձն մարդոյ և ոչ 'ի մասնէ, և զայս՝ տկարագունին, վասն ամենայնին բացասել ։ Եւ ապա մարմին, ասէ, զօրութեամբ զկեալն ունի և նախ քան զլինել անձին. քանզի ասէ՝ եթէ մարմին զօրութեամբ կեանս ունի յինքեան ։ Պարտ է որ զօրութեամբ կեանս ունի՝ նախ ներգործութեամբ գոլ մարմին. քանզի ոչ կարէ ներգործութեամբ գոլ մարմին՝ նախ քան ընդունել զտեսակն, զի նիւթ է անարար և ոչ մարմին. զի անկար է ոչ գոյին ներգործութեամբ՝ զօրութիւն ունել առ 'ի նմանէն ինչ լինելոյ ։ Իսկ եթէ մարմին զօրութեամբ է, զիա՞րդ զօրութեամբ մարմին՝ զօրութեամբ կեանս ունել 'ի յինքեան կարէ ։ Իսկ այլազգ, 'ի վերայ այլոցն է կար ունել ինչ և ոչ վարիլ նովաւ, որգոն՝ երեւս[2] ունելով ոչ վարիլ նովաւ. բայց 'ի վերայ անձին անկար է, քանզի ոչ՝ որ 'ի քունն է՝ առանց անձնականի զօրութեան է, քանզի և կերակրի և աճէ և յածի և շունչ առնու, որ և մանաւանդ է նշանակ կելոյն ։ Արդ՝ յայսմանէ է յայտնի եթէ զօրութեամբ կեալն ոչ է կար առլինել ումեք, այլ ամենայնիւրք ներգործութեամբն. քանզի նախ որ տեսակագործէ զանձն՝ ոչ ինչ է այլ քան զկեանս, քանզի անձին տնկակից եղեն կեանք, բայց մարմնոյ ըստ հաղորդութեան. և որ ոք ասիցէ զողջութիւն համեմատ գոլ կենաց, ոչ զանձին կեանս ասիցէ, այլ զմարմնոյ ։ Եւ իմաստասիրի

1 Իմա երևոյթ, տեսութիւն, որպէս 'ի վերոյ ։
2 Իմա տեսողութիւն կամ գործարան տեսանելոյ (ὄψιν ἔχοντα).

այսպէս [1]. քանզի մարմնական էութիւն՝ պակաս 'ի մասնէ՝ [2] ներհակացն է ընդունական. իսկ որ ըստ տեսակին և ոչ բնաւ. քանզի եթէ որ ըստ տեսակին տարբերութիւն փոխադրեսցի՝ փոխադրի և կենդանին. որպէս զի ոչ որ ըստ տեսակի էութիւն՝ է ներհակացն ընդունական, այլ որ ըստ ենթակային, այսինքն՝ մարմնականն։ Ոչ կարէ այժմ անձն և ոչ ըստ միոյ յեղանակի՝ կատարունութիւն մարմնոյ գոլ, այլ էութիւն ինքնակատար և անմարմին, քանզի պակաս 'ի մասնէ ընդունի զներհակսն՝ զշարութիւն և զառաքինութիւն, զոր ոչ կարէ ընդունել տեսակն։

Եւ ապա ասէ (Արիստոտէլ) կատարունութիւն գոլով անձն՝ անշարժ գոլ ըստ ինքեան, և շարժի ըստ պատահման, և ոչ ինչ անվայելուչ՝ անշարժ գոլով շարժել զմեզ. քանզի և գեղեցկութիւն անշարժ գոլով շարժէ զմեզ. այլ թէ և այս անշարժ գոլով՝ շարժէ, այլ զբնութիւն ունելով շարժիչ՝ շարժէ, և ոչ զանշարժութիւն[3]։ Արդ՝ թէ և մարմին ըստ ինքեան շարժութիւն ունէր, ոչ ինչ էր անտեղի նմա՝ շարժիլ յանշարժէն. բայց այժմ անկար է անշարժին՝ յանշարժէն շարժիլ։ Արդ՝ ուստի՞ է մարմնոյ շարժիլն, եթէ ոչ յանձնէ. քանզի ոչ ինքնաշարժ է մարմին։ Առաջին լինելութիւն շարժութիւն այժմ կամելով ցուցանել, ոչ առաջին՝ այլ երկրորդ եցոյց[4]. քանզի թէ զանշարժն շարժէր՝ առաջին շարժութիւն առնէր, իսկ եթէ զշարժուն ինքեամբ, և այժմ այլազգ շարժէ, երկրորդ շարժութեան լինելութիւն պատմէ։

1 Յոյն բնագիրն ունի. Καὶ οὕτω σοφίζεται, զոր թարգմանիչն այլով իմաստիւք առեալ՝ կցորդ յետադայիցն ընթեռնու. այլք գտեն համաձայն յոյն ձեռագիր օրինակաց՝ կցորդ ընդ նախընթացիցն, որով և ընթեռնուն. Որ ոք ասիցէ զողջութիւն համեմատ գոլ կենաց, ոչ զանձին կեանս ասիցէ, այլ զմարմնոյ, և այսպէս ատերիւրի. զի σοφίζεται ունի զնշանակութիւն և՛ իմաստասիրելոյ և՛ վրիպելոյ։

2 Լծմն. Այսինքն՝ առանց հոգւոյ, զի միմեանց մասունք են հոգին և մարմինն։

3 Այսինքն է, թէպէտ և ինքն գեղեցկութիւնն չզգայ ինչ յուզումն (շարժումն), այլ տայ զգալ այնմ միայն՝ որ 'ի բնէն զգայութեան է ընդունակ, և ոչ զանզգայն։

4 Իմա ըստ յունին. Եւ այսպէս շարժումն՝ որ 'ի նմանէ ('ի մարմնոյ) գոգցես յառաջանալ թուի, ոչ է սկզբնական, այլ հետեւորդական շարժումն։

Արդ՝ ուստի՞ է առաջին շարժութիւն լինելութեան մարմնոյ. քանզի ասելն՝ ըստ ինքեան շարժել տարերցըս, ոմանք թեթև գոլով ըստ բնութեան և ոմանք ծանունք՝ սուտ է. քանզի թէ թեթևութիւն և ծանրութիւն շարժութիւն էր՝ ոչ երբեք դադարեալ կայր հաստատուն թեթևութիւն և ծանրութիւն. բայց կայ յիւրում հաստեալ տեղի. ոչ ուրեմն է թեթևութիւն և ծանրութիւն՝ պատճառ առաջին շարժութեան, այլ որակութիւնք տարերցս: Իսկ թէ և այս տացի, զիա՞րդ զմտաւ ածելն, խորհելն [1] և դատիլ, կարէ թեթևութեան և ծանրութեան գործ լինել. և եթէ ոչ այսոցիկ (գործ լինել կարեն, ապա) և ոչ տարերցս. իսկ թէ և ոչ տարերցս՝ և ոչ մարմնոյ: Եւս, եթէ ըստ պատահման շարժի անձն, իսկ մարմին ըստ ինքեան, և առանձին՝ մարմին յինքենէ շարժիցի, և եթէ՝ այս կենդանի եղիցի և առանց անձին. բայց անտեղիք են այսոքիկ. անտեղի ուրեմն և որ ՚ի սկզբանէն: Այլ և ոչ ասել՝ թէ ամենայն որ բնութեամբ շարժուն է՝ և՛ բռնի շարժի, և ամենայն որ բռնի շարժի՝ և՛ բնութեամբ շարժուն է՝ է ճշմարիտ. քանզի աշխարհ բնութեամբ շարժուն՝ բռնութեամբ ոչ շարժի: Այլ ոչ որ ըստ բնութեան շարժին՝ նոյն ըստ բնութեան դադարէ. քանզի և աշխարհ և արեգակն և լուսին՝ ըստ բնութեան շարժունք, ըստ բնութեան դադարել ոչ կարեն. ըստ նմին յեղանակի և անձն ըստ բնութեան շարժուն և ըստ բնութեան դադարել ոչ կարէ. քանզի դադարումն՝ ապականութիւն անձին է և ամենայն մշտաշարժի:

Առ այսոքիկ՝ և տարակուսեալն ՚ի սկզբանէ անլոյծ մնայ [2], ուստի լինի շարակալեալ մարմին, բնութեամբ

[1] Յօրինակս մեր փառաւորելն, վրէպ թարգմանութեամբ δοξάζειν յունական բառի, որ ունի զնշանակութիւն խորհելոյ, որպէս և փառաւորելոյ:

[2] Լծմն. Տարակուսեալ առէ զայն՝ որ ասաց թէ Ամոնիոս և Նումեն ասացին զի ամենայն մարմին բնութեամբ ցնդելի է. թէ ոչ այլ լիցի իր՝ որ շարապնդէ զինքն, և թէ իցէ ինչ՝ որ պնդող է մարմնականաց, բաւական է այս և այլ յոլով բանքդ զոր ասացաք, ցուցանել զի ոչ է (անձն) մարմնոյ կատարումնութիւն ըստ Արիստոտելի, և ոչ անշարժ և ոչ ՚ի մարմնոյ եղեալ, այլ էութիւն ինքնաշարժ և մշտաշարժ:

բնաւորեալն ցրուիլ։ Բաւական են և այսքիկ յոլովից՝ ցուցանել զանձն ոչ կատարունութիւն գոլ և ոչ անշարժ, և ոչ ՚ի մարմին եղեալ։

Իսկ Պիւթագորաս նշանակաբար նկատել միշտ և՛ զԱստուած և՛ զամենայն ընդ թուովք սովորեալ, սահմանեաց և զանձն՝ թիւ զինքն շարժող, որում և Քսենոկրատէս [1] հետևեաց. ոչ զի թիւ է անձն, այլ զի ընդ թուեցելովք է և ընդ բազմացելովքն. և եթէ՝ անձն է որ տարորոշէ զիրսն՝ կերպս և տիպս իւրաքանչիւր ուրուք ՚ի վերայ արկանելով. քանզի նա է որ զտեսակս ՚ի տեսակացն որոշէ, և զտարբերութիւնս նոցա ցուցանէ, այլայլութեամբ տեսակացն և բազմութեամբք թըւոցն, և վասն այսորիկ թուելիս արարեալ զիրսն. ուստի ոչ ամենայնիւ ՚ի բաց վճարի ՚ի կցորդութենէ թըւոցն. իսկ զինքնաշարժն և սա՝ (Քսենոկրատ) նմա վկայեաց։

Բայց զի թիւ ոչ է՝ յայտ յայտմանէ է, զի թիւ՝ քանակ է, իսկ անձն ոչ է քանակ, այլ էութիւն. ոչ ուրեմն է թիւ անձն. թէ և մանաւանդ զթիւն յիմացական էութիւն գոլ կամեսցին, որպէս յորս զկնի սորին առասցուք։

Եւս, անձն շարակալեալ է, բայց թիւ՝ ոչ է շարակալեալ. ոչ ուրեմն է թիւ անձն։ Եւս, թիւ կամ դար է կամ կոճատ. բայց անձն ոչ դար է, ոչ կոճատ. ոչ ուրեմն թիւ է անձն։ Եւս, թիւ ըստ յաւելման աճէ, իսկ անձն ըստ յաւելման ոչ աճէ։ Եւս, անձն ինքնաշարժ է, իսկ թիւ սահմանեալ անշարժ։ Եւս, թիւ մնալով մի և նոյն բնութեամբ, և ոչ մի որակութիւն՝ որ ընդ թըւովն անկանին եղեալ՝ փոփոխել կարէ. բայց անձն մի և նոյն մնալով ըստ էութեանն՝ փոխէ զորակութիւնսն յանուսումնութենէ ՚ի մակացութիւն փոխանակեալ և ՚ի չարութենէ յառաքինութիւն. ոչ ուրեմն է թիւ անձն։

Ընդ՝ հնոցն աւանդութիւմնք յաղագս անձին՝ այսոքիկ։ Բայց Եւնոմիոս [2] սահմանեաց զանձն. էութիւն

1 Քսենոկրատ՝ գլուխ Ճեմականացն դպրոցի, որ ջանահնար եղև միաբանել զվարդապետութիւնս Պղատոնի՝ վարժապետին իւրոյ, ընդ որոց ՚ի Պիւթագորայ։

2 Ծանօթ հերեսիովտապետն ՚ի չորրորդում դարու, որ ուրացաւ

անմարմին՝ 'ի մարմնի ստացեալ, ընդ նմին զգեցեալ համանգամայն զամենայն ինչ: Արդ՝ զէութիւն անմարմին 'ի ճշմարտութենէ էառ [1], բայց 'ի մարմնի ստացեալն յԱրիստոտելին վարդապետութենէ, ոչ ածեալ զմտաւ, որ և սուրն [2] էր, թէ 'ի նոյն ժողովել փորձի զանհպելիսն. քանզի ամենայն որ լինելութիւն մարմնական ունի՝ համանգամայն և ժամանակական, ապականացու է և մահկանացու: Ջայնակից է այսոցիկ Մովսէս ինքն, քանզի զգալեացս լինելութիւնս գրելով, ոչ 'ի նմին և զիմացականացն ասաց անդէն գոյանալ բնութիւն. այլ նկատելով [3] ոմանք ասեն զայս, որոց ոչ ամենեքին հետևին:

Իսկ եթէ ոք յորմէ՝ յետ ստեղծանելոյ մարմնոյն՝ արկանիլ զանձն [4], համարեսցի յետ մարմնոյ լինել զնա՝ մեղանչէ ճշմարտութեան. քանզի և ոչ Մովսէս յայնժամ ստացեալ ասէ զնա, յորժամ 'ի մարմինն արկանիւր, և ոչ ըստ բանի՝ այսպէս ունի: Արդ՝ կամ մահկանացու ասասցէ զնա (Եւնոմիոս), որպէս Արիստոտելէս ասաց զնա 'ի մարմնի ծնեալ, և որպէս Ստոյիկեանքն, և կամ ասելով էութիւն անմարմին, հրաժարեսցէ զասելն 'ի մարմնի ստացեալ, զի մի մահկանացուի անձին մտածութիւն յանդիման կացուսցէ մեզ և ամենևին անբանի: Իսկ այլազգ, ըստ նմա՝ չև ես է լի աշխարհս, այլ անկատար տակաւին և այժմ, և յաւելուածոյ միշտ կարօտ: Հնգիցս բիւրք մինչև՝ զպակասն ասացից՝ հանապազօր էութիւնք իմացականք առլինին նմա. և որ դժնդակագոյնն է՝ յորժամ կատարելագործիցի՝ յայնժամ լուծցի, ըստ նմա, վերջնոց մարդկան՝ որք մերձ առ յարութիւն՝ զանձնականն թիւ լցեալ: Եւ զինչ

զմարմնաւորութիւն բանին. այլ հերքեցաւ 'ի մեծէն Բարսղէ Կեսարացւոյ, 'ի Գրիգորէ Նազիանզացւոյ և 'ի Նիւսացւոյն:

1 Յոյն բնագիրն ասէ, ἐκ τοῦ Πλάτωνος εἴληφε, այս է. Ի Պղատոնէ էառ:

2 Այս է, թէպէտ և սրամիտ ոմն էր:

3 Յոյնն εἰκάζοντες, կարծեօք իմն:

4 Այսինքն է. իսկ եթէ ոք յայնմանէ՝ զի յետ ստեղծեալ գոլոյ մարմնոյն՝ հոգին 'ի ներքս գնի, ընծայութիւն յառաջ բերել կամիցի՝ հետևորդ լինելութեան անձին քան զմարմնոյն, հակառակի ճշմարտութեան:

արդեօք քան զայս լինիցի անբանագոյն, յայնժամ ասել ապականել զաշխարհս՝ յորժամ լցցի. քանզի ամենեւին մանկանց աղայոց է յեղանակս այս և աւագահիմներն խրատու, անդէն յետ ընլոյն՝ չփոխել եղելոյն: Քանզի ասելն նախախնամութեան բանիւ լինել այժմ զանձինս և ոչ ստանալոյ, քանզի ոչ նոր էութիւն, և ոչ այլ քան զոր են՝ 'ի ներքս մուծանել, այլ զէն ըստ նախախնամութեան՝ բազմացուցանել, ոչ գիտողաց է զտարբերութիւն ստացուածոյ[1] և նախախնամութեան: Քանզի նախախնամութեան գործ է 'ի միմեանց ծննդդենէ ամբողջ պահելն զապականացուացս կենդանեաց էութիւն. և ասեմ զոչ ըստ փտութեան եղելոցն, վասն զի զնոցայն փոխանորդութիւն՝ դարձեալ այլ փտութիւն պահէ. իսկ ստացուածոյ՝ զօրաւոր գործ է՝ յոչէից առնելն: Արդ՝ եթէ 'ի միմեանց ծննդենէ լինին անձինք, նախախնամութեան բանիւ լինին, և ապականացուք են, որպէս և այլքն 'ի փոխանորդութենէ եղեալքն: Իսկ եթէ յոչէից յառաջ գան՝ ստացուած է եղեալն, և ոչ է ճշմարիտ Մովսէս ինքն (յասելն). Հանգեաւ Աստուած յամենայն գործոց իւրոց: Անտեղիք են երկոքին. ոչ ուրեմն այժմ լինին անձինք. քանզի Հայր իմ մինչև ցայժմ գործէն՝ ոչ զստանալոյն, այլ զնախախնամելոյն ասել կամ եղև նմա (Եւնոմեայ):

Իսկ Ապողինարի թուեցաւ ասել զանձինս յանձանց ծնանել, որպէս 'ի մարմնոյ զմարմինս. քանզի յառաջ գալ անձին ըստ փոխանորդութեան առաջնոյ մարդոյն, յորս 'ի նմանէն յամենեսին՝ որպէս զմարմնական փոխանորդութիւն. քանզի ոչ համբարեալ կալ զանձինս, և ոչ այժմ ստանալ[2]. զի (ըստ Ապողինարի) որք զայսն ասեն՝ գործակից առնեն զԱստուած շնացողաց, զի և 'ի սոցանէն մանկունս ծնանին. սուտ գոլ և զՀանգեաւն Աստուած յամենայն գործոց իւրոց՝ զոր սկսաւ առնել, եթէ տակաւին և այժմ անձինս արարչագործէ: Այլ թէ ամենայն որք ըստ փոխանորդութեան 'ի միմեանց

1 Ստացեալ, ստացուած, ստացումն, կամ ստեղծեալ, ստեղծուած, ստեղծումն:

2 Այս է՝ որպէս ասացաք 'ի վերոյ ստեղծանել:

ծնեալք են՝ ցուցանէին մահկանացուք. քանզի վասն այնորիկ և ծնանին և ծնեալ լինին՝ զի մահկանացուացս տևեսցէ ազգ։ Հարկ է գոլ և սմա (Ապողինարի) մահկանացու ասել զանձն՝ 'ի միմեանց ծննդենէ զեղեալն և կամ ոչ 'ի փոխանորդութենէ միմեանց ծնանիլ անձանց. քանզի 'ի շնութենէ զծնեալսն՝ Նախախնամութեան բանի թողցուք՝ անգիտելոյ առ 'ի մէնջ։ իսկ թէ պարտ ինչ է և Նախախնամութեան 'ի վերայ հայել՝ ամենայն իրօք յայսմ և 'ի շնութիւն ծնեալն՝ կենցաղոյս և կամ ինքեան պիտանի եղեալ. և վասն այնորիկ՝ տայ թոյլ անձնաւորութեան լինել. և բաւական օրինակ առնումք այսորիկ՝ 'ի կնոջէն Ուրիայ և 'ի Դաւթէ ըզծնեալն Սողոմոն։

Զկնի սորին տեսցուք և զկարծիս Մանիքեցւոցն՝ զոր ունէին յաղագս անձին. քանզի ասեն զնա անմահ և անմարմին, բայց մի միայն գոլ ասեն զամենեցունց զանձն կտտորտեալ և տրամատեալ յիւրաքանչիւրսն մարմինսն, յանշունչս և շնչաւորս. զոմանս առաւելագունի հաղորդ լինել և զոմանս փոքու. առաւելագունի՝ շնչաւորացն, իսկ փոքու՝ անշնչիցն. իսկ ևս առաւելագունի՝ երկնաւորացն. որպէս զի բոլորին անձին՝ մասունս լինել զիւրաքանչիւրոցն անձինս։

Եւ եթէ անբաժանաբար բաժանեալ ասէին զայս, որպէս ձայն 'ի լսողս, չափաւոր արդեօք էր չարն. բայց այժմ զնոյն էութիւն անձին՝ բաժանիլ ասեն, որ և քան զամենայն չարագոյն է, զի տիրապէս 'ի տարերս գոլ զնա կամին, և բաժանակից լինել նոցա 'ի մարմնոյ եղելութեանց, և դարձեալ 'ի նոյն դառնալ 'ի լուծանել մարմնոյ, որպէս զջուր բաժանեալ և դարձեալ ժողովեալ և խառնեալ. և զմաքուրսն անձինս տարեալ լինել 'ի լոյս՝ լոյս գոլով, իսկ զշաղախեալսն 'ի նիւթոյս՝ տարեալ լինել 'ի տարերս, և դարձեալ 'ի տարերց՝ 'ի տունկս և 'ի կենդանիս։ Եւ այսպէս զէութիւն նորա (անձին) տրամատեալ, մարմնական ցուցեալ, և ընդ ախտիւք արկեալ՝ անմահ գոլ ասեն, և անկանին 'ի հակառակսն։ Քանզի ասելովն՝ դառնալ շաղախեցելոցն անձանց 'ի տարերս, և խառնել ընդ միմեանս. դարձեալ զնոսա 'ի մարմնափոխութիւնս ասեն պատժիլ՝ ըստ ծանրու-

թեան մեղացն, միաւորեալ զնոսա և դարձեալ որոշեալ ըստ անձնաւորութեան։ Քանզի զստուերս 'ի լուսոյ որոշել, իսկ 'ի լինել ամպոյ՝ միաւորիլ, որ անկար է 'ի վերայ իմացականի բնութեան լինել. քանզի ըստուերք զգալեաց են, թէ և տացէ ոք նոցա որոշել և դարձեալ միաւորիլ։

Պղատոն՝ և մի գոլ ասէ զանձն և բազումս. մի գոլ զամենեցունց զանձն, գոլ և բազումս՝ զորս ըստ մասին, որպէս զի անձնաւորիլ ամենայնի՝ 'ի յամենեցուն յանձնէն, և իւր դարձեալ՝ որք ըստ մասին՝ իւրաքանչիւր յիւրմէ անձնէն. և ասէ զամենայնին անձն՝ յարձակիլ 'ի բևեռէ երկնից մինչև 'ի ծագս երկրի. ոչ տեղաբար յարձակիլ նմա ասելով, այլ իմացականապէս. և զայս անձն գոլ՝ գալով շուրջ ընդ ամենայն գնդաձևապէս, շարունակելով և շարապնդելով զմարմնատեսակութիւն աշխարհիս։ Քանզի կարօտ գոլ մարմնոյ շարակալուի՝ և յառաջագոյն ցուցաք, և առնէ զայս՝ տեսակարարն անձն։ Քանզի կեալն իւրաքանչիւր ումեք էիցն զիւրն կեանս, և ապականիլ զիւր ապականութիւն. քանզի ցորքան շարակալի և շարապնդի՝ մարմին գոլ ասի, իսկ 'ի բաց լուծեալ՝ ապականել. և կեալն ամենայնի, բայց ոչ գոլ ամենայնի կենդանիս. քանզի տարորոշին յանշնչիցն տունկք աճմամբ և սննդեամբ, այսինքն՝ սննդականաւն և տնկականաւն զօրութեամբ. իսկ անբան կենդանիք՝ 'ի տնկոցն՝ զգայութեամբքն. իսկ բանականքն յանբանիցն՝ բանականութեամբն. և այսպէս զամենայն կեալ ասելով՝ տարորոշեն զիւրաքանչիւրն բնութիւն։ Եւ կեալ ասեն և զամենեւին անշունչսն՝ ունակական կենդանութիւն, ըստ որում շարակալեալ լինի յամենեցունց անձնէ՝ 'ի գոլն միայն [1] և ոչ լուծանել։ Այսորիկ անձին՝ գոլ զեկավարիչ ամենայնի և մասնականաց անձանց, յառաջագոյն յարարչագործէն եղելոցն, առաքեալ՝ յայտ է՝ նորին արարչագործին, և օրէնս տըւեալ սմա՝ ըստ որում վարիլն պարտ է, այսմ ամենայնի՝ զօրս և Բախտ և Ճակատագիր կոչեն. և բաշխեալ

1 Իմա 'ի գոլն միաւորեալ 'ի մի։

զօրութիւն բաւական՝ առ 'ի խօսիլ[1] մեզ. առ այս և յորում յաղագս ճակատագրին։

Արդ՝ հասարակաց ամենեքին Յունաց իմաստասէրքն, որք անմահ ասացին զանձն՝ զմարմնափոխութիւն օրինադրեն. բայց տարբերին 'ի տեսակս անձանցն. քանզի ոմանք միատեսակ ասացին՝ զբանականն, զնոյն և 'ի տունկս և յանասունս մարմինս անցանել. իսկ ոմանք՝ ըստ ժամանակաց ինչ իրիք շրջագայութեանն (յանասունս մարմինս անցանել ասացին). իսկ այլք՝ որպէս և դէպ եղև. այլք դարձեալ ոչ միատեսակ անձանց՝ այլ երկուս, բանական և անբան. իսկ ոմանք բազումս, այնքան՝ որքան ինչ կենդանեաց են տեսակք, մանաւանդ որք 'ի Պղատոնէն[2] այսու օրինադրութեամբք բերեալք եղեն. քանզի ասացեալ Պղատոնի՝ սրտմտողացն և բարկացողաց և յափշտակողաց անձանց՝ գայլոց և առիծուց մարմնովք զարդարեալք, իսկ որք 'ի վաւաշոտութիւն են հաստատեալք՝ զիշոցն և զնմանեացն առնուլ մարմինս. ոմանք տիրապէս լուան զգայլսն և զառիւծունս և զէշս, իսկ ոմանք յեղանակաւ ինչ առեալ նմա զայս գիտացին՝ զբարոյսն նոցա անասնոցն նմանեցուցեալ։

Կռինոս՝ յորում Յաղագս վերատին լինելութեան[3] (այսպէս կոչէ զմարմնափոխութիւնսն) բանականս գոլ զամենեսին ասէ։ Նոյնպէս և Թէոդորոս պղատոնական՝ յորում Թէ Ամենայն տեսակ է անձն[4]։ Եւ Պորփիւռիոս[5] նմանապէս։ Բայց Յամղիքոս[6] հակառակ սոցա

1 Օրինակ մի՝ առ 'ի բաշխել մեզ. յոյնն՝ առ 'ի վարել զմեզ։

2 Այս են՝ Պղատոնեանք։

3 Կռոնիոս՝ իմաստասէր երկրորդի դարուն, յիշատակի գովութեամբ առ 'ի Պորփիւրէ և յԵւսեբեայ։ Յիշատակեալն մատեան կոչի առ Յոյնս Μετενσωμάτωσις (Palingénésie).

4 Այսինքն՝ 'ի մատենին իւրում, յորում զամենայն տեսակ ճառեալ ցուցանէ անձն լինել։

5 Պորփիւռ՝ աշակերտ և գրող վարուց Պղատոնի, մաքառեցաւ ընդդէմ քրիստոնէութեան, թէպէտ և աւանդի՝ 'ի վերջոյ ուրեմն ընկալեալ զկրօնս Ճշմարտութեան։ Մեռաւ յամին երեքհարիւր և չորս։

6 Յամղիքոս (Iamblichus) աշակերտ Պորփիւռի, 'ի չորրորդում դարու, որ ընդ իմաստասիրութեան և զմոգութեան կամ զդիւթութեանց վարէր գործ. յորմէ և Աստուածային ընկալաւ կոչումն, իբրև հրաշից արարող ստեղծաբանեալ. ոյր վասն և մեծ մտերմութիւն և յարգանս ցուցանէր նմա Ուրացողն Յուլիանոս։

ընթանալով ըստ տեսակի կենդանեաց՝ անձին տեսակ գոլ ասէ. այսինքն՝ տեսակք տարբերք: Եւ է գրեալ նորա դիրս մի, եթէ ոչ 'ի մարդկանէ յանբան կենդանիս, և ոչ յանբանից կենդանեաց 'ի մարդիկ լինին մարմնափոխութիւնք, բայց յանասնոց յանասունս և 'ի մարդկանէ 'ի մարդիկ: Եւ որպէս ինձ թուի՝ սակս այսորիկ սա յաւէտ բարիոք հանդիպեցաւ՝ ոչ միայն Պղատոնի կամացն, այլ և նորին ճշմարտութեան, որպէս է՝ որ և յայլոց բազմաց ցուցանել, մանաւանդ յայսմանէ՝ քանզի և ոչ մի 'ի բանականացն շարժութեանց երևի յանբան կենդանիսն, զի ոչ արուեստ և ոչ ուսմունք և ոչ խորհուրդք և ոչ առաքինութիւնք և ոչ այլ ինչ յիմացողականացն է 'ի նոսա. յորոց յայտ է՝ թէ ոչ փոխեցաւ 'ի բանականէն անձնէն 'ի նոսա. զի և անտեղի է իսկ ասել զանբանսն 'ի բանականսն փոխարկել: Քանզի թէ և յոյժ մատաղն գոլ տղայոցն՝ անբան միայն շարժութիւն առնէ նոցա, այլ անձն բանական ասեմք ունել նոցա, վասն զի և յաճելն զբանականն ցուցանեն ներգործութիւնս. իսկ անբանն՝ և ոչ ըստ միոյ հասակի ցուցանելով զբանականն, աւելորդ արդեօք ունէր զբանական անձն, ոչ ամենևին զհանդերձեալն՝ լինել բանականին զօրութեան. քանզի ոչ աւելորդ ինչ առ 'ի յԱստուծոյ լինել՝ խոստովանեալ լինի համաձայնապէս առ 'ի յամենեցունց. և եթէ այս, աւելորդ էր բանականն արկանել անձն յանասունսն և 'ի գազանսն, որ ոչն էր երբեք կարող ցուցանել զիւր գործն. և էր արդեօք մեղադրել տուողին՝ անպատշաճ անձն մարմնոյն. քանզի և ոչ արուեստաւորի իսկ գործ է, և ոչ կարգ և յօդուածս գիտողի:

Իսկ եթէ ոք ասիցէ՝ շարժիլ ըստ տրամադրութեան բանականապէս՝ կենդանեացն, բայց ստեղծուածն նոցա անընդունակ գոլով արուեստականին գործոյ, հաւատարմացուցանելով զբանն 'ի մարդկանէ: Քանզի 'ի բաց բարձեցելոյն միայն մատանց ձեռացն՝ բազում արուեստս կորուսանէ, ոչ լուծանէ զխնդրելին. քանզի մնայ տակաւին նոյն անտեղի՝ որպէս ոչ Աստուծոյ պատշաճ անձն յօդեալ մարմնոյ, այլ աւելորդ և անօգուտ և անգործ, խափանեալ 'ի ձեռն ամենայն հասակի իւ-

րեանց 'ի յիւր ներգործութեանցն ։ Իսկ և առ զբանն նոցա կազմելոյն 'ի յանյայտից և ոչ 'ի խոստովանելոց, ուստի է ըստ տրամադրութեան բանականապէս շարժիլ կենդանեացն ։

Լաւ համարելի է պատշաճ իւրաքանչիւր մարմնոյն անձըն յօդիլ, և ոչ ինչ առաւել ունել ըստ տրամադրութեան կենդանեաց՝ յերևեցելոյն նոցա գործոց՝ բնաւորականին պարզութեան. քանզի իւրաքանչիւր տեսակ անասնոցն ըստ իւրում յարձակմանն շարժի, առ որ պէտս և ներգործութիւն եղև 'ի սկզբանէ, և առ այսոքիկ և՛ զատեղծուածնպատշաճ ունին ։ Սակայն ոչ առանց օգնականութեան զամենայն ամենևին զնոսա թողեալ արարչագործն, այլ իւրաքանչիւր ումեք՝ բնաւորական և ոչ բանական տնկեաց հանճար. յոմանս և խորամանկութիւնս եդ, որպէս պատկեր արուեստի և ստուերս բանական տըուեալ նոցա՝ յառընթեր դաւաճանութեանց խոյս տալ, և յապառնեացն պահել զինքեանս, և հպեցուցանել զարարածս ամենայն յինքեանս, որպէս և ասացաւ իսկ[1]։

Իսկ վասն զի ոչ բաւականապէս առնէ զայս, յայտ է՝ յորմէ իւրաքանչիւր տեսակ կենդանւոյն նմանապէս զնոյն առնէ, ոչ փոփոխեալ 'ի բազմութեան զներգործութիւնսն, բայց միայն ըստ առաւելութեան և նուազութեան, սակայն ըստ միոյ արձակմանն շարժի բոլորն տեսակ. զի ամենայն նապաստակ նմանապէս հընարիմաց է, և ամենայն գայլ նմանապէս խորամանկ, և ամենայն կապիկ նմանապէս առնէ զոր ինչ տեսանէ. որ 'ի վերայ մարդոյ ոչ է այս, քանզի բիւր են ճանապարհք գործոյ մարդկան, զի ազատ իմն և անձնիշխան է բանականն. ուստի և ոչ մի և նոյն գործ է ամենայն մարդկան, որպէս իւրաքանչիւր տեսակի անբանիցն կենդանեաց. քանզի բնութեամբ միայն սոքա շարժին, և բնութեամբքն նմանապէս առ ամենեսեան. իսկ բանականն գործք՝ այլք առ այլս, և ոչ 'ի հարկէ են նոյնք առ ամենեսին ։

Իսկ եթէ ասիցեն՝ թէ 'ի պատիժ յառաջագոյն մե-

1 Լծմն. Հպեցոյց զարարածս յիրար. որպէս և ասաց թէ զքարինսն 'ի խեցեկողսն, և զնոսա 'ի շնչաւոր, և զնոսա 'ի մարդիկն, և զնոսա 'ի հրեշտակսն ։

ղուցելոյ անձին 'ի մարդկայնումն կենցաղի՝ յայնպիսի մարմինս առաքիլ, (է) 'ի վերջնոյն առնել զցուցումն[1]։ վասն Էր յառաջագոյնսն եղեալս մարմինս անբանիցն՝ արկեալ եղեն բանական անձինք. քանզի ոչ ուրեք որպէս 'ի մարմինս մարդկայինս մեղուցեալք՝ նախ քան զլինելն մարմին մարդկային։

Նմանեաց այսուիկ կարծեօք [2] գնել և Գաղինոս՝ ըսքանչելին բժիշկ. և իւրաքանչիւր տեսակի կենդանւոյ տարբերութեան գոլ ասել և անձին տեսակ. քանզի ասէ անդէն յիսկզբան առաջնոյն գրոցն՝ որ Յաղագս պիտոյից մասնկանց իրողութեան՝ այսպէս. Եւ յայս բազում եղիցին կենդանեացն մասնկունքն, է ինչ՝ որ մեծամեծք, և է ինչ՝ որ փոքունք, բայց ամենայն յամենայն յայլս տեսակ անհատք [3], և պէտք են սոցա ամենայնի՝ անձին։ Քանզի մարմին գործարան է անձին, և վասն այսորիկ բազում տարբերին 'ի միմեանց մասնկունք կենդանեացն, վասն զի և անձինք (տարբերին)։ Դարձեալ յառաջ երթալով 'ի նոյն գիրս՝ յաւելու 'ի վերայ կապկի և զայս. Որ և, ով իմաստունդ ստորոգիչ, ասիցէր արդեօք բնութիւն ցքեզ, ծիծաղելոյ անձին կենդանւոյ՝ ծիծաղելի պիտոյ է տալ և զմարմնոյն կազմութիւն։ Այսպէս գիտէ պէսպէս մարմնոյ՝ ըստ տեսակին պէսպէս 'ի ներքս գոլ անձինս։ — Եւ այսքան յաղագս այսոցիկ։

Իսկ եթէ ցուցաք զանձն ոչ մարմին գոլ, և ոչ յօդումն և խառնուած, և ոչ այլ ինչ որակութիւն, յայտ է յայսցանէ թէ էութիւն անմարմին է անձն, և զի է խոստո-

1 Այն է՝ յառի շրջանաւ առնել է զցուցումն։

2 Այս է՝ կարծեօքն Ճշմարտութեան, զոր մեք ունիմք։

3 Այսպէս յունարանութեամբ մթին՝ յամենայն օրինակս մեր։ Յոյնն ունի, καὶ ε' τοῦτο, πολλὰ τῶν ζώων ἔσται μόρια, τὰ μὲν μείζω, τὰ δέ ἐλάττω, τὰ δὲ παντάπασιν εἰς ε'τερον εἶδος ἄτμητα· χρεία δὲ πάντων αὐτῶν ἐστι τῇ ψυχῇ. այսինքն է. Այսմ այսպէս գոլով՝ զանազան եղիցին կենդանեաց անդամք, ոմանք մեծագոյնք և այլ փոքունք, իսկ մէն միում ամենեցուն՝ տեսակ անհատական. և հոգի պէտս ունի այսոցիկ ամենեցուն։— Լծմն. Եւ գտանես՝ որ բոլոր կենդանիքս անման են միմեանց՝ մեծութեամբ և փոքրկութեամբ. բայց ամենայն յամենեսին կայ միապէս, յայլ և այլ տեսակ, որ է անհատքն. այն զոր Արիստոտէլ ենթակայ և նիւթ կոչէ. զի այն յամենայնն միապէս կայ, իսկ մասնկունք տեսակին՝ այլ և այլ։

վանելի ամենեցունց։ իսկ եթէ ոչ մարմին է և ոչ պատահումն, յայտ է թէ անմարմին էութիւն է, և ոչ ինչ յայլում ունողացն զգոլն. քանզի այսոքիկ և՛ լինին և՛ բացալինին առանց ենթակային ապականութեան. բայց անձին 'ի բաց որոշեցելոյ՝ մարմինն ամենայն իրօք ապականի։

Դարձեալ նոքումք վարելով է ցուցանել զանձն անմահ գոլ. քանզի թէ ոչ մարմին՝ որ և բնութեամբ լուծանող ցուցաւ և ապականացու, և ոչ որակութիւն և ոչ որակ և ոչ քանակ և ոչ այլ ինչ յապականացուացս, յայտ է թէ անմահ է։ Արդ բազում են անմահութեան նորա ցուցմունք առ 'ի Պղատոնէ և յայլոց, այլ այնք պատիպատոք և դժուարիմացք և հազիւ գիտելիք նոցա՝ որ յայնքս են անեալք մակացութիւնսն։ Բայց մեզ բաւական է առ'ի ցուցումն անմահութեան նորա՝ աստուածայնոց ասացելոց վարդապետութիւնք՝ հաւատարմութիւն յինքենէ ունելով՝ վասն աստուածաշունչ գոլոյն։ իսկ որք ոչն ընդունին զգիրս քրիստոնէից, բաւական է նոցա ցուցանելն զոչ ինչ գոլն նմա (անձին) յապականացուացս. քանզի թէ ոչ ինչ է յապականացուացս՝ անապական է և անմահ. և զայս բաւական համարեալ՝ թողցուք։

## ԳԼՈՒԽ ԵՐՐՈՐԴ

*Յաղագս միաւորութեան հոգւոյ * և մարմնոյ։*

Խնդրելի է թէ զիարդ լինի միաւորութիւն անձին և մարմնոյ, քանզի տարակուսելի է իրդ։ իսկ թէ ոչ միայն յայսցանէ [1], այլ և 'ի մտաց հաստատեցաւ մարդ որպէս ասացին ոմանք, ևս առաւել է տարակուսելի։

* Ի խորագրին և եթ հոգւոյ փոխանակ անձին եդեալ կայ յամենայն ձեռագիրս։ — Ծանուցանեմք զի առ 'ի խորագիրն նախընթաց Գլխոյն դրոշմեալ կայ 'ի ձեռագիրս Յաղագս անձին է բան, այսինքն է հոգւոյ մարդոյ, մոռացեալ 'ի սեփական տեղւոջ իւրում կարգիլ 'ի տպագրութեանս։

1 Իմա, իսկ եթէ ոչ միայն յանձնէ և 'ի մարմնոյ ասիցի գոլ մարդոյ, այլ և 'ի մտաց՝ իբրև յերրորդ իմն բաղկացուցչէ, ըստ ասելոյ ոմանց, յայնժամ առաւել ևս աճեն դժուարութիւնքն։

Քանզի ամենայն որ ժողովի 'ի միոյ էութեան գոյացութիւն՝ ամենայն իրօք միաւորի. և միաւորեալքն այլայլին, և ոչ միայն որ ինչ յառաջագոյնն էին, (որպէս և 'ի վերայ տարերցս ցուցցի [1]), քանզի միաւորեալք՝ այլ ինչ եղեն։ Արդ, զիարդ կայ՝ մարմին միաւորեալ ընդ անձին՝ տակաւին միայ մարմին. և կամ դարձեալ անձըն՝ անմարմին գոլով և էապէս ըստ ինքեան, զիարդ միաւորի ընդ մարմնոյ և մասն լինի կենդանւոյն, ամբողջ պահելով զիւրն էութիւն անշփոթ և անապական։ Քանզի հարկ է կամ միաւորիլ անձինն և մարմնոյ, և 'ի միասին այլայլիլ և ապականիլ երկոցունց, որպէս տարերքս, և կամ՝ ոչ միաւորիլ ըստ նախաճառեցելոյս անտեղութեանցս, այլ առընթեր կալ, որպէս զպարաւորս 'ի պարու կամ զթիւ առ թիւ, կամ խառնակիլ որպէս գինի և ջուր։ Այլ վասն զի ոչ կարէ առընթեր կալ անձն մարմնոյ՝ ցուցաւ յորում Յաղագս անձին. քանզի լինէր արդեօք միայն այն կողմն մարմնոյն անձնաւոր՝ հպեալ մասն յանձն. իսկ որ ոչն էր ընդ նմա՝ անանձն էր. առ ոչ կարել մի գոլ զըստ առընթեր դըրութեանցն [2], որպէս զերկաթ 'ի փայտ պատկանեալ կամ զայսպիսիս. և 'ի խառնումն գինւոյ և ջրոյ՝ երկոքինն ապականին, քանզի ոչ ջուր մաքուր է խառնեալն, և ոչ գինի. որ և այսպիսւոյս խառնըման ըստ յարադրութեան եղելոյ՝ զանխլացեալ զզայութեանն՝ վասն նրբամասնութեան խառնեցելոցն, յայտ է դարձեալ 'ի միմեանց կա՛ր գոլոյն զատիլ. սպունգ 'ի ձէթ թացեալ՝ յինքն ժողովէ զմաքուր զջուրսն և պրտու. բայց ըստ զգայութեանց՝ որոշել զստուգապէս միաւորեալսն ամենայնի անկար է։ Իսկ եթէ ոչ միաւորի, և ոչ առընթեր կայ, և ոչ խառնի, զի՞նչ բանս մի ասելոյս զկենդանիս [3]։

Արդ, Պղատոն վասն այսր տարակուսանաց՝ ոչ ախորժէ յանձնէ և 'ի մարմնոյն գոլ զկենդանին, այլ զանձն

1 Տես 'ի Գլուխն Հինգերորդ։

2 Այսինքն, զի և չէ մարթ միութիւն ասել զիրաց ինչ առընթեր միմեանց կուտակումն, որպէս զփայտի առ երկաթ, և այլն։

3 Այս է, որպէս ուրեմն մարթ իցէ ասել զմի միայն կազմել կենդանի։

մարմնով վարեալ և որպէս զգեցեալ զմարմինն ։ Բայց ունի և բանս՝ տարակուսանս ինչ. քանզի զիա՞րդ կարէ մի գոլ անձն ընդ զգեստին. զի ոչ է մի՝ պատմուճան ընդ զգեցողին ։ Իսկ Ամոնիոս վարդապետն Պղոտինոսի[1] զխնդրելիս՝ այսու յեղանակաւ լուծանէ. ասէ՝ զիմացականսն այսպիսիս ունել բնութիւն, որպէս զի և միաւորել՝ ընդ կարողսն ընդունել զնա, որպէս 'ի միասին զապականեալսն[2], և միաւորեալս՝ մնալ անշփոթս և անապականս՝ որպէս զառընթերակայսն ։ Քանզի 'ի վերայ մարմնոյ՝ միաւորութիւն այլայլումն գործէ՝ որոց ընդնմայն են ամենայն իրք, վասն զի յայլ մարմին փոխարկին, որպէս տարերքս 'ի խառնուածս և կերակուրք յարիւն, իսկ արիւն 'ի մարմին և յայլս մասունս մարմնոյն ։ Իսկ 'ի վերայ իմացականացն՝ միաւորութիւն լինի, բայց այլայլումն ոչ հետևի. ոչ բնաւորեցաւ իմացականն ըստ էութեանն՝ այլայլել, այլ կամ յափշութեան լինի և կամ յոչնչոյ ապականի, բայց փոխադրութիւն ոչ ընդունի. այլ և ոչ յոչնչոյ ապականի, քանզի ոչ արդեօք էր անմահ ։ Եւ անձն կենաց, եթէ 'ի խառնելն փոխարկիւր, քանզի եթէ այլայլէր արդեօք՝ և ոչ ևս լինէր կեանք[3]. և զի՞նչ նպաստ լինէր մարմնոյն՝ եթէ ոչ շնորհէր նմա զկեալն. ոչ ուրեմն այլայլի անձն 'ի միաւորելն ։

Արդ, ցուցելոյ այսորիկ՝ եթէ իմացականքն անայլայլելիք են ըստ էութեանն, հարկաւորապէս հետևեսցի և 'ի միաւորելն՝ ոչ ընդ նմին ապականել ընդ որոց միաւորի ։ Եւ միաւորի այժմ և անշփոթաբար միաւորի ընդ մարմնի անձն ։ Եւ արդ, զի միաւորի՝ ախտակցութիւն ցուցանէ. քանզի ախտակից է բոլորն կենդանի ինքեան, որպէս մի գոլ ։ Իսկ զի անշփոթ մնայ, յայտ է՝ յորմէ անձինն յեղանակաւ իւիք զատուցելոյ 'ի մարմնոյն[4] 'ի ննջե-

1 Յօրինակն Պղատոնի. ուղղեցաւ ըստ յունին ։

2 Իմա՛ ըստ յունին՝ որպէս 'ի միասին զապականելիս ։

3 Այսպէս խառնակ յամենայն օրինակս մեր. Յոյն բնագիրն ունի Καὶ ἡ ψυχὴ ζωὴ οὖσα, εἰ ἐν τῇ κράσει μετεβάλλετο, ἠλλοιώθη ἂν καὶ οὐκ ἔτι ἦν ζωή· այսինքն է. Եւ անձն՝ կեանք գոլով. եթէ 'ի խառնելման անդ փոխարկէր, այլայլէր և ոչ ևս կեանք լինէր ։

4 Այս է, յայտ յայնմանէ է՝ զի անձն եղանակաւ իւիք զատանի 'ի մարմնոյն 'ի ննջելն, և այլն ։

լըն, որպէս մեռեալ, թաղեալ, բայց միայն 'ի տուր և առ շնչոյն կենդանեացն, զի մի իսպառ կորիցէ: ինքն ըստ ինքեան 'ի յանուրջսն ներգործէ, նկատելով զպատա-նիսն և յիմացականսն հպելով: Նոյն պատահի և յոր-ժամ ըստ ինքեան հայեսցի ինչ յէիցս, քանզի և յայն-ժամ՝ որչափ կարողութիւն է՝ զատի 'ի մարմնոյն և յին-քեան լինի, զի այսպէս մխիցէ զինքն յէսս, քանզի անմարմին գոլով բոլորովին տարեալ եղև որպէս զա-պականակիցս, մնալով անապական և անչփոթ, և զըստ ինքեանն ամբողջ պահեալ, և յորս լինին՝ դարձու-ցեալ զնոսա յիւր կեանս, և ոչ փոխեալ 'ի նոցայն [1]: Քանզի որպէս արեգակն մերձաւորութեամբ զօդս 'ի լոյս փոխարկէ՝ առնելով զսա լուսատեսակ, և միաւորէ ընդ օդոյս զլոյսն՝ անչփոթաբար համանգամայն ընդ-սմա հեղեալ, ըստ նորին յեղանակի և անձն միաւո-րեալ ընդ մարմնոյ՝ մնայ ամենայն իրօք անչփոթ, ըստ այսր միայն փոխեալ՝ զի արեգակն մարմին գոլով և ընդ տեղեաւ պարագրեալ, ոչ է ամենայն ուրեք՝ ուրանօր և լոյսն նորա, որպէս և ոչ հուր, քանզի մնայ և 'ի փայտ կամ 'ի ճրագի՝ կապեալ որպէս 'ի տեղւոջ. իսկ անձն՝ անմարմին գոլով և ոչ պարագրեալ ընդ տեղեաւ, յա-մենայնս տարեալ լինի, և 'ի լոյս և 'ի մարմինն. և ոչ է մասն լուսաւորեալ 'ի նմանէ, յորում ոչ բոլորն մերձ է, քանզի ոչ լինի կալեալ 'ի մարմնոյ, այլ ինքն ունի զմարմինս. և ոչ 'ի մարմնի՝ է որպէս յամանի ինչ և կամ 'ի տիկ, այլ յաւէտ մարմինն 'ի նմա: Քանզի ոչ արգելեալք 'ի մարմնոց իմացականքն՝ ընդ ամենայն մարմինն տարեալք, ոչ է կար նոցա 'ի մարմնականէ ըմ-բռնիլ. իմացականք գոլով յիմացական տեղիս են. զի կամ յինքեանս կամ 'ի գերակայսն՝ իմացականք գոլով՝ յիմացականս [2]. որպէս անձն երբեմն յինքեան է՝ յոր-ժամ խորհի, և երբեմն 'ի միտսն՝ յորժամ իմանայ: Արդ՝

1 Մթին են բանքդ, որովք կամի ասել զի անձին կամ հոգւոյ ան-մարմին գոլով՝ թափ ընդ ամենայն ուրեք անցանէ, ըստ օրինակի իրաց՝ որք 'ի միասին ապականացուք են, այլ ինքն անապական մնայ և անչփոթ, և ընդ որ ինչ և թափ անցանիցէ՝ պահէ զինքնութիւնն, ոչ ինքն 'ի կեանս նոցին շրջի, այլ զնոսա յիւր կեանս դարձուցանէ:

2 Ἢ γὰρ ἐν ἑαυτοῖς ἢ τοῖς ὑπερχειμένοις νοητοῖς.

յորժամ 'ի մարմնի ասի գոլ, ոչ որպէս 'ի տեղւոջ 'ի մարմնին ասի գոլ, այլ որպէս կալմամբ և առընթեր գոլ, որպէս ասի և Աստուած 'ի մեզ: Քանզի կալմամբ և առ 'ի չշեղելով և տրամադրութեամբ կապիլ ասեմք 'ի մարմնոյ զանձն, որպէս և տռփեցելումն կապիլ ասեմք զտռփողըն, ոչ մարմնապէս և ոչ տեղաբար, այլ ըստ կալման. քանզի առանց մեծութեան գոլով և առանց թանձրութեան և անմասնութեան. քանզի ըստ մասին և զտեղական պարագրութիւն[1] վեհագոյն է, քանզի որ ոչն ունի մասն՝ ընդ որում տեղեաւ կարէ պարագրիլ. զի ընդ թանձրութեան տեղի ենթակայի[2], քանզի տեղի՝ բովանդակութիւն է պարագրողին, ըստ որում պարագրէ ըզպարագրեալն: իսկ թէ ոք ասիցէ՝ ապա ուրեմն և յԱղեքսանդրիա և 'ի Հռովմ է, և ամենայն ուրեք է իմս անձն, զանխլանայ յինքեան՝ դարձեալ տեղի ասելով, քանզի և յԱղեքսանդրիայն և բնաւին այս ինչ ուրեքն՝ տեղի է. 'ի տեղւոջ ամենևին ոչ է, այլ կալմամբ. քանզի ցուցաւ ոչ կար գոլ ըմբռնիլ ընդ տեղեաւ: Արդ, յորժամ ընդ կալմամբ լինիցի իմացականն՝ տեղւոյ ուրեք կամ իրի, 'ի տեղւոջ գոլով պիտակապէս, անդ ասեմք գոլ նմա՝ վասն ներգործութեան նորա անդ, զտեղին փոխանակ կալման և ներգործութեան առնըլով, քանզի պարտ է ասել՝ անդր ներգործէ, ասեմք՝ թէ անդ է:

Քանզի պատշաճիւր արդեւք այսպէս մաքուր բանս մանաւանդ առ մարդկութիւնս միաւորութեան Աստուածն Բանին. ըստ որում միաւորեալ մնաց անշփոթ և անպարագրելի. ոչ ըստ անձին յեղանակի, քանզի նա 'ի բազմացելոյն գոլով՝ թուի և ախտակից լինել վասն իւրութեանն՝ մարմնոյն. է երբեք զի և ըմբռնել և ըմբռնիլ. իսկ Աստուածն Բան՝ ոչինչ ինքն 'ի կցորդութենէն՝ որ առ մարմին և անձն՝ այլայլեալ, և ոչ ընդունակ եղեալ նոցա տկարութեան, այլ հաղորդեցուցեալ ըզնոսա իւրոյ աստուածութեան՝ լինի նոքօք մի, մնացեալ

1 Այս է. Քանզի առանց մեծութեան գոլով և թանձրութեան և անմասնութեան, և ոչ 'ի տեղւոջէ իմեքէ սահմանիլ կամ պարագրիլ կարէ:

2 Ὄγκῳ γὰρ τόπος συνυφίσταται, այս է՝ քանզի ընդ թանձրութեան գոյակից է տեղի:

մի՝ որ ինչ էր և Նախ քան զմիաւորիլն։ Նոր իմն է յեղանակս այս խառնման և միաւորութեան. և՛ խառնի և՛ մնայ, յամենայնի ամենայնիւ անխառն և անշփոթ, և անապական և անփոխադրելի. ոչ ախտակից եղեալ, այլ գործակից միայն. ոչ ապականակից և այլայլակից, այլ 'ի միասին աճեցեալ նոցա, նա ոչ նուազեալ 'ի նոցանէ, առ 'ի մնալոյ անփոփոխելի և անշփոթելի. վասն զի և մաքրապէս ամենայն այլայլութեան անընդունակ է։

Վկայ այսոցիկ և Պորփիւռիոս, հակառակ Քրիստոսի շարժեալ զլեզուն լեզու. զի հզօր են թշնամեացն վասն մեր վկայութիւնք, և ոչ մի ընդդիմաբանութիւն ընդունելով։ Այս Պորփիւռիոս՝ յերկրորդ բանից շարախառնիցն խնդրելեացն՝[1] գրէ այսպէս. Ոչ է ասել եթէ անհնարին է՝ էութեան իրիք առեալ լինել 'ի լրումն այլ էութեան, և լինել մասն էութեան, մնալով ըստ իւրոյն բնութեան մի, յետ ընլոյն զմիւսն էութիւն. ընդ այլում լինելով, և զիւր ամբողջ պահելով. և որ մեծագոյնն է՝ իւր ոչ փոփոխեալ[2], այլ փոփոխեալ զնոսա՝ յորս լինիցին՝ յիւր ներգործութիւն մերձաւորութեամբն։ Եւ ասէ զայս յաղագս միաւորութեան անձին և մարմնոյ։ իսկ եթէ 'ի վերայ անձին ճշմարիտ է բանս վասն անմարմնութեանն՝ որչափ ևս առաւել 'ի վերայ Բանին Աստուծոյ, յաւէտ անբաղդատաբար և ըստ ճշմարտութեան անմարմնոյն. որ հակառակ խնու զբերանս ձեռնարկողացն՝ բամբասել զԱստուծոյ Բանին միաւորութիւնն առ մարդկութիւնն. քանզի այս հեթանոսացն է, որք բազմածիծաղելիս առնեն, ասելով թէ անկար է և անվայելուչ և անհաւանելի և անիմաստ՝ լինել ընդմահկանացուի բնութեան աստուածայնոյն ընդխառնման և միաւորութեան։ Այլ մեք բարեփորձ վկայիւքն նոցա վարեալք՝ 'ի բաց մերկանամք զպատճառն։

Զի ասի առ 'ի յոմանց, և միանաւանդ յեւնոմիոսացն, միաւորեալ Բանին Աստուծոյ ընդ մարմնոյն՝ ոչ ըստ էու-

1 'Εν τῷ δευτέρῳ λόγῳ (τῷ περὶ) τῶν συμμίκτων ζητημάτων γράφει κατὰ λέξιν οὕτως.

2 Յօրինակս մեր. Եւ զմեծագունութիւնն իւր ոչ փոփոխեալ. ուղղեցաւ ըստ յունին։

թեան, այլ ըստ իւրաքանչիւր զօրութեանն. քանզի ոչ զէութիւնս խառնեալս կամ միաւորեալս (ասեն), այլ ըզ-զօրութիւնս մարմնոյն ընդ զօրութիւնս աստուածայնոյն խառնեալ: Եւ զօրութիւնս մարմնոյ՝ ամենայն իրք ուրեք զգործարանականն գոլ ասեն՝ ըստ Արիստոտելի՝ զգայութիւնսն. արդ՝ ընդ այսոսիկ աստուածային զօրութիւնքն խառնեալք զմիաւորութիւն գործեցին՝ ըստ նոցա: Ոչ ոք արդեւք տացէ նոցա թոյլ, որպէս վարկանիմ, զզգայարանսն մարմնական զօրութիւնս ասելոյ. քանզի որոշի յառաջ կոյս հաւաստեաւ՝[1] թէ զինչ են իրք մարմնոյն, զինչ անձինն, զինչ հանդերձ երկաքանչիւրիւքն. և յիւրսն հանդերձ երկաքանչիւրիւքն[2] զօրս 'ի ձեռն գործարանացն՝ զգայութիւնս եդաք, զնոյնս գործարանս՝ մարմնոյն ասեմք գոլ: Արդ՝ լաւագոյն է, որպէս և յառաջագոյն ասացաւ, ըստ ընդանի բնութեանն անմարմնոյն՝ անշփոթաբար լինել միաւորութեանն. էութեանցն ոչ ինչ վնասեցելոյ աստուածայնոյն՝ 'ի նուաստագունէն, այլ սորա միայն օգտեցելոյ յաստուածայնոյն: վասն զի մաքուր և անմարմին բընութիւնն տարեալ լինի անարգելաբար ընդ ամենայն. իսկ ընդ նա՝ և ոչ ինչ. որպէս տարեալն լինել նորա ընդ ամենայն՝ է միաւորիլ, իսկ ոչ ինչ ընդ նայն՝[3] է մնալ անխառն և անշփոթ:

Արդ, ոչ հաճութեան է յեղանակ միաւորութեանս, որպէս թուեցաւ արանց փառաւորաց, այլ բնութիւնն է պատճառ. քանզի առնուլ մարմին՝ իրաւամբք ոք ասիցէ ըստ հաճութեան լինել, բայց 'ի միաւորելն ոչ շփոթիլ՝ ըստ ընտանի բնութեան Աստուծոյ, և ոչ ըստ հաճութեան լինել. քանզի զաստիճանս անձանց, և զեղ և զէջն, որպէս Իւբիւգինէսն մուծանէ, ոչ հետևեալ աստուածայնոց գրոց և ոչ համաձայնեալ քրիստոնէից օրինագրութեանց, 'ի բաց թողլի է:

1 Այս է, յառաջագոյն 'ի վերոյ ցուցաք հաւաստեաւ:

2 Այսպէս մթին յօրինակս մեր: Յոյնն ունի. Καὶ ἐν τοῖς ἰδίοις τοῦ συναμφοτέρου τὰς δι᾽ ὀργάνων αἰσθήσεις ἐτίθεμεν. այսինքն. Եւ 'ի կարգի պատշաճեցելոցն առ երկաքանչիւրն եւ՝ եդաք զզգայարանս, որք գործարանօքն վարին:

3 Յօրինակս երկուս. իսկ ոչ ինչ ընդ նորայն է:

# ԳԼՈՒԽ ՉՈՐՐՈՐԴ

*Յաղագս մարմնոյ։*

*Ամենայն մարմին չորից տարերցս է խառնուած, և 'ի սոցանէ եղև. իսկ մերձաւորապէս արիւնաւորացն կենդանեացն՝ 'ի չորիցն հիւթոց, յարենէ, 'ի մաղասոյ, 'ի խարտեաշ մաղձոյ և 'ի սևոյ. իսկ անարեանցն՝ յայլոցն հիւթոց և համեմատեցելոցն 'ի նոսա՝ փոխանակ արեանն։ Եւ մերձաւորապէս ասի՝ յորժամ անընդմիջաբար՝ 'ի նոյնն 'ի նոցանէ ինչ լինի. որպէս զի գոլ չորիցն տարերց խառնուած՝ զչորսն հիւթս, իսկ չորիցն հիւթոցն՝ նմանամասունք, որք են մասնըկունք մարմնոյն։ Նմանեցուցանեն երկրի զսեաւ մաղձ, և ջրոյ՝ ըզմաղաս, օդոյ՝ զարիւնն, և հրոյ՝ զխարտեաշն մաղձ. և է որպէս խառնուած տարերցս՝ կամ կարծր կամ խոնաւուտ կամ օդ։*

*Բայց Արիստոտելէս մերձաւորապէս 'ի միայնոյ յարենէ ախորժէ լինել զմարմինս կենդանեացն, քանզի 'ի սմանէ և սնանիլ մերձաւորապէս և աճել ամենայն մասնկանց կենդանւոյն, և սերմանն՝ զծնունդն յարենէ ունել։ Այլ վասն զի 'ի միջէ և 'ի նոյնոյ ոչ թուէր բարւոք ունել զխստագոյնսն ոսկերս և զկակուղն մարմին և զճարպն լինել, հաճոյ թուեցաւ նախ Հիպպոկրատեայ զմարմինս կենդանեացն 'ի չորից հիւթոց մածանիլ մերձաւորապէս, զի 'ի թանձրագունիցն՝ պնդագոյնքն եղիցին, և 'ի փափկագունիցն՝ փափուկքն։ Եւ գտանին յոլովակի չորեքին՝ յարիւն, որպէս է տեսանել 'ի կտրել երակաց, երբեմն 'ի հոսմանն՝ մաղասոյ առաւելութիւն, երբեմն սեաւ մաղձոյ և կամ խարտեշի. ուստի և թուեցաւ արանցն միմեանց համաձայնիլ։*

*Եւ 'ի մասունսն՝ յորս 'ի կենդանիսն՝ է ինչ որ նմանամասն է, և է ինչ որ աննմանամասն։ Եւ նմանամասն՝ որպէս ուղիղ գլխոյ, քունք, ջիլք, ուղիղ, ոսկր, ատամն, օճառք, գեղձք, շաղկապք, պարուտակք, նեարդք, մազ,*

եղընգունք, մարմինք, երակք, շնչերակք, վտառք, ճարպըն, մորթն, և որ ինչ տարբերք են՝ հուպք 'ի նոսա, արիւն մաքուր՝ ըստ որում արիւն է, մաղաս, մաղձ սեաւ և խարտեաշ: Քանզի կարթք շարայարութեամբ են՝ 'ի շաղկապաց և 'ի ջլուտ նեարդաց: Իսկ աննմանամասունք են՝ գլուխ, կուրծք, ոտք, ձեռք, և այլ անդամք մարդոյ: Քանզի ոչ 'ի գլուխ բաժանի գլուխ, որպէս ջիլ 'ի ջիլ, կամ երակ յերակ, կամ մարմին 'ի մարմին, այլ ամենայն աննմանամասն 'ի նմանամասանցն է հաստատեալ. որպէս գլուխ՝ 'ի ջլաց և 'ի մարմնոց և յոսկերաց և յայսպիսեաց. իսկ կոչեն զայս և գործարանականս:

Եւ է առ 'ի նմանամասանցն այս [1]. Որոց մասընկունքըն՝ բոլորին և միմեանց են նման. իսկ զնմանն փոխանակ նոյնոյ պարտ է առնուլ: Բայց ոչ ամենայն կենդանիք զամենայն մասընկունս մարմնոյ ունին. այլ է ինչ՝ զոր ոչն ունին. քանզի ոմանք 'ի նոցանէ առանց ոտից են, որպէս ձկունք և օձք. և ոմանք անգլուխք, որպէս կարկինոսքն և կառաբոյսքն և այլք 'ի լուղակացն. քանզի 'ի լանջսն ունին զզգայարանսն, վասն ոչ ունելոյ նոցա գլուխս: Եւ են ինչ՝ որք 'ի թոքոյ են զրկեալք, որ ոչ տան և առնուն զօդս [2], և են ինչ՝ որոց առաւուշտ ոչ է՝ որպէս հաւուց և ամենայն ինչ որ ոչ միզիցէ: Իսկ 'ի խեցեմորթիցն բազումք են՝ որ անմասն են յանդամոց. քանզի սակաւուք է նոցա գոլն կենդանիս [3]: Եւ թուի ոմանց ունել ինչ՝ իբրև ոչ ունել. որպէս և եղջերուք թուին ոչ ունել զխարտեաշն մաղձ, վասն զի աներևոյթ ունին ցրուեալ զնա ընդ ընդերսն: Բայց մարդ և զամենայն և կատարուն, և որպէս ոչ է հնար այլազգ ունել՝ բարուոք ունի զամենայն: Այսպէս և ըստ դրութեան մասնկանցն՝ բազում տարբերութիւն է կենդանեացն.

1 Յօրինակս երկուս սա: Իսկ յոյնն դնէ. "Ορος δὲ ὁμοιομερῶν οὗτος, այսինքն. Եւ է սահման նմանամասանցն այս ինչ:

2 Թէպէտ և իցեն տեսակք ինչ կենդանեաց, յորս պակասին թոքք, այլ ոչ եթէ այնու վերջացեալք գտանին 'ի տուրևառէ շնչոյ, որ կատարի 'ի նոսա 'ի ձեռն խողովակաց ինչ՝ շնչափող կոչեցելոց. զոր և 'ի բուսականս իսկ է տեսանել:

3 Ἐν ὀλίγοις γὰρ αὐτοῖς τὸ εἶναι ζώοις ὑπάρχει.

քանզի են ինչ՝ որ ունին զստինսն 'ի կուրծսն և որ 'ի փորն, և են ինչ՝ որ ընդ ընդերօքն. և ոմանք երկուս և այլք չորս և այլք բազումս. քանզի գրեթէ չափաւորեաց բնութիւնն ծնեցելոցն թուով զբազմութիւն ստեանցն:

Իսկ եթէ ոք ստուգիւ կամիցի ասել[1] մի ըստ միոջէ յաղագս կենդանեաց՝ զպատմութիւնն Արիստոտելի ընթերցցի: Քանզի գրոցն առաջի կալով ոչ է մեզ ըստուգել զայս, այլ իբրև մակագրութիւնս ինչ և տիպս արտագրել: — Բայց այժմ փոխեսցուք 'ի տարերցս բան ըստ հետևման խնդրելով:

## ԳԼՈՒԽ ՀԻՆԳԵՐՈՐԴ

### Յաղագս Տարերց:

Տարրն աշխարհական՝ է մասն նուաստ՝[2] չարախառնութեան մարմնոց: Եւ են տարերք չորք՝ երկիր, ջուր, օդ, հուր, չարադասեալք ըստ կարգի՝ 'ի ներքնոցն 'ի վեր կոյս, մարմինք գոլով և նոքա, որ և նախկինք և պարզք առ այլսն մարմինս: Քանզի որպէս ամենայն տարր համասեռ է՝ որոց են տարերցն. զի սկիզբն ոչ է համասեռ՝ որոց 'ի նմանէն, բայց տարրն ամենայն իրօք համասեռ[3]. այլ զի երկիր և ջուր և օդ և հուր են տարերք՝ յայտ է, քանզի 'ի սոսա՝ ծայրք որակութիւնքն[4] երևին զօրութեամբ և ներգործութեամբ. սակայն ոչինչ 'ի զգայականացս յայսցանէ՝ 'ի տարերց՝ է անխառն և անհաղորդ յայլ տարերքն. զի գոյացեալ լինին 'ի միմեանց այսք ամենայն, և հաղորդին 'ի միմեանց յաւէտ և նուազ. այլ և 'ի խառնմանն քաջայայտ է բնութիւն նոցա:

1 'Εκλέγειν, իմա քաղել, 'ի միտ առնուլ:

2 Գուցէ նուազ. յոյնն՝ μέρος ἐλάχιστον, մասն դուզնաքեայ կամ թեթևագոյն:

3 Լծմն. Տարերքս 'ի միմեանս միաւորելով՝ մի սեռ լինին. և գոյացուցանեն այլ ևս սեռս. իսկ յորժամ այս սկզբունքս որիշ առանձինն լինին՝ ոչ կարեն լինել սեռք, և կամ զայլս գոյացուցանել. բայց չորքն միացեալ՝ ամենայն իրօք սեռք լինին և առնեն զայլս:

4 Ծայրք որակութիւնք (summae qualitates), այն է՝ կարևորագոյն յատկութիւնք:

Եւ իւրաքանչիւր ոք 'ի տարերցս՝ ըստ լծորդութեան երկուս որակութիւնս ունի՝ զտեսակարարս զնա. քանզի է երկիր՝ չոր և ցուրտ, իսկ ջուր՝ ցուրտ և գէջ, իսկ օդ՝ խոնաւուտ և ջերմ, իսկ ըստ իւրում բնութեան հուր՝ ջերմին և չոր։ Սակայն որակութիւնքն՝ ըստ ինքեանց տարերք գոլ ոչ կարեն, քանզի ոչ յորակութեանց անմարմնոց է կար հաստատիլ մարմնոյ. այլ և ոչ այլքն մարմինքն՝ ոչ ծայր ունելով և զըստ ներգործութեանն որակութիւն՝ կարեն լինել տարերք, քանզի լինէր արգելք անբաւ բազմութիւն տարերց ամենայն էից, որ ըստ յաւէտին և նուազին՝ որակութիւն ստացեալ[2], ոչ կարելով տարորոշիլ թէ որ որոց է տարր։ Արդ, հարկ է գոլ տարերն և՛ մարմին և՛ պարզ մարմին, ըստ ներգործութեանն ունելով ծայրս զորակութիւնսն, զջերմութիւնն ասեմ և զցրտութիւնն, զգիջութիւն և զչորութիւնն։ Քանզի սոքա միայն յորակութեանց զբոլորն բոլորովին փոխադրեն էութիւն, իսկ այլոցն որակութեանց և ոչ մի՝ կարէ առնել զայս. քանզի և ոչ սպիտակ՝ հպելով 'ի մարմինս՝ սպիտակացուցանէ զնա բոլորովին, որպէս ջերմն ջեռուցանէ և ցուրտն ցրտացուցանէ, և յայլոցն և ոչ ինչ։

Քանզի ներհակք են միմեանց տարերքն՝ ըստ երկուց որակութեանցն հակառակք, որպէս ջուր՝ հրոյ, ցուրտ գոլով և գէջ՝ ջերմոյն և չորին, և երկիր՝ օդոյ, ցուրտ գոլով և չոր՝ ջերմոյն և գիջին։ Իսկ վասն զի ներհակքն չարամօտիլ 'ի միմեանս ոչ կարէին՝ ոչ ուրուք 'ի միջի կարգեցելոյ՝ շաղկապողի զնոսա, կարգեաց 'ի միջի Արարչագործն՝ երկրի և օդոյ ներհակացն՝ զջուր, տըւեալ նմա երկուս որակութիւնս, զցրտութիւն և զգիջութիւն, ըստ որոց կարող էր ծայրիցն չարամօտեցելոց՝ շաղկապել զնոսա. քանզի ցրտութեամբն (ջուրն) ընտանակցի երկրի, իսկ գիջութեամբն չարամերձի յօդն։ Դարձեալ, 'ի միջի ջրոյ և հրոյ՝ ներհակաց գոլով և սոցա՝ կարգեաց զօդ, խոնաւուտ որակութեամբն ընտանացեալ ջրոյ, իսկ ջերմութեամբն՝ հրոյ։ Եւ այսպէս զներ-

2 Այսինքն է. Քանզի ամենայն մարմին՝ ընդունակ է որակութեանց, յաւէտ կամ նուազ ստացեալ զնոյնս։

հական հպեցոյց 'ի միմեանս 'ի ձեռն միջնորդից ոմանց՝ շաղկապողաց և զինքեանս և զշաղկապեալսն . քանզի այսպիսի կապ՝ հաճելի է[1] ։ Արդ՝ իւրաքանչիւր ոք 'ի նոցանէ ըստ այլ որակութեան՝ մերձեցաւ առ որ նախ քան զինքն, իսկ միւսովն՝ առ որ ընդ նմայն. որպէս, ջուր ցուրտ է և խոնաւուտ, այլ ըստ ցրտութեանն՝ յերկիր շարամօտի, որով նախ քան զնա ըստ 'ի վեր ճանապարհին[2], իսկ ըստ գիջութեանն՝ յօդաւորս ընդ նմայն. նմանապէս և օդ ըստ գիջութեան՝ շարամօտի 'ի ջուր՝ առ որ նախ քան զնայն, իսկ ըստ ջերմութեան՝ 'ի հուր, ընդ նմա գոլով. և հուր՝ ըստ ջերմութեանն շարամօտի յօդս՝ որ նախ քան զնայն, իսկ ըստ չորութեանն՝ յերկիր ըստ մակբերութեանն և ըստ մակդարձութեանն առ ծայրն[3]. սապէս և երկիր ըստ ցրտութեանն՝ 'ի ջուր, իսկ ըստ չորութեանն՝ 'ի հուր, ըստ մակբերութեան ։

Իսկ զի մի միայն առ որ 'ի վերն և 'ի վայրն իջանելն և ելանելն կալմանն ունիցին տարերքս, այլ և ըստ շուրջանակի, իբրև զի կրկնեաց և դարձոյց զծայրսն առ միմեանսն, զհուր և զերկիր ասեմք. քանզի և հուր 'ի բաց դնելով զջերմութիւնն միայն՝ լինի երկիր. և այս յայտ է 'ի շանդեայն, քանզի 'ի վայր եկեալ հուրն և ցրտացեալ յոյժ եռացմանէն՝ քարանայ. վասն որոյ ամենայն շանթի՝ քարիւ և ծծմբով բերի 'ի վայր. և է ծծումբն որպէս զհուր չորացեալ, ոչ ևս ջերմ ըստ ներգործութեան, այլ զօրութեամբ, իսկ չոր՝ և ներգործութեամբ ։ Բայց միայն տարերքս ըստ ներգործութեան ունին զորակութիւնն, իսկ այլք ամենայն՝ զօրութեամբ, եթէ ոչ մերձենան 'ի տարր[4] ։

Իսկ զի մի երբեք պակասեսցին 'ի տարերցս և մի 'ի

1 Ὁ γὰρ τοιοῦτος δεσμὸς ἄριστον ἐστιν, այս է. Քանզի և սոյն այս իցէ շաղկապ գերընտիր ։

2 Ըստ 'ի վեր Ճանապարհին զայն ասէ՝ որ յերկրէ 'ի ջուր, և անտի յօդ, և այլն ։

3 Κατ' ἐπίκλασιν καὶ ἐπιστροφὴν τὴν πρὸς τὸ ἄκρον. Իմա, շրջան առեալ՝ դառնալով անդէն 'ի նոյն կարգ տարերացն ։ — Լծմն. Մակբերութիւն ասէ զայն՝ որ օղաձև բոլորակապէս շրջագայի, որպէս զանիւ ։ — Ցօրինակս մեր մակբեկութիւն ։

4 Լծմն. Այսինքն, որպէս հուր՝ զայրելն (ունի). իսկ ծծումբ յորժամ մերձի 'ի հուր՝ ապա այրի ։

նոցանէ շարախառնութիւնքն, իմաստնաբար Արարչագործն արուեստագործեաց, իբր զի և տարերց 'ի միմեանս փոխարկեալ և 'ի շարախառնութիւնս, և դարձեալ շարախառնութեանց 'ի տարերս լուծանիլ. և այսպէս 'ի միմեանց ծննդենէ յարամնայ այս հաստատուն, և ամբողջ պահին հանապազ: Քանզի երկիր տղմացեալ՝ լինի ջուր, իսկ ջուր թանձրացեալ և կաւացեալ՝ լինի երկիր, իսկ ջեռեալ և շոգացեալ՝ լինի օդ. օդ ժողովեալ և խտացեալ՝ լինի ջուր, իսկ չորացեալ՝ 'ի հուր փոխարկի. այսպէս և հուր շիջեալ և 'ի բաց եդեալ զչորութիւն՝ օդանայ, քանզի է օդ՝ շիջումն հրոյ և շոգի ջրոյ ջեռուցելոյ. արդ, յերկոցունց յայտ է՝ եթէ 'ի ջերմութենէ լինելութիւն նորա (օդոյ), քանզի ջեռեալ ջուր և շիջեալ հուր՝ օդ լինի. արդ է ըստ ընտանի բնութեան՝ ջերմ, բայց ցրտանայ մերձաւորութեամբն՝ որ առ ջուր և երկիր, որպէս զի ներքին կողմն նորա՝ որ մերձի յերկիր՝ ցուրտ գոլ, իսկ վերնոյն՝ որ առ հուրն՝ ջերմն. և պատահի այս վասն թուլութեան և դիւրակրութեան օդոյ, քանզի փութանակի կայ 'ի բաց յընտանի բնութենէն և փոխարկի:

Իսկ Արիստոտելէս երկուս սեռս ասաց գոլ օդոյ, է՛ ինչ որ տամկատեսակ, որ 'ի գոլորշոյ ջրոյ. և է՛ ինչ որ ծխատեսակ, որ 'ի շիջմանէ հրոյ. և զծխատեսակն ջերմըն գոլ, իսկ զտամկատեսակն՝ ուրանօր ծնանին՝ ջերմ և զնա, իսկ յառաջեալ ըստ մասին՝ ցրտանայ, և բարձրացեալ՝[1] ջրանայ: Իսկ զի և յայլոց ինչ թուեցելոց անտեղիս՝ խոյս տացէ, և առ այսոքիւք՝ զբարձրագունիցն և բազում մեկուսիս 'ի յերկրէս ցրտագոյնսն երևել՝ կրկին եդ զբնութիւն նորա[2]:

Բայց ամենայն մարմինք զլինելութիւն 'ի ժողովմանէ չորից տարերցս ունին. տնկոցն և կենդանեացն բնու-

1 Այսպէս յամենայն օրինակս. այլ ուղղագոյն թուի լինել թանձրացեալ: Ըստ յունին՝ և հուսկ ուրեմն 'ի ջուր փոխարկի (καὶ προκόπτον ἐξυδατοῦσθαι).

2 Մթին է յունաբանութեամբ ասացեալդ, որով կամի ծանուցանել զի Արիստոտէլ զերկուս զայսոսիկ օդս (զտամկատեսակն և զծխատեսակ) կարգեաց՝ առ 'ի մեկնել զդժուարութիւնս ինչ զընդառաջ ելեալս. և զի մարմինք այնքան ցրտագոյնք երևին՝ որչափ հեռագոյն յերկրէս գտանիցին:

թեան՝ զմաքրագոյնն 'ի տարերցս 'ի լինելութիւն այսոնիկ մարմնոցս քարշեալ. և կոչէ զայսոսիկ զմարմինս Արիստոտելէս բնաւորականս։ Ոչ ըստ հաւաքման շարադրեցելոց սոցա, այլ բոլորից բոլորովին 'ի միութիւն խառնեցելոց, և մի իմն և այլ զինքեանս արարեալ ըզմարմինս. քանզի այնպէս միաւորի՝ որպէս զի ոչ գոլ կար տարորոշիլ նոցա, և ոչ առանձինն տեսանել երկրի և առանձինն ջրոյ և օդոյ և հրոյ ('ի մարմինսն յայնոսիկ), միայնոյ իմն և այլ քան զնոսա 'ի ժողովմանէ չորիցս տարերցս եղելոյն. որպէս 'ի վերայ չորեքդեղենին [1], քանզի և անդ այլ իմն չորեքդեղեանն՝ քան զորս յորոց շարակային. բայց ոչ նմանապէս (և տարերքն). քանզի ոչ ըստ շարադրութեանն որ ըստ մանրամասնիցն՝ որպէս չորեքդեղենին՝ առնեն տարերք զմարմինս, այլ ըստ փոխադրութեան և միութեան, և դարձեալ 'ի տարերս լուծանին մարմինք ապականեալք։ Եւ այսու եղանակաւ մնայ մշտնջենաւորապէս ամենայն, տևէ առ 'ի յէիցս լինելութիւն, ոչ առաւելեալ երբեք և ոչ նուազեալ։ Ուստի և զայլոց զլինելութիւնն՝ այլում ապականութիւն՝ գոլ ասէ, և զայլոց ապականութիւնն՝ այլում լինելութիւն. ոչ միայն ըստ անձին՝ որպէս և յառաջագոյն ասացեալ է, այլ և ըստ մարմնոյ։

Իսկ Պղատոնի թուեցաւ երից տարերց փոխարկիլ 'ի միմեանս, բայց երկրի անփոխարկելի մնալ. քանզի նմանեցուցանելով իւրաքանչիւրում տարեր՝ զհաստատութիւն ուղղագծիցն ձևոց [2], երկրի զկիւբիկոնն ձև, վասն զի անշարժագոյն է քան զայլսն, իսկ ջրոյ՝ որ քան զայլսըն դժուարաշարժագոյն՝ զիկոսաէդռոնն, իսկ զդիւրա-

1 Լծմն. Չորեքդեղեանն (τετραφάρμακος) է չորս դեղ, զոր առնուն նկարողք. զսպիտակն և զսեաւ, զկարմիր և զկապուտակ, և կամ ևս աւելի դեղք։

2 Լծմն. Ձևք էին արարեալ չորք՝ յիմաստասիրացն, և անուանք եդեալ ձևոցն, որպէս և ունի կարգ բանիցդ. և էին ձևքն շարժունք, բայց մի քան զմի առաւել, և չորեքին այսոքիկ ձևքս կոչէին ուղղագիծք։ Արդ Պղատոնի նմանեցուցեալ զձևքս զայս տարերց՝ ասէ թէ երեք ձևքն (իկոսաէդռոն — քսանակողմն, պիւռամոիդէս — կոնաձև, ոքտաէդռոն — ութակողմն) լուծանին 'ի միմեանս, և ըղկերպարանս իւրաքանչիւր 'ի միմեանս փոխեն. բայց մի ձևն՝ որ է կիբիկոնն (խորանարդ, ձև վեցանիստ) ոչ փոխարկի 'ի նոսա։

շարժագոյն զպիւռամիդէսն՝ հրոյ, իսկ զոքտաէդռոնն՝ օդոյ, որ է դիւրաշարժագոյն քան զջուր և դժուարաշարժագոյն քան զհուր, յայսոսիկ ձևոց առնէ զցուցումն, երեցունց այսոցիկ 'ի միմեանս փոխարկիլ, բայց երկրի ոչ կրել զայս։ Քանզի զերիսս զայսոսիկ՝ զպիւռամիդն և զոքտաէդռոնն և զիկոսաէդռոնն՝ 'ի սկալինեացն[1] եռանգիւնեաց հաստատիլ (գիտեմք), բայց զկիւբիկոնն 'ի հաւասարակողից եռանգիւնեաց. արդ՝ որքան ինչ 'ի սկալինեանցն եռանգիւնից հաստեցաւ՝ այսոցիկ կար է լուծանիլ, և դարձեալ ժողովիլ և 'ի միմեանս փոխարկիլ. իսկ կիւբիկոնն ոչ լուծեալ յայլոցն ինչ երիցն ձևոց՝ կար գոլ փոխարկիլ, քանզի 'ի հաւասարակողից եռանգիւնից հաստեցաւ. յորոց ոչ ինչ յայլոցն երիցն հաստիլ կարէ, և ոչ նոցունց երիցն ձևոց՝ 'ի կիւբիկոնն։ Արդ՝ հարկ է և զտեսակացեալսն մարմինս ըստ տեսակացս այսոցիկ՝ այսպէս ունել առ միմեանս՝ որպէս այնք ունին։

Սակայն ոչ առանց կրից մնայ երկիր. այլ տարորոշի 'ի մանրամասնագունիցն մարմնոց՝ վերստին տարրացեալ. սակայն ոչ է փոխարկեալ 'ի տարորոշողսն զնա, քանզի անդրէն հաւաքեալ յինքն դարձուցանէ. որ երևի 'ի ջուր. քանզի թէ 'ի ջուր արկեալ հող ինչ սակաւ՝ խառնակեսցես, լուծանի 'ի ջուր հողն. բայց թէ դադարեսցէ որ խառնակէն՝ զկայ առեալ ջրոյն՝ 'ի վայր նստի. ըստ նորին օրինակի և 'ի վերայ երկրի պարտ է իմանալ. ոչ է այս փոխարկութիւն, այլ տարորոշումն խառնեցելոցն։

Իսկ ասէ Պղատոն և 'ի սրութենէ[2] հրոյ լուծանիլ երկրի. բայց լուծեալն բերի 'ի նմա՝ կամ օդոյ թանձրութեամբ, յայտ է թէ յորժամ օդ զնա լուծանէ. կամ ջրով՝ յորժամ 'ի ջրոյ լուծցի։ Եւ ասէ՝ ըստ այլ յեղանակի տարորոշելով, զիւրաքանչիւր ոք 'ի տարերցս՝ երիս ունելով որակութիւնս. հրոյ՝ սրութիւն, անգայտութիւն, շարժութիւն. իսկ միւսոյ ծայրին տարերցս՝ այսինքն երկրի, զհակառակսն նոցա որակութիւնս՝ բթութիւն, խտու-

1 Այս է 'ի սանդղաձև եռանկիւնից, որոց երեքին կողմանք անհաւասարք են։

2 Իմա՛ 'ի սաստկութենէ (ὑπὸ τῆς ὀξύτητος τοῦ πυρός).

թիւն, կայս. որպէս զի գոլ ըստ նոյն որակութեանց՝ հակառակս զերկիր և զհուր, որ ոչ էր՝ ըստ այլոյն ըղձակցութեամբ որակութեանց. այլ առեալ յերկաքանչիւրեցն ծայրից որակութիւնս, և այսպէս միջնատարերցն լինել: Քանզի առեալ լինին ՚ի հրոյ երկու որակութիւնք, անգայտութիւն, շարժութիւնն, և մի ՚ի յերկրէ՝ բթութիւնն. և հաստի օդ՝ տեսակարարս ունելով որակութիւնս, բթութիւն, անգայտութիւն, շարժութիւն: Դարձեալ երկու որակութիւնք առեալ լինին յերկրէ, բթութիւն և խտութիւն. իսկ ՚ի հրոյ մի միայն՝ շարժութիւնն. և լինի ջուր՝ տեսակացեալ և նա բթութեամբ, խտութեամբն, շարժութեամբն: Արդ, է որպէս սրութիւն առ բթութիւն, այսպէս հուր առ օդ. և որպէս անգայտութիւն առ խտութիւն՝ այսպէս օդ առ ջուր. և որպէս շարժութիւն առ կայսն՝ այսպէս ջուր առ երկիր: Ուրեմն որպէս ջուր առ օդ՝ այսպէս օդ առ հուր, և որպէս օդ առ ջուր՝ այսպէս ջուր առ երկիր. քանզի բնաւորեցան հարթքն ՚ի միջէ ՚ի միջնորդութենէ շարակայիւ, այսինքն ՚ի համեմատութենէ. իսկ հաստատունքն՝ յերկուց միջնորդութեանց: Իսկ ըստ այլյեղանակի ասեն որակութիւնս ունել տարերցս երկրի և ջրոյ ծանրութիւն ունել, ըստ որում ՚ի վայրն բերին բնութեամբ. իսկ օդոյ և հրոյ՝ թեթևութիւն, ըստ որում ՚ի վերն բերին բնութեամբ:

Ասեն և Ստոյիկեանքն զտարերս զոմանս արարողականս, և զոմանս կրականս. արարողական՝ զօդ և զհուր, իսկ կրականս՝ զերկիր և զջուր:

Բայց Արիստոտելէս՝ և հինգերորդ մուծանէ մարմինս, զեթերայինն և զշրջաբերականն, ոչ ախորժեալ զերկին ՚ի չորեցս տարերց լինել: Եւ շրջաբերական առէ զհինգերորդն մարմին՝ զի շուրջանակի յինքն բերեալ լինի: Պղատոնի յայտնապէս ասացեալ ՚ի հրոյ և ՚ի յերկրէ հաստատիլ զնա [1]. և է այսպէս. Մարմնատեսակ՝ երևելի և շօշափելի պարտ է գոլ եղելոյն. բայց առանց հրոյ ոչ ինչ երբեք երևելի եղիցի, և ոչ շօշափելի առանց (հաստատուն) այլոյ իրիք, և ոչ հաստատուն՝ առանց

1 Այս է՝ զերկինս, զոր Արիստոտէլ յեթերայնոյն լեալ ասէր: — Եւ է այսպէս. իմա զվարդապետութիւն Պղատոնի. զոր և նորին բանիւք ՚ի մէջ ածէ ՚ի Տիմէոսէ:

երկրի. ուստի 'ի հրոյ և 'ի յերկրէ՝ զամենայն մարմին հաստատիլ[1] սկսեալ Աստուծոյ առնէր: Բայց երկուց միայն բարւոք հաստիլ առանց երրորդի՝ ոչ է կար. քանզի կապ 'ի միջի երկոցունց ժողովող լինի. իսկ կապ գեղեցիկ՝ որպէս մինչ զնոյն ինքն և զլծակցեալսն՝ մի առնէ. և այս բնաւորեցաւ համեմատութեամբ գեղեցիկ կատարել. կապ ասելով զմիջինսն երկուս տարերցս 'ի համեմատութենէ առեալս, 'ի յառաջագոյն ասացելոցն:

Իսկ որք զԵբրայեցւոցն ընծայեն, տարբերին յաղագս երկնի և երկրի. քանզի այլքն՝ գրեթէ ամենեքեան՝ և ոչ 'ի միոյ ենթակայէ նիւթոյ ասեն լինել զերկինս և զերկիր. վասն զի Մովսէս ասէ. Իսկզբանէ արար Աստուած զերկինս և զերկիր: Բայց Ապողինարոս՝ յանդնդոց առնել ախորժէ Աստուծոյ զերկինս և զերկիր. քանզի զանդունդս Մովսէս ոչ յիշեաց 'ի լինելութեանն աշխարհի՝ որպէս եղեալ. բայց 'ի Յովբն ասի. Ո արար զանդունդըս: Արդ 'ի յայսմանէ՝ որպէս 'ի նիւթոյ ասէ (Ապողինար) լինել զայլսն ամենայն. սակայն ոչ անեղ, այլ եղական զնա գոլ. յառաջ քան զամենայն զմարմնականսըն եղեալ յԱրարչագործէն, առ 'ի յայլոցն գոյացութիւն: Յայտնէ և անուն անդնդոց՝[2] զնիւթոյն անբաւութիւն: Այլ այս զիարդ և իցէ[3], ոչինչ է առաւելութիւն, քանզի և այսպէս և ամենայնի Աստուած և արարչագործ ցուցանի, և յոչընչէ արարեալ զամենայն:

Իսկ առ որս մի Միայն ասացին գոլ զտարր, կամ ըզհուր կամ զօդ, կամ զջուր, բաւական են առ 'ի Հիպոկրատեայ ասացեալքն[4]. «Եթէ մի տարր էր մարդ, ոչ երբեք արդեօք խօթանայր, քանզի ոչ արդեօք իցէր յորմէ խօթանայր, մի գոլով. իսկ եթէ և խօթանայր՝ մի արդեօք էր որ բժշկէրն. քանզի պարտ է՝ որ հիւանդանալոցն է՝ 'ի փոխարկութենէ լինել զգայութեամբ:

1 Ὅθεν ἐκ πυρὸς καὶ γῆς τὸ παντὸς συνεστάναι σῶμα ὁ Θεὸς ἀρχόμενος ἐποίει.

2 Ըստ յունական ձայնին ἄβυσσος, իբր անյատակ խորութիւն, 'ի ժխտողական α մասնըկանէ և 'ի βυσσός կամ βυθός (խոր) բառէ:

3 Օրինակք երկու ունին. Զիարդ արդեօք իցէ:

4 Ի Ճառս բանից՝ Յաղագս բնութեան մարդոյ:

*Իսկ եթէ մի միայն էր տարր, ոչ էր՝ յոր փոխարկիւրն. ոչ փոփոխեալ՝ այլ մնացեալ յինքեան՝ ոչ արդեօք խօթանայր թէ և զգայական էր. բայց հարկ է ախտացելոյն՝ յիմեքէ ախտանալ: իսկ թէ միայն մի էր տարր՝ ոչ արդեօք էր այլ որակութիւն քան զմիոյն տարեր՝ յորմէ ախտանայրն կենդանին. իսկ թէ ոչ փոխարկիլ և ոչ ախտանալ կարէր՝ զիա՞րդ արդեօք խօթանայր»: Արդ՝ ցուցեալ զայս անկար գոլ, ըստ թոյլ տալոյ, 'ի վերայ ածէ. «Զի թէ և խօթանայր՝ մի արդեօք էր որ բժշկէրն. բայց արդ՝ ոչ է մի որ բժշկէն, այլ բազումք. ոչ ուրեմն է մի տարր մարդն:»*

*Այլ և յորոց նոքայն փորձեն իւրաքանչիւր ոք զիւրն կազմել զօրինադրութիւն[1], յայնցանէ մանաւանդ ցուցանի չորս գոլ տարերցն: Քանզի և նախ Թաղէս զջուր միայն ասելով գոլ տարր, փորձի ցուցանել զայլ զերիսն 'ի նմանէ եղեալս, զթանձրագոյնն նորա՝ երկիր լինել, իսկ զնրբամասնագոյնն՝ օդ, իսկ զօդոյն նրբամասնագոյն՝ հուր: իսկ Անաքսիմենէս զօդ միայն ասելով, և սա նմանապէս փորձի ցուցանել զայլսն տարերս՝ 'ի յօդոյ կատարեալս: Հերակլիտոս[2] և Եպարքոս Մենտապոնտինոս[3] զհուր ասելով, նոքումբք ցուցմամբք վարին: Արդ, յորոց նա սոքա ասեն զհուր գոլ այլոցս տարերցս ծնողական, և այլոցն՝ ոմն զջուր և ոմն զօդ, յայսցանէ ցուցանի՝ թէ ամենայն տարերքս 'ի միմեանս փոխարկին. և ամենեցունց 'ի միմեանս փոխարկելոյ՝ հարկ է տարերս գոլ ամենեցունց. քանզի զո՞ր և առնուցուս 'ի չորիցն՝ գտցի և սա 'ի միւսումն եղեալ:*

*Բայց մարմին՝ անձին գործարան գոլով՝ անձնականօք զօրութեամբք հանդերձ տարորոշի. բայց զի այսո-*

1 *Իմա, զի և նոյն իսկ ընծայութիւնքն՝ որովք համարին ոմանք իբրաւացի ասել զմիութիւն տարերն, յայտ առնեն զչորրորդութիւն նորին:*

2 *Հերակլիտոս հուր կենդանի գոլ ասաց զաշխարհս, որ ցանգ կարգեալ իմն օրինօք բորբոքի և շիջանի:*

3 *Համաձայն հայ թարգմանչիս ունին և տպագրութիւնք ինչ յունարէն բնագրին՝* Ἵππαρχος — *Հիպպարքոս, այլ աստանօր բանքն են զՀիպպասեայ Մետապոնտեցւոյ* (Ἵππασος ὁ Μεταποντῖνος) *զպիւթագորեան իմաստասիրէ. ըստ որում ունի և ուղղագոյն տպագրութիւնն Քրիստիան–Փրեդերիկեայ–Մաթէի:*

քիւք 'ի դէպ և պատեհ կազմեցաւ, առ և ոչ միոյ զօրութեան նորա 'ի մարմնոյ խափանեալ. Քանզի իւրաքանչիւր ոք անձնականաւ զօրութեամբ առ ներգործութիւնն՝ առանձինն մասամբ մարմնոյն վիճակի, որպէս յառաջ մատուցելովս բանս ցուցցէ. քանզի անձն զկարգ ունի արուեստաւորի, իսկ մարմին գործարանի, և նիւթ է՝ առ որ գործն նորա. որգոն, որպէս նիւթ սաորակայի կլին, քանզի առ սա լինի գործ նորա. իսկ գործն՝ շնութիւն կամ պոռնկութիւն կամ ամուսնութիւն:

Եւ անջատին անձնականք զօրութիւնք՝ 'ի տեսողականն և յիմացականն և յիշողականն:

## ԳԼՈՒԽ ՎԵՑԵՐՈՐԴ

### Յաղագս Տեսողականի:

Արդ՝ տեսողականն[1] է զօրութիւն անբանութեան անձին՝ 'ի ձեռն զգայարանացն ներգործեալ: իսկ տեսականն՝ որ ընդ զգայութեամբն անկանի. որպէս զգայութիւն և զգայի: Իսկ տեսութիւն է կիրք անբանութեան[2] անձին, 'ի տեսականէ իմեքէ եղեալ: իսկ տեսումն՝[3] կիրք ցնորական յանբանութեան անձին, յոչ ումեքէ տեսականէ եղեալ:

Իսկ Ստոյիկեանքն՝ չորս ասեն զայսոսիկ. տեսութիւն, տեսական, տեսողական, տեսումն: Տեսութիւն ասեն զկիրս անձին՝ ցուցեալ յինքեան և զարարողն տեսական. քանզի յորժամ սպիտակ ինչ տեսանեմք՝ լինի կիրք իմն յանձինն յառմանէ նորա: Զի որպէս 'ի զգայարանս լինի կիրք յորժամ զգայ, այսպէս և անձին՝ յորժամ զմտաւ ածէ. քանզի պատկեր իմն ընդունի յինքեան զիմացականին: — իսկ տեսական՝ զարարողն զտեսութիւն

1 Φανταστικόν, որ է տեսողական զօրութիւն, երևակայութիւն, զոր և աւանդէ անբանական մասն գոլ հոգւոյ. քանզի առանձինն ընչական կենդանութեան է այս գործ: Իսկ տեսականն (φανταστόν) համեմատի ընդ տեսողականին՝ ըստ որում զգալին ընդ զգայութեան:

2 Իմա անբանական մասին հոգւոյ:

3 Տեսութիւն (φαντασία), տեսումն (φάντασμα).

զգալի, որպէս զսպիտա՛կն և ամենայն որ ինչ կարէ շարժել զանձն։ — իսկ տեսողական՝ ունայն քարշումն[1] առանց տեսականի։ — իսկ տեսումն՝ որով քարշիմքն ըստ տեսողականին՝ յունայն քարշումն. որպէս 'ի վերայ մոլեգնոտացն և ափշեցելոցն։

Եւ է անմիաբանութիւն նոցա (Ստոյիկեանց) միայն 'ի փոփոխման անուանցն։

Իսկ գործարանք սորա՝ փորուածք խելացն, և որ 'ի նոսա անձնականն օդ, և որք 'ի նոցանէ ներարգք խոնաւուտք, անձնականաւն օդով, և կազմութիւն զգայարանացն[2]։

Իսկ են զգայարանք հինգ, բայց զգայութիւն մի, անձնականն ճանաչումն 'ի ձեռն զգայարանացն զեղեալսն 'ի նոսա կիրս։ Եւ երկրատեսակագունիւն և մարմնականագունիւն զգայարանացն՝ որ է շօշափելիքն, զերկրատեսակն զընութիւն զգայ. իսկ ճաճանչատեսականն՝ որ է տեսանելիք, զճաճանչատեսականն. որպէս և օդատեսականն՝ զօդոյն կիրս, քանզի օդ է ձայնի էութիւն կամ 'ի յօդ բախումն. և սպնգատեսականն և ջրատեսականն՝ զճաշակումն հիւթոյն ընդունի. քանզի 'ի զգալեացն 'ի ձեռն իւրոյն ճանաչել բնաւորեցաւ[3]։

Արդ՝ պարտ էր ըստ այսմ բանի, վասն զի չորք են տարերք՝ չորս գոլ և զգայարանսն. այլ վասն զի շոգի և հոտոյն սեռ՝ բնութեամբ է 'ի միջի օդոյ և ջրոյ, քանզի յօդոյ է թանձրամասնագոյն, իսկ 'ի ջրոյ անօսրամասնագոյն, (յայտնի լինի այսպիսիս 'ի ձեռն ախտիցն ռընգացն ծանրաշնչութեան, քանզի և նոքա [ախտացեալքն ուղեղունք] թէ և քարշեն զօդս 'ի ձեռն շնչոյն, սակայն 'ի քարշելն զնա՝ հոտոցն ոչինչ զգան. քանզի խցեալ թանձրագունիւն, ոչ անցանէ 'ի զգայութիւնն),

1 Φανταστικόν inanem (vocant) distractionem, sine eo, quod sit φανταστόν. — Christian. Frid. Matth.

2 Ὄργανα δὲ αὐτοῦ αἱ πρόσθιοι τοῦ ἐγκεφάλου κοιλίαι, καὶ τὸ ἐν αὐταῖς ψυχικὸν πνεῦμα, καὶ τὰ ἐξ αὐτῶν νεῦρα, τὰ διάβροχα τῷ ψυχικῷ πνεύματι, καὶ ἡ κατασκευὴ τῶν αἰσθητηρίων. — Լծմն. Փորուած խելացն՝ որ 'ի ճակատն, և անձնական օդն, այսինքն՝ շնչական կենդանութիւնն, և խոնաւուտնիարգն, այսինքն՝ խելապատակքն և ջլաառ (?) ճանապարհն 'ի զգայութիւնսն։

3 Այսպէս խառնակ և խրթին յամենայն օրինակս մեր։ Ըստ յունին իմանալի է. Ամենայն զգալի իւրոց սահմանեցաւ 'ի բնէ յատուկ իմն գործարան՝ պատշաճաւոր առ մի մի 'ի նոցանէ՝ առ 'ի լինել զգալի։

այսուրիկ սակս հինգերորդ զգայարան՝ հոտոտելիքս գըտանի 'ի բնութենէն. զի մի՛ ինչ՝ յորոց կարն է 'ի գիտութիւն գալ՝ զերծցի 'ի զգայութենէն։

Եւ է զգայութիւն ոչ այլայլումն, այլ գիտութիւն այլայլման, քանզի ոչ այլայլին զգայարանքս, բայց տարորոշէ զայլայլումն՝ զգայութիւնն։

Եւ կոչի յոլովակի[1] զգայութիւնն և զգայարանք. և է զգայութիւնն ընդունակ զգալեաց. բայց թուի այս սահմանն՝ ոչ սորա գոլ զգայութեանցս, այլ գործեաց սորա. վասն որոյ և այսպէս սահմանէն զզգայութիւնն. Հոգի իմանալի, յիշխանականէն 'ի գործարանս կոյս կարգեալ։ Եւ է այսպէս զօրութիւն անձին՝ ընդունական զգալեաց. իսկ զգայարանք՝ գործարան ընդունելութեան զգալեաց[2]։

Բայց Պղատոն ասէ զզգայութիւնն՝ անձին և մարմնոյ կցորդութիւն առ արտաքոյսն. քանզի զօրութիւն՝ անձին, և գործարան՝ մարմնոյ[3], և երկոքին 'ի ձեռն տեսութեան իմն՝ ընդունական որոց արտաքուստ են։

Իսկ յանձնականացն են ինչ՝ որ սպասաւորականք են և ընծայաբերք, և են ինչ՝ որ պետականք և իշխանականք։ Պետականք՝ իմացողականն և մակացողականն, իսկ սպասաւորականք՝ զգայականքն, և ըստ յարձակմանն շարժութիւն և ձայնականն։ Քանզի և շարժութիւնք և ձայնք սուրք են, և գրեթէ անժամանակաբար հնազանդին կամաց խորհրդոյն. քանզի համանգամայն և անդէն կամիմք և շարժիմք, ոչ ինչ կարօտք եղեալք 'ի միջի ժամանակի կամելոյն և շարժութեան. որպէս 'ի վերայ շարժութեան մատանցս է տեսանել։ Եւ 'ի բընաւորականացն՝ ոմանք ընդ իշխանութեամբ են իմացողականին, որպէս կոչեցեալքն կիրք։

1 Իմա՝ փոխանակաւ կամ իբրև համանիշ իրերաց։

2 Խրթին են իմաստքն յունաբանութեամբ մթագնեալ։ Կամի ասել՝ ըստ յոյն բնագրին, զի է մարթ ասել զզգայութիւնն կարողութիւն իմն հոգւոյ՝ ընդունական զգալեաց. իսկ գործարանք զըգայութեանն՝ միջնորդք են կարգեալ հոգւոյ առ ընդունելութիւն զգալեաց։

3 Իմա՛ անձին է սեփական... մարմնոյ է սեփական։

# ԳԼՈՒԽ ԵՕԹՆԵՐՈՐԴ

## Յաղագս Երեւաց:

Երեւք հոմանունակի ասին [1], քանզի է և՛ կգայարան և՛ զօրութիւն զգայականին: իսկ Իպպարքոս ասէ, ճառագայթս յաչացն ձգեալք ոլքան հասանէ՝ որպէս ձեռաց շօշափմամբ մերձեալ յարտաքոյսն մարմինս, զընդունողականութիւն նոցա առ տեսողականն տալ: իսկ երկրաչափողքն կոնոս [2] իմն վերագրեն՝ յանկմանէ ճառագայթիցն եղեալս, յարտաքս առաքելոցն 'ի ձեռըն աչացն. քանզի առաքեալ ճառագայթս աջոյ ական 'ի ձախ կոյս, իսկ ձախուն յաջ կոյս, և 'ի յանգմանէն նոցա կատարիլ կոնոսն, ուստի համանգամայն զբազմօք ինչ գիրկս արկանել երեւացն, բայց տեսանել առուգապէս զայն՝ ուրանօր անգանին ճառագայթքն. քանզի այսպէս յոլովակի հայելով 'ի գետին՝ ոչ տեսանեմք զանկեալն 'ի վայր դահեկան՝ բազում անգամ հայելով, մինչև բախումն ճառագայթիցն յայնմ՝ տեղւոջ լինիցին՝ ուրանօր դահեկանն, և յայնժամ տեսութեամբն անգանիմք 'ի նա, որպէս թէ 'ի սկզբանէն սխաք հայել:

իսկ Եպիկուրեանքն՝ ուրուականս իմն պատկեր երևեցելոցն անկանել յաչսն: իսկ Արիստոտելէս ոչ մարմնական ուրուական, այլ որակութիւն 'ի ձեռն այլայլման յօդոյն, որ շուրջ յերևելեացն մինչև յերեսն լինել: իսկ Պղատոն, ըստ ճաճանչակցութեան՝ է ինչ որ յաչաց լուսոյ այսքան ինչ հոսեցելոյ 'ի նմանասեռն օդ, և է ինչ՝ որ 'ի մարմնոց բերեցելոց, և է ինչ՝ որ 'ի միջի օդն դիւրահեղ գոլով դիւրափոխ՝ յարձակեցելոյ ընդ երեսացն:

իսկ Գաղիանոս համաձայնապէս Պղատոնի՝ յաղագս

1 Աստ Թարգմանիչն երևոյթ դնէ 'ի հայումն փոխանակ յունական ὄψις բառի, որ արդարև զերկոսին ևս նշանակէ, այսինքն և զաչս և զզօրութիւն տեսանելոյ: — Լաւագոյն լինէր 'ի հայումս առնել տեսողութիւն, որ համանունակի զերկոսին ևս իմաստս բերէ յինքեան. զի երևոյթ սովորաբար համանիշ դիմաց կամ մակերևութի լսի:

2 Այս է՝ կոնաձև, բրգաձև:

երեսաց յեւթներորդումն համաձայնութեան (գրոց) գրելով՝ ասէ այսպէս. Զի թէ յակն մտանէր մասն ինչ կամ զօրութիւն կամ պատկեր ուրուական կամ որակութիւն երեւեցելոցն մարմնոց, ոչ արդեօք զտեսեցելոցն մեծութիւն գիտէաք, որպէս զլերին կամ զորմոյ մեծի. քանզի այսքան պատկերի անկանիլ յաչս մեր՝ ամենայն ամենեւին անբան է. այլ սակայն եւ ոգին տեսանողական ոչ կարէ այսքան զօրութիւն առնուլ՝ որպէս զի հեղանիլ ամենայն ուրեք յերեւեալն։ Արդ, ասելի է՝ շուրջ զմեօք զօդս՝ լինել այսպիսիս 'ի գործարան մեզ՝ ըստ որում ժամանակի տեսանեմք, որպիսի է 'ի մարմինս մերում երակք տեսողական. քանզի այսպիսի ինչ կրել սովորեաց շուրջ զմեօք օդս։ Զի ճաճանչ արեգական հեղեալ 'ի վերինն կոյս օդոյս՝ թափանցիկ լինի բոլորն զօրութիւն։ Իսկ 'ի ձեռն տեսանողականացըն երակացն ճաճանչ բերեալ, վասն զի ունի զէութիւն հոգեորական[1]. անկանելով յոր շուրջն զիւր՝ յօդ, եւ առաջնով արկմամբն զայլայլումն գործեալ, թափանցիկ լինի մինչեւ ցբազում ինչ՝ մերձ յինքն, մինչեւ անկցի 'ի մարմին ընդդիմատիպ։ Քանզի լինի օդ գործարան ական առ 'ի տեսեցելոցն գիտութիւն, այսպիսի՝ որպէս են-խեցացն լուսերակքն, որպէս զի զոր ինչ բան ունին խելքն առ երակն, այսպիսի ինչ ունել ական առ օդս, անձնաւորեալ յարեգակնայնոյն ճաճանչէ։ Իսկ զի բընաւորեցաւ օդս հպիցն 'ի նա մարմնոց նմանակից լինել, յայտ է, 'ի չիկէ իմեքէ կամ 'ի կապուտակէ եւ յարծաթոյ պայծառէ՝ անցեալ առ լուսով այլայլիլ օդոյն։

Իսկ Պորփիւռիոս յորում Ցաղագս զգայութեան, ոչ կոնոն եւ ոչ պատկեր ուրուական եւ ոչ նորին անձինն հանդիպեալ երեւելեացն (ասէ), գիտել զինքն գոլ զերեւելիսս, անձինն շարունակելով զամենայն էսս եւ գոլ ամենայնի անձն շարունակելով մարմինս պէսպէս քան-

1 Իմա օդային։ Կամի ասել ըստ յունին՝ զի որպէս լոյս արեգական թափ անցեալ ընդ վերին կողմն օդոյ. ընդ բովանդակ թանձրութիւն օդոյն զզօրութիւն լուսոյն հասուցանէ, այսպէս եւ լոյսն՝ որ հեղեալ սփռի ընդ տեսողական երակունս՝ օդային իմն ունի բընութիւն, եւ 'ի հանդիպել անդ օդոյ՝ առաջին բախմամբն ընդհարեալ մերի 'ի նոյն եւ յեղափոխէ, մինչեւ հասեալ զկայ առնու առ մարմին ինչ խափանարար ընթացիցն։

զի ախորժելով գոլ ամենեցունց անձն բանական՝ վայելչաբար ասէ ճանաչել զինքն ամենայն յէսս [1]։

Եւ տեսանեն երբեմն զըստ ուղիղ գծիցն, բայց զգայ ըստ առաջնումն բանին զգոյնսն, ընդ նմին գիտէ և ըզգունեալն մարմին և զձեւն, և զտեղին ուրանոր են, և զմեկուսութիւն և զթիւն, զկայս և զշարժութիւն, զխոշորն և զողորկն, զհարթն և զանհարթն, զսուրն և ըզբութն, և զհաստատումն՝ եթէ ջրատեսակ իցէ, եթէ երկրատեսակ, իբր զխոնաւուտ կամ զչոր։ Արդ, իւրն նորա (τεuuαuεlεαg [2]) զգալի է գոյնն. քանզի 'ի ձեռն տեսութեանն զգոյնսն ընդունի, և անդէն ընդ գունովն և գունեալն մարմին, և զտեղին ուրանոր են երեւեալ և զմեկուսութիւնն 'ի միջի տեսողին և երեւցելոյն. քանզի որքանեաց 'ի զգայութեանցս երևի մարմին, սոցունց անդէն և տեղին ճանաչի, որպէս շօշափելեաց և ճաշակելեաց. այլ սոքա յայնժամ միայն՝ յորժամ մերձին 'ի մարմինն՝ զգան, բայց երբեմն և 'ի հեռուստ ընդունին զիւրսն զգալիս. հարկաւորապէս հետևեաց և միայնոյ (εrεuuαg) տեսանել զմեկուսութիւնն. բայց զմեծութիւնն յայնժամ միայն գիտէ՝ յորժամ զերևեցելոյն բուռն հարկանել կարիցէ։ իսկ եթէ մեծ իցէ երևեալն՝ ոչ ըստ միանգամ՝ բուռն հարկանելոյ, այլ աստանօր կարօտին երբեմն՝ և յիշելոյ և իմանալոյ. քանզի ըստ մասին տեսեալ զնա և ոչ միով զբոլորն՝ հարկաւորապէս յայլմէ յայլ անցանէ. և յոր անկանին միշտ՝ ըստ անցանելոյն զգալի է. իսկ զոր յառաջագոյն ետես՝ յիշումն պահէ. բայց ժողովէ զերկոսին իմացումն, և զզգալին և զյիշելին։ Արդ՝ զմեծութիւնն երկակի ընդունի (τεuuηηuερirαα). երբեմն միայն, և երբեմն յիշ-

1 Ցուցաբանութեամբ խրթին և անիմանալի են միտք բանին։ Ըստ բնագրին պարզելի են իմաստքն այսպէս. Պորփիւռ համարի զի հոգին՝ 'ի յարաբերութեան անդ իրաց տեսանելեաց՝ ինքն զանձն իւր ցուցանէ 'ի նոսին, որք և ոչ այլ ինչ են՝ բայց եթէ նոյն ինքն հոգին. քանզի հոգին զայսոսիկ զամենեսեան յինքեան բովանդակէ. և որ կանս համանգամայն հոգի է՝ յինքեան ունելով զամենայն ազգս մարմնոյ։ Եւ զի մի միակ կարգէ հոգի (Պորփիւռ) ամենայն էիցս, իրաւամբք ուրեմն հաւաստէ հոգւոյ՝ յամենայն տեսանելիս՝ զանձն կամ զինքնութիւն իւր տեսանել։

2 Համառօտ փակագծեալքդ նօտրագիր՝ առ 'ի մեղմ յաւելան ուրեք ուրեք, 'ի պարզութիւն խրթնութեան բանիցն։

մամբ և իմացմամբ։ Բայց զթիւ երևեցելոցն ՚ի վեր քան զերիս կամ զչորս՝ ըստ միանգամ ոչ երևեցելոց, և շարժութեանցն, և ձևոցն բազմանգիւնեացն, ոչ երբեք միայն՝ այլ յիշմամբն և իմացմամբ. զի և ոչ կարէ իսկ զհինգն և զվեցն և զեւթն և զբազումսն առանց յիշման ժողովել. այսպէս և ոչ զվեցանկիւնիսն և զութանկիւնիս և զբազմանգիւնիսն։

Ջձևս և զշարժութիւնս ըստ փոխանցութեան եղեալ (գիտեմք). է ինչ՝ որ նախկին ունի, և է ինչ՝ որ երկրորդըն. իսկ ուրանոր նախկինն է և երկրորդն և երրորդն, զայս՝ յիշումն միայն պահէ։ իսկ վերինն և ներքին, և անհաւասարն և հաւասար, նոյնպէս խոշորն և ողորկն, և սուրն և բութ, հասարակաց է շօշափելեաց և տեսանելեաց, վասն զի և միայն գիտեն զտեղին[1], բայց պէտըս ունին և իմացմանն. քանզի այն՝ որ միանգամ անկանին ընդ զգայութեամբ, միայնոյ զգայութեան գործ է. իսկ որ բազում անգամն՝ ոչ միայնոյ, այլ և յիշմանն հանդերձ և իմացմամբն, որպէս յառաջագոյնն ցուցաւ։

Իսկ ընդ թափանցիկն մինչև ցհոտութիւնն բնաւորեցան անցանել երեւք. նախ ընդ օդ, և գեղեցկապէս, քանզի ընդ բոլորն լինի թափանցիկ. իսկ երկրորդ ընդ ջուր՝ ՚ի դադարման և ՚ի մաքրութեան՝ զձկունսն ՚ի լուղել տեսանեմք. իսկ նուաստ՝ ընդ ապակի և ընդ այսպիսիսս, յայտ է՝ զի ընդ լուսաւորսն[2]. քանզի է և այս նորա իւր։

Եւ մի՛ պատրեսցէ զոմանս՝ զի և ջերմոյն ընդունակութիւն երեսաց է. զի զհուր տեսանելով՝ գիտեմք անդէն թէ և ջերմ է. քանզի թէ յառաջին հանցես զբանդ, գտցես թէ և յայնժամ յորժամ նախ տեսին երեւքն ըզհուրն՝ միայն գունոյն և ձևոյն եղև ընդունակ, իսկ մերձեալ և շօշափմամբ՝ ծանեաք թէ և ջերմ է. զոր պահեաց յիշումն առեալ ՚ի շօշափմանէն։ Արդ՝ այժմ յորժամ տեսանեմք զհուր՝ ոչ այլ ինչ տեսանեմք քան թէ

1 Ἐπειδὴ καὶ μόναι τὸν τόπον διαγινώσκουσι.

2 Այսինքն է, ընդ ապակի և ընդ նմանիս նմին՝ նուազ քան ընդ այլ մարմինս թափ անցանէ տեսողութիւնն, յայտ է՝ յորժամ լուսաւորեալ իցեն մարմինքն. քանզի և այս իսկ է նորա բնութեանն սեփական։

զձևն և զգոյն հրոյն. իսկ իմացումն յինքն ընդ նմին ընդունեին զերևեցելոյն 'ի ձեռն յիշմանն և զջերմութիւն։ Նոյն բան է և 'ի վերայ խնձորոյ[1]. քանզի ոչ թէ միայն 'ի գունոյն և 'ի ձևէ տեսականայ խնձոր, այլ և 'ի հոտոյն և 'ի ճաշակմանն որակութենէ. ոչ և զայսորիկ տեսութեան ընկալեալ՝ գիտէ թէ խնձոր է, այլ անձն՝ յիշմամբն ամբողջ պահէ՝ զոր 'ի հոտոյն և 'ի ճաշակմանէն համանգամայն ընդ տեսանելն իմանայ և զայս ընդ ձևոյն և ընդ գունոյն։ Արդ՝ յորժամ դեղին խնձոր[2] տեսանեմք և համարիմք կարմիր գոլ զնա, ոչ երեսքն են՝ որ պատրին, այլ իմացումն. քանզի երեսքս յիւրեան զգալիս ոչ սխալեցաց, զի և զգոյնն և զձևն ետես։

Արդ՝ երեք 'ի զգայարանացս, երեսք և լսելիք և հոտոտելիք, զորս արտաքոյն և ոչ հպեալսն՝ ընդունելին միջնորդութեամբ օդոյս. բայց ճաշակելիք ո՛չ զգայ այլազգ եթէ ոչ շաղեսցի ընդ զգալւոյն. իսկ շօշափելիք՝ և երկրորդիւ, քանզի և հպեալ 'ի մարմինս, և միջնորդիւ երբեք, (որպէս օրինակ իմն[3]) դաւազանաւ։ Երբեմն երեսք և վկայութեան պէտս ունին այլոց զգայարանացս, յորժամ երևեալն ճարտարութեամբն ինչ իցէ առ պատրանս. որպէս 'ի վերայ գծականին. քանզի գծականի գործ է պատրել զերեսս, ոչ գոլով բարձր ինչ կամ խոնարհ, և կամ թէ իւն այսպիսի ինչ ունիցի բնութիւն, ուրանոր պէտք են առ դիտութիւն մանաւանդ շօշափելեաց. է երբեք զի և ճաշակելեացն կամ հոտոտելեաց, որպէս 'ի վերայ դեղին[4] խնձորոյն։

Իսկ երբեմն և ինքն ըստ ինքեան յայտնապէս յանդիման կացուցանէ զերևեալն, յորժամ ոչ 'ի հեռուստ տեսանէ. քանզի զաշտարակ չորեքանկիւնի՝ բոլոր տեսանէ 'ի հեռուստ. սխալէ և յորժամ ընդ շամանդաղ ինչ

1 Յայտ է ընդ անուամբ խնձորոյ՝ զամենայն տեսակս պտղոց առ հասարակ կոչմամբ իմանալ կամի։

2 Յոյնն դնէ χήρινον μῆλον, որ է մոմեղէն խնձոր, և համարիմք ճշմարիտ (ἀληθινόν) գոլ զնա, և այլն։

3 Փակագծեալդ յաւելեալ առ 'ի մէնջ 'ի դիւրութիւն իմացուածոյ։

4 Նոյն տարաձայնութիւն ընդ բնագրին և աստանօր, զոր սուղ 'ի վերոյ տեսաք. գուցէ թարգմանչին առեալ զիսկութիւն մոմոյն փոխանակ որակութեանն։

կամ ընդ ծուխ տեսանեմք, և կամ ընդ այլ ինչ որ հուպ պղտորէ զտեսանելիսն. նմանապէս և յորժամ 'ի ջուրսն, քանզի և 'ի ծովու՝ զթիակ նաւին բեկեալ տեսանէ. նոյնպէս և յորժամ ընդ թափանցիկ նիւթոյ հայի, որպէս 'ի հայելիս կամ յապակիս կամ յայլ ինչ այսպիսեաց. կամ յորժամ ստէպ շարժեսցի երեւեալն. քանզի ամբոխէ զտեսանելեան փութանակի շարժութիւնն, որպէս զի զոչ բոլորն՝ բոլորեցուցանել, և որպէս 'ի կայս՝ զշարժութիւնսն[1]. կամ յորժամ մտածութիւնքն յայլ ինչ զբաղիցին, որպէս յորժամ խօսիցի[2] ոք ընդ սիրելոյ՝ լծէ և խօսիցի՝ զանց առնէ զնովաւ վասն մտածութեանցն նորա առ այլս ինչ զոլոյ. ոչ է և ոչ այս վնաս երեւաց, այլ մտաց. քանզի նա ետես և պատմեաց, բայց միտքն ոչ զգուշացան պատմեցելումն:

Զորից պէտք են առ 'ի հաւաստի գիտութիւն երեւաց, առողջ զգայարանի, չափաւոր շարժութեան, և մեկուսութեան, օդոյ մաքրի և պայծառի:

## ԳԼՈՒԽ ՈՒԹԵՐՈՐԴ

### Յաղագս Շօշափողականին:

Զիւրաքանչիւր ոք յայլոցն զգայարանացն՝ կրկին կազմեաց Արարչագործն, և տեղեաւ իւիք և մասնկամբք մարմնոյ պարագրեաց. քանզի և աչս երկուս և ականջս երկուս և երկուս վտառս զգայութեանց ռընգացն արար. և լեզուս երկուս բնաւորեաց՝ ամենայն կենդանեացս, ոմանց անջատաբար՝ որպէս օձից, իսկ ոմանց միաւորեալս և միացեալս՝ որպէս մարդկան. վասն այսորիկ և երկուս միայն փորուածս խելացն զառաջնեաւ արար, զի յիւրաքանչիւր փորուածէ զգայականքն երակքն արձակեալք՝ կրկին առնեն զզգայարանսն, և կրկին արար զնոսա՝ վասն գերազանցեալ հոգաբարձութեանն. զի թէ մին կրեսցէ ինչ, միւսն ամբողջ պահեսցէ զզգայութիւնն:

1 Այսինքն, զիրս որ 'ի շարժման կան՝ 'ի հանդարտութեան:

2 Յոյնն ունի. Որպէս յորժամ հանդիպեալ ուրուք բարեկամի, թէ և տեսանիցէ զնա, այլ իբր չտեսեալ՝ զանց զնովաւ առնիցէ:

Այլ բազմացն զգայարանացն ապականեցելոց, ոչ ինչ 'ի նոյն կենդանութիւնն վնասի կենդանին. բայց եթէ շօշափելիքն լուծցին, ընդ նմին կորընչի և կենդանին. քանզի միայն շօշափելիքն 'ի զգայարանացն՝ են հասարակաց ամենայն կենդանեաց. զի ամենայն կենդանի շօշափելիս ունի, և զայլսն զգայութիւնսն՝ ոչ զամենայն ամենայնք, այլ ոմանք՝ զոմանս, իսկ զամենայնն՝ ունին կատարելագոյնքն: Արդ՝ վասն այսու վտանգեցաւ կենդանին՝ կենդանի գոլ կամ ոչ գոլ, ոչ մի մասն վիճակեցոյց Արարչագործն 'ի շօշափելիսն[1], այլ գրեթէ զամենայն մարմինն կենդանւոյն. բաց յոսկերաց և յեղընգանց և յեղջերաց, շաղկապացն և 'ի մազից, և յայլոց այսպիսեաց, ամենայն մասն մարմնոյ՝ զգայութիւն ընդունի: Արդ՝ պատահեաց իւրաքանչիւր ումեք 'ի զգայարանացս՝ կրկին ունել զգայութիւնս, է ինչ՝ որ իւրոյն զգալեաց, և է ինչ՝ որ շօշափելեացն. որպէս երեսք, քանզի և զգոյնսն որոշէ և զջերմն և զցուրտն ընդունի. այլ զայսոսիկ որպէս զմարմինս. իսկ զգոյնսն՝ որպէս երեսք. նոյնպէս և ճաշակելիք և հոտոտելիք և լսելիք:

Արդ՝ զիա՞րդ ամենայն մարմինն է շօշափելիք, եթէ 'ի խելացն փորուածէ ասեմք գոլ զզգայութիւնսն. ո՞չ է յայտ թէ 'ի յերակացն ինչ ձգելոցն 'ի խելացն և սփռելոցն յամենայն անդամս մարմնոյն՝ շօշափելեացն զգայութիւն առլինի: իսկ վասն զի յոլովակի փշոյ հարելոյ յոտն՝ անդէն ցհեր գլխոյ քստմնիմք, կարծեցին ոմանք զկիրսն կամ զզգայութիւն կրից 'ի խելսն առաքել և այնպէս զգալ. այլ թէ էր ճշմարիտ այս բան, ոչ արդեօք խօթանայր վիրաւորեալն անդամ, այլ խելքն: Արդ, լաւագոյն է ասելն՝ եթէ երակքն 'ի խելքն են, քանզի մասն ինչ է խելացն, յամենայնի ունելով զանձնականն իւր ոգի. որպէս և երկաթ ջերեալ՝ ունի զհուր: վասն այսորիկ ուրանոր երակ զգայական է, այն մասն զգայութեան 'ի նմանէ հաղորդի և լինի զգայական: Ոչ ինչ է թերևս անտեղի ասել 'ի սկիզբն երակացն 'ի

1 Այսինքն է. Եւ քանզի զայսմանէ (զգործարանէ շօշափման) կախեալ կայ կենդանութիւն և կամ մահ կենդանւոյն, ուստի ոչ միոյ մասին ևեթ վիճակեցոյց զայն, այլ ընդ համօրէն մարմինն սփռեաց զայս կարողութիւն:

խելմն տառաքել՝ ոչ զկիրսն, այլ զզայակցութիւն իմն և զեկուցումն կրիցն։

Եւ է իւր զգալի շօշափելեացն՝ ջերմն և ցուրտ, փափուկն և խիստն, խոշորն և ողորկն, ծանր և թեթեւն. քանզի և միայն 'ի ձեռն շօշափելեացն ճանաչին այսոքիկ։ Իսկ հասարակաց տեսանելեաց և շօշափելեացն՝ սուրն և բութն, խոշորն և ողորկն, չորն և խոնաւուտն, թանձրն և անօսրն, 'ի վերն և 'ի վայրն, որպէս և տեղին և մեծութիւն՝ յորժամ իցէ այսպիսի՝ որպէս զի ըստ միանգամ հարկանելոյ բուռն շօշափելեացն. և խիստն և անգայտն, և բոլորն՝ յորժամ իցէ փոքր, որպէս և այլ ինչ ձև։ Նոյնպէս և շարժութիւն մարմնոյ հպեալ 'ի նա՝ զգայ, հանդերձ յիշմամբ և իմացմամբ. այսպէս և զթիւ, այլ մինչև ցերկուս և ցերիս, և այսոցիկ՝ փոքունց և դիւրաւ բուռն հարկանելեացն։ Յաւէտ քան զշօշափելիս՝ երեսքն ընդունին զայս. որպէս զհաւասարն և զանհաւասարն, զի սեռ է ողորկին և խոշորին. քանզի խտութիւն ընդ անհաւասարութեան խառնեալ՝ խոշորութիւն առնէ, իսկ հաւասարութիւն ընդ խտութեան՝ ողորկութիւն։

Արդ, յայտ է յասացելոցս՝ թէ բազում հասարակորդութիւն ունին զգայութիւնքս այսոքիկ առ միմեանս. քանզի զմիոյն զխալանսն միւսն յայտնէ. զի 'ի վերայ նկարագրութեան[1] երեսք՝ բարձրութիւնս իմն տեսանեն ռընգանց և այլոց անդամոց. բայց շօշափելեացն հպեալ, յանդիմանէ զյանցումն նորա. որպէս երեսք միշտ և հանապազ 'ի ձեռն միջնորդութեան օդոյս տեսանէ, այսպէս և շօշափելիք 'ի ձեռն միջնորդութեան գաւազանի զգայ զխիստս և զկակուղս և զխոնաւուտս, այլ բանաւորապէս և իմացմամբ։ Քանզի ստուգագոյնս ունի զայս զգայութիւն մարդ. զի զայս և զճաշակելիս առաւել ունի քան զայլոցն կենդանեաց, թէ և այլով իւիք տրուպ է. քանզի այլ կենդանի ըստ այլ զգայութեանց յերիցն[2] առաւել է քան զմարդն. բայց չուն՝ երիւքն համանգամայն. քանզի սրագոյնս և՛ լսէ և՛ տե-

1 Իմա՛ 'ի վերայ պատկերի նկարելոյ դեղովք։

2 Այն է՝ երից այլոց զգայութեանց, տեսանելեաց, լսելեաց և հոտոտելեաց։

սանէ և՛ հոտ առնու, որպէս և յայտ է 'ի հետ վարե-լոցն[1] շանց ։

Եւ ամենայն մարմին շօշափման է զգայարան, որպէս յառաջագոյն ասացաւ՝ մանաւանդ ձեռացն երքինն կոյս, և ոտքս է յաւէտ ծայրք մատանցն . քանզի այսոքիկ որ-պէս գիտակք ճշմարիտ են շօշափմանն . քանզի ոչ միայն ընդունական գործարան կազմեաց Արարչագործն ըզ-ձեռս, այլ և շօշափական. վասն այսորիկ և զմորթն նրբագոյն ունին, և զնդերս 'ի ներքուստ կուսէ կազ-մեալս և անմասն 'ի մազէ, զի յաւէտ ունիցին զշօշափ-մանն . իսկ մազ ոչ բուսանելոյն 'ի նոսա՝ զնդերքն եղեն պատճառք ։ Իսկ ձեռաց են ինչ որ խստագոյնք են՝ առ 'ի յօգնութիւն հզօրագոյնք[2], և են ինչ որ փափկագոյնք՝ առ շօշափումն ստուգագոյնք . որպէս և ջլաց՝ են ինչ որ խստագոյնք են՝ առ 'ի շարժութիւն, և են ինչ որ կա-կուղք՝ առ 'ի զգայութիւնն պատեհագոյնք . քանզի այ-սոքիկ (ջիլք) ստոյգ շօշափելեաց են գործարանք, զի 'ի ձեռն այսոցիկ լինի զգայութիւն շօշափելեացս ։

# ԳԼՈՒԽ ԻՆՆԵՐՈՐԴ

Յաղագս Ճաշակելեաց ։

Յաղագս երեսաց՝ յառաջագոյն ասացաք ըստ ուղիղ գծից տեսանել. իսկ հոտոտելիք և լսելիք՝ ոչ ըստ ուղիղ գծից միայն, այլ ամենայն ուստեք . բայց շօշափելիք և ճաշակելիք՝ ոչ ըստ ուղիղ գծից և ոչ ամենայն ուստեք ճանաչեն, այլ յայնժամ միայն՝ յորժամ ինքեանք հպին յիւրեանցն զգալիսս, բաց յորոշեցելոցն ։

Եւ են ճաշակելիք՝ հիւթոցն ընդունակք . և գործարան նորա՝ լեզու . և ծայր նորա առաւելագոյն, և ևս հան-դերձ այսոքիւք՝ վերնատունքն[3], յորս է 'ի խելացն[4]

1 'Εκ τῶν ἰχνευόντων κυνῶν, այն է՝ 'ի հետազօտող շանց ։

2 Յոյնն ունի մեկին . Եւ ձեռք որ հզօրագոյնք են՝ առաւել յան-կաւորք դատնին յըմբռնել, իսկ որ փափկագոյնքն են՝ առաւել զգա-յունք 'ի շօշափման ։

3 'Η ὑπερῷα, որ են քիմք ։

4 Իմա յուղեղէն ։

բերեալ երակք ընդարձակեալք, և պատմեն զեղեալն ընդունելութիւն առ իշխանականն (հոգի)։ Իսկ հիւթոցն ճաշակականքն կոչեցեալք որակութիւնք՝ են այսոքիկ. քաղցրութիւն, սրութիւն, կծուութիւն, թթուութիւն, խստութիւն և դառնութիւն, աղութիւն, գիրութիւն[1]. այսոցիկ են ճաշակելիք գիտողականք։ Ըստ այսոցիկ որակութեանց և ջուրն անորակ[2] ասի, և ոչ մի յայսցանէ երևեցուցանելով 'ի ճաշակմանն՝ որակութիւն. քանզի ըստ այլոյն, իբր՝ ցրտութեան և յորս է խոնաւութեան, բնաւորակից ունի զորակութիւնսն։ Բայց թթուութիւն և խստութիւն՝ յաւէտն և նուազն թթու՝ տարբերին 'ի միմեանց։

Արդ՝ պարզքն ճաշակականք որակութիւնք գրեթէ այսոքիկ միայն են, բայց շարադրութեամբ բիւրք. քանզի ըստ իւրաքանչիւր տեսակի կենդանւոյ և տնկոյ՝ առանձինն որակութիւնք են։ Այլազգ ընդունիմք 'ի ճաշակմանն զխոզենւոյն որակութիւն, և այլազգ զայծիցն մսոյ. և այս ոչ արդեօք էր՝ եթէ ոչ էր զանազանութիւն իւրաքանչիւր ճաշակմանցն որակութեանց. ուստի ոչ ով արդեօք զսոսա ըստ ազգի կարէր ունել, բազումս գոլով և ամենայն իրօք 'ի միմեանցն տարբերեալք. քանզի որովք կալեալ լինի մի ինչ 'ի պարզիցն որակութեանց, և այսոցիկ ծանօթ է ըստ տեսակի ճաշակմանցըն տարբերութեանց[3]. զի թզոյ և չամչի և արմաւոյ՝ մի որակութիւն կալեալ լինի՝ քաղցրութիւն, այլ ճաշակումն տարորոշէ զիւրաքանչիւր ուրուք տարբերութիւն։

## ԳԼՈՒԽ ՏԱՍՆԵՐՈՐԴ

### Յաղագս Լսելեաց։

Իսկ լսելիք՝ ձայնից և ճայթմանց են զգայարանք. քանզի ճանաչէ զնոցա սրութիւնն և զծանրութիւն, զողոր-

1 Le doux, l' acide, l'acerbe, l'âcre, l'âpre, l'amer, le salé, l'onctueux.

2 Յօրինակն մեր՝ անհարար, ուղղեցաւ ըստ յունին։

3 Պարզելի են իմաստքն. Նա զի և յիրս անդ՝ յորս գտանի քաղցրութեան որակութիւն պարզ, նոքին 'ի ճաշակման անդ զանազանին յիրերաց։

կութիւնն, և զխոշորութիւնն և զմեծութիւն[1]։ Եւ գործարան սոցա՝ երակքն որ 'ի խելացն՝ փափուկք, և ականջացն կազմութիւն, և նեարդատեսակքն նոցա սեռքըն, որ է պատեհ առ 'ի յընդունելութիւն ձայնից և հնչմանց։ Եւ միայն մարդ և կապիկ՝ ոչ շարժէ զականջս յամենայն կենդանեաց։

## ԳԼՈՒԽ ՄԵՏԱՍԱՆԵՐՈՐԴ

*Յաղագս Հոտոտելեացն։*

Հոտոտելիք լինին 'ի ձեռն ռնգանցն, թափանցիկ լինի ընդ ամենայն զառաջեաւ փորուածս խելացն. քանզի նա չոգետեսակ գոլով բնութեամբ՝ զչոգիսն դիւրաւ ընդունի. զի ասացաւ և յառաջագոյն, թէ իւրաքանչիւր ոք 'ի զգայարանացն՝ ըստ նմանութեան իւիք և իւրութեան իւրոյն՝ զգալեաց լինի ընդունակ։ Սակայն ոչ՝ որպէս այլոց զգայարանաց երակս զգայականս արձակեաց խելքն՝ այսպէս և հոտոտելեացն, այլ սա իւրովի լնու զպէտս երակացն, և զչոգեացն զզօրութիւն ընդունի։

Իսկ չոգեացն սեռականագոյնն տարբերութիւն է՝ անուշահոտութիւն և ժահահոտութիւն, և միջակն այսոցիկ՝ որ ոչ անուշահոտն է և ոչ ժահահոտն։ Եւ լինի անուշահոտութիւն խոնաւութեանցն՝ որ 'ի մարմինսն ըստուգապէս ամոքեցելոց, իսկ միջակ՝ միջինն տրամադրութիւն, իսկ նուաստագոյնն կամ ոչ բնաւին՝ ժահահոտութիւն։

## ԳԼՈՒԽ ԵՐԿՈՏԱՍԱՆԵՐՈՐԴ

*Յաղագս Իմացողականին։*

Արդ՝ տեսողականին զօրութիւն և գործարանք և մասնըկունք, հնարաւորն յեղանակ՝ որպէս դուզնաքեաք բա-

1 Լծմն. Զսուրն (ձայն) որպէս զպղպղն, և զծանր՝ որպէս զումբշի, զողորկութիւնն՝ որպէս ծովու, և խոշոր՝ որպէս էշոյ։

ւականապէս ասացաւ։ Իսկ իմացողականին են սեռականապէս՝ դատելն և հաւանելն, 'ի բաց փախչելն և 'ի վերայ յարձակելն[1]. իսկ առանձնապէս՝ իմացմունք իմացականացն, առաքինութիւնք և մակացութիւնք. և արուեստից բանք, և խոհեցողականն և յօժարականն։ Այս է որ 'ի ձեռն երազոց նշանակէ մեզ զապառնիսն. զոր և ճշմարիտ նախագիտութիւն ասեն գոլ պիւթագորեանքն՝ երբայեցւոցն հետևելով։ Եւ է գործարան նորա միջինն փորուած խելացն, և անձնականն շունչ որ 'ի նմա։

## ԳԼՈՒԽ ԵՐԵՔՏԱՍԱՆԵՐՈՐԴ

### Յաղագս Յիշողականին։

Իսկ յիշողականն է յիշման և վերստին յիշման պատճառ և շտեմարան։ Եւ է յիշումն, որպէս Որոգինէս ասէ, տեսութիւն 'ի ներքս մնացեալ 'ի յիմեքէ[2] 'ի զգայութենէ՝ ըստ ներգործութեան երևեցելոյ։ Իսկ որպէս Պղատոն (ասէ), փրկութիւն[3] զգայութեան և իմացման. քանզի անձն՝ զգալեացս 'ի ձեռն զգայարանացս լինի ընդունակ, և հաստատի ինքն. իսկ իմացականացն՝ 'ի ձեռն մտացն, լինի իմացումն[4]։ Արդ՝ յորժամ զտիպսն զորոց հաստատեացն և զորոց իմացաւն՝ ամբողջ պահէ, յիշել ասի։ Եւ նմանեաց զիմացումն ասելն Պղատոնի այսորքիկ՝ ոչ զտիրապէս իմացումն, այլ զմտածելն[5]։ Քանզի զգայականս յիշմունք 'ի յինքեանց[6], իսկ զիմացականս ըստ պատահման. վասն զի զմտաւ ածելոյն յիշումն՝ յառաջագոյնն տեսանելոյն

1 Այսինքն է, խորշումն և իղձ, կամ զզուելն և փափաքել։

2 Յօրինակս ինչ յուշմնքէ։

3 Իմա պահպանումն կամ կայ մնայն (σωτηρία, conservatio). Լծմն. Այսինքն՝ փրկիչ է նոցա 'ի մոռացմանէն։

4 Ըստ յունին մեկին եւ. Զի հոգի զգայնովք 'ի վերայ հասանէ զգալեաց, յորմէ ծագի ծանօթութիւնն (δόξα). իսկ իմացութեամբ՝ իմացականաց, յորմէ իմացումն (νόησις).

5 Այսինքն է, Պղատոն բառիւս νόησις ոչ կամի ասել զտիրապէս իմացումն, այլ զմտածելն (τὴν διανόησιν).

6 Ի լուսանցս ամենայն օրինակաց նշանակի՝ և ըստ ինքեանց։

լինի ։ Իսկ զտիրապէսն իմացականսն, յորժամ լուաքն կամ ուսաք՝ յիշեմք. բայց էութեան նոցա յիշումն ոչ ունիմք. քանզի ոչ 'ի յառաջագոյն տեսութենէ է իմացականացն առումն, այլ յուսմանէ և 'ի բնաւորական իմացմանէ ։ Իսկ թէ յիշել ասեմք զորս յառաջագոյն տեսաք կամ լուաք կամ այլազգ ինչ գիտացաք, և յառաջագոյն վերաբերութիւն ունի առ անցեալն ժամանակ, յայտ է թէ յիշելիք են եղեալքն և ապականեալքն՝ որք 'ի ժամանակին են հաստատեալք[1] ։ Եւ է մեկուսեացն յիշումն, սակայն ոչ 'ի մեկուսեայն լինի ։

Իսկ վերստին յիշումն ասի՝ յորժամ մոռացումն ընդմիջէ զյիշումն. քանզի է վերստին յիշումն՝ յիշման տկարացելոյ զարգացումն. և լինի տկարացեալն 'ի մոռացմանէն. իսկ մոռացումն՝ է յիշման 'ի բաց ընկեցումն, այլ կամ հանապազորդ և կամ ցորքան, որ է վերստին յիշումն[2] ։ Եւ է այլ վերստին յիշումն, որ ոչ է մոռացման զգայութեանց կամ իմացմանցն, այլ բնաւորականացն մտածութեանց. և բնաւորականս ասեմք մտածութիւնս՝ զանուսանելիսն առ էսս ամենեցունց, որպէս գոլն Աստուած. և զայս Պղատոն վերստին յիշումն գոլ ասէ ըստ տեսլեանցն ։ Իսկ թէ զինչ են տեսիլքն[3], յորս զկնի սորին՝ ասասցուք ։

Արդ՝ տեսողականն աւանդէ իմացականի զերևեալսն. իսկ իմացականն կամ խոհեցողականն յինքն առեալ և դատեալ՝ առաքէ առ 'ի յիշողականն ։ Եւ է գործարան սորա (յիշողականին) յետուստ կուսէ փորուած խելացըն, և որ 'ի նմա անձնականն շունչ[4] ։ Իսկ վասն զի զգայութեանցս սկզբունս և արմատս՝ զառաջոյ կուսէ փորուածոյ խելացն ասեմք գոլ, և իմացողականին զմիջինն, և յիշողականին զյետուստն կուսէ, կարևոր է ցուցանել թէ այսոքիկ այսպէս են. զի մի թուեսցուք անբանապէս հաւատալ ասացելոցն ։ Եւ բաւական ցու-

1 Յերիս օրինակս հաստատեցան ։

2 Կամի ասել, զի կամ իսպառ 'ի յուշոյ անկանին իրք. որով լինի հանապազորդ մոռացումն, և կամ առ ժամանակ մի, որում ըղհետ գայ վերստին յիշումն ։

3 Յերիս օրինակս տեսեալքն ։

4 Յոյն բնագիրն յաւելու. Եւ սա (փորուածս այս խելացն) կոչի ուղղակ (παρεγκεφαλίδα, παρεγκρανίδα).

ցումն է՝ 'ի նոցունց 'ի մանկանցն ներգործութենէ առնըլի։ Քանզի զառաջնով կուսէ փորուածոցն ըստ որ ինչ և է յեզանակի մնասեցելոց՝ զգայարանքն խափանին, բայց իմացականն մնայ տակաւին ամբողջ։ իսկ միջնոյն փորուածոյն միայնոյ կրեցելոյ ինչ՝ իմացումն սխալէ, բայց զգայարանքն պահեն զըստ բնութեանն զգայութիւն. իսկ թէ և առաջինն և միջին փորուածքն կրեն ինչ՝ իմացուածքն հանդերձ զգայարանօքն հատանին. իսկ թէ յետուստ կրէ ինչ, յիշումն միայն կորնչի, ընդ զգայութեանն և իմացականին ոչ ինչ մնասեցելոյ. (և յայտ է՝ թէ ոչ է մեզ բանս այժմ յաղագս ըստ բնաւորական յարձակման շարժութեան[1])։ իսկ թէ հանդերձ առաջնովքն և միջինն և վերջինն ինչ կրեսցեն, և զգայութիւնն և իմացումն և յիշումն ապականին, առ 'ի յամենևին վտանգել կենդանւոյն և կորնչել։

Եւ յայտնի լինի այս և յայլոց 'ի բազմաց ինչ կրից, և 'ի հիւանդութեանց 'ի փռենիտն[2] ախտէ. քանզի փռենիտն ախտացելոց՝ զգայարանքն ամբողջ պահին, իմացողականն միայն մնասի։ Այսպիսի ինչ վերագրէ Գաղիանոս զումն զփռենիտն ախտացեալ, որ՝ մինչդեռ ասրագործ ումն գործէր 'ի տան նորա, յարուցեալ և առեալ անօթս ապակեղէնս՝ ընթացաւ 'ի պատուհան տանն, և հարցանէր զիւրաքանչիւր ոք զորս անցանէինն. կամիք զի ընկեցից առ ձեզ զայս ինչ անօթ. իսկ նոցա ասացեալ՝ կամիմք. նախ ընկէց զանօթսն ամենայն։ Եւ ապա հարցանէր զորս անդն կային. կամիք զի ընկեցից առ ձեզ և զասրագործս. իսկ նոցա թուեցեալ խաղ առնել զիրսն՝ ասացեալ թէ կամիմք, առեալ մղեալ ընկէց զասրագործն 'ի վերուստ 'ի վայր։ Արդ՝ սա զգայարանօքն առողջ էր, քանզի գիտէր և զանօթսն և զասրագործն, բայց միտօքն հիւանդ։

1 Փակագծեալդ հատուած բանի թէպէտ և 'ի բազում օրինակս յոյն բնագրին գտանի, այլ անյարիր մնայ ընդ առաջնոյն։ Իսկ ձեռագիր ամենայն օրինակք մեր գրեն 'ի լուսանցսն. « Այս տունս անյար է 'ի բանս, յասորին Բնութեան գիրք՝ չկայր այս տունս »։

2 Այն է 'ի մտաբախութենէ (ἐκ τῆς φρενίτιδος). — Լծմն. Եւ է փռենիտն ախտ՝ որ յորժամ ողնածուծ ուղեղն (որ իբր զգաւաւազան է յողնաշարն) ջերմանայ, և ելանէ ջերմն այն 'ի վեր յիմացումն, ապականի իմացքն. բայց զգայութիւնն և յիշողութիւնն ամբողջ կայ մնայ։

Իսկ այլք անոտի ոմն տեսութիւն քարշեն 'ի յինքեանս. տեսանել համարին՝ զոր ոչն տեսին. բայց այլ իմանալն ամենայն ըստ բանի։ Որքա զառաջնով կուսէ փորուածսըն միայն ախտացեան, միջնոյն և վերջնոյն անմնաս մնացելոյ։ Զի յախտիցն հետևեցելոց իւրաքանչիւրում անդամոց՝ որքան ինչ ներգործութեան նոցա է՝ խափանի, քանզի յայն ներգործութիւն մնասի կենդանին՝ յոր բնաւորեցաւ ներգործել ախտացեալն անդամ. որպէս և ոտին մնասեցելոյ՝ խափանի 'ի գնացիցն, քանզի այս ներգործութիւն ոտին է։

## ԳԼՈՒԽ ՋՈՐԵՔՏԱՍԱՆԵՐՈՐԴ

Յաղագս ներտրամադրեցելոյ և յառաջ բերեցելոյ բանի։

Արդ՝ այս մի տարորոշումն անձնականի զօրութեան, որ տարորոշի մասամբք իւրք մարմնոյս. իսկ միւս տարորոշումն՝ ըստ այլ յեղանակի է՝ բանականիս անձին, որ կոչի ներտրամադրեալ բան և յառաջ եկեալ։

Եւ է ներտրամադրեալ բանն շարժումն անձին՝ որ 'ի խորհեցողականին եղեալ առանց իրիք արտաձայնութեան, ուստի և յոլովակի լռելով՝ բան՝ բոլոր յինքեանս բարբառիմք և յերազս խօսիմք։ Ըստ այսորիկ մանաւանդ եմք բանականք ամենեքեան. քանզի ոչ իսկ այսպէս ըստ յառաջ եկելոյն բանի, որպէս ըստ այսմիկ. քանզի որք 'ի ծնէն են խուլք, և ախտիւ և կամ հիւանդութեամբ զրկեալք 'ի ձայնէ, ոչ ինչ են տրուպ բանականք։

Իսկ յառաջ եկեալն բան՝ 'ի ձայնին և 'ի խօսսն ունի զներգործութիւնն։ Եւ են գործարանք ձայնի բազումք. քանզի որք և 'ի միջակողմն 'ի ներքուստ կուսէ մկունք և ախտնդանքն և թոքք և փողերակքն և խաչափողն, և յայսցանէ՝ մանաւանդ նեարդատեսակքն, և ընդ կրունկն դարձեալ երակքն, և լեզուակք, և ամենայն որք շարժեն զայսոսիկ մսանկունք, մկունքն՝ որոյ 'ի բնութենէն են գործարանք։ Իսկ խօսիցն՝ բերանն, քանզի 'ի սմա ստեղծանի և ձևանայ, և որպէս կերպա-

բանի իմն բառն․ լեզուին և որկորին՝ զկնտնտոցին օրինակ ունելով, և վերնատանն՝ հնչման, իսկ ատամանցն և որակի իմն բացման բերանոյն, որպէս 'ի քնար, զաղեացն ընլով զպէտս, կատարելով իմն և ռընգանցն առ 'ի գեղեցկաձայնութիւն ինչ կամ 'ի չարաձայնութիւն, որպէս և յայտ է յերգեցողաց։

## ԳԼՈՒԽ ՀՆԳԵՏԱՍԱՆԵՐՈՐԴ

### *Այլազգ տարորոշումն անձին* *

*Տարորոշեն և այլազգ՝ 'ի զօրութիւնս կամ 'ի տեսակըս և կամ 'ի մասունս՝ զանձն․ 'ի տնգական, որ և սննդական և կրականն կոչի, և 'ի զգայական, և 'ի բանական։ իսկ գործարանացն իւրաքանչիւրում յայտնեցանէ՝ է ինչ որ ասացաւ, և է ինչ որ զկնի սորին ասասցի։*

*Իսկ Զենոն Ստոյիկեան ութամասնի ասէ գոլ զանձն, տարորոշելով զնա՝ յիշխանականն և 'ի հինգ զգայութիւնսն և 'ի ձայնականն և 'ի սերմնականն։ իսկ Պանետիոս իմաստասէր՝ զձայնականն՝ ըստ մարմնական յարձակմանն շարժութեան մասն գոլ ախորժէ, ասելով ուղղակի [1]․ իսկ զսերմնականն՝ ոչ անձին մասն, այլ 'ի բնութենէ։ Բայց Արիստոտելէս 'ի Բնաւորականսն [2] հինգ գոլ ասէ զմասունսն անձին, զտնկականն և զզգայականն, և զշարժողականսն ըստ տեղւոյ, և զհարկաւոր ցանկականն և զիմացողականն։ Տնգական ասելով՝ զոր սնանելն և աճելն և ծնանելն առնէ և ստեղծուլ զմարմինս․ կոչէ և տնգական և սննդական, զամենայնն 'ի հզօրագունէն մասնէն կոչելով՝ 'ի սնուցողէն․ յորմէ և այլքն մասունք զտնգականին զգոյութիւն [3]*

* Ի ձեռագիր օրինակս մեր, որպէս և յօրինակս ինչ յունականս՝ չիք աստ բաժանումն առանձինն գլխոյ․ այլ ընտիր տպագրութիւնն 'ի Փր․ Քր․ Մատթէէ՝ համաձայն բազում ձեռագրաց յունաց կարգէ նոր գլուխ խորագրաւս՝ "Ετερα διαίρεσις τῆς ψυχῆς, ըստ որում և մեք եգաք։

1 Իմա ուղիղ ասելով։

2 Այսէ 'ի գիրսն որ Յաղագս իրաց բնութեան։

3 Յօրինակս մեր զգայութիւն։

ունին. այսպէս 'ի Բնաւորականսն. իսկ 'ի Բարոյականացն՝ 'ի յերկուս[1] յառաջինսն և 'ի սեռականագոյնսն անջատէ զանձն, 'ի բանականն և յանբանն. և որոշէ զանբանն՝ 'ի հաւանականի և յոչ հաւանականն բանի։ Արդ՝ յաղագս բանականին յառաջագոյն ասացաւ. իսկ վասն անբանին այժմ առցուք 'ի ձեռն։

## ԳԼՈՒԽ ՎԵՑՏԱՍԱՆԵՐՈՐԴ *

*Ցաղագս անբանին մասին անձին կամ տեսակի. որ և ախտական և հարկաւոր ցանկականն կոչի[2]։*

Ոմանք ըստ ինքեան գոլ ասացին զանբանութիւն, որպէս անբան անձն գոլով, և ոչ մասն բանականին. Նախ՝ զի ըստ ինքեան յանբանսն կենդանիս գտանի, ուստի յայտ է՝ թէ կատարեալ ոմն է և ոչ մասն այլոյ. ապա՝ զի և անտեղի իսկ է բանականին մասն գոլ զանբանն[3]։ իսկ Արիստոտելէս և մասն գոլ ասէ և զօրութիւն. և տարորոշէ յերկուս, որպէս և ասացաք իսկ։ Եւ կոչին այսորիկ հասարակաց (անուամբ) հարկաւոր[4] ցանկականն. սորա է և ըստ յարձակման շարժութիւն, քանզի հարկաւոր ցանկութիւնն՝ շարժութեան է սկիզբն. զի 'ի հարկէ ցանկացեալ՝ կենդանիքն գան յոր ըստ յարձակմանն շարժութիւն։ իսկ անբանին (մասին), է ինչ՝ որ հաւանական բանի է, և է ինչ՝ որ անհաւան։ Դարձեալ, հաւանականն բանի՝ տարորոշի

1 Այս է, իսկ 'ի գիրս Բարոյականին, յերկուս գլխաւոր մասունս կարգէ զանձն, 'ի բանաւոր և յանբան։

* Ցօրինակն մեր Հնգետասաներորդ, այսպէս միով պակաս և 'ի յաջորդսն, ըստ որում 'ի վեր անդր ասացաւ։

2 Օրինակք ինչ յոյն բնագրին ունին ըստ մերումս, իսկ այլք պարզաբար Ցաղագս անբանաւոր մասին անձին, որ ախտականն կոչի։

3 Պարզելի են յունախօս խրթնութիւնքդ այսպէս. Ոմանք (յիմաստասիրաց) զանբանականն մասն հոգւոյ (անձին) անկախ ամենեւին ասացին լինել 'ի բանաւոր մասնէն, որպէս ինքնուրոյն անձնաւորութիւն կազմել զանբանական։ Եւ զայս վասն երկուց, Նախ՝ զի առանձինն գտանի նա յանբան կենդանիս, և երկրորդ՝ զի անտեղի համարին զանբանաւոր ինչ՝ մասն ասել բանաւորի։

4 Ցօրինակս մեր՝ հասարակաց և հարկաւոր, և այլն, ուղղեցաւ ըստ յունին։

յերկուս, 'ի ցանկականն և 'ի սրտմտականն։ Եւ են գործարանք ցանկականին՝ 'ի ձեռն զգայութեան՝ լեարդն. իսկ սրտմտականին՝ սիրտն, խիստն մասն. և շարժութեան տեղ ընդունակ 'ի խիստն սպասաւորութեան և տոկացողի յարձակումն կարգեալ[1]. որպէս և լեարդն փափուկ գոլով փափուկ ցանկութեան գործարան եղև։ Եւ կոչին այսոքիկ հաւանականք բանի, զի բնաւորեցան հաւանել և հնազանդել և շարժիլ՝ որպէս բանն հրամայէ, յորս ինչ ըստ բնութեան են մարդկան։ Եւ են այսոքիկ ախտքս՝ հաստատականք կենդանապէս էութեան. քանզի առանց այսոցիկ՝ ոչ է հնար հաստատիլ կենդանութեանն։

Իսկ վասն զի ախտ համանունակի ասի, տարորոշելի է նախ զհամանունակին. քանզի ասի ախտ և մարմնական, որպէս հիւանդութիւնք և վէրք. ասին ախտք և անձնականք, յաղագս որոյ այժմ մեր բանս է, ցանկութիւն և սրտմտութիւն. է և հասարակաց և սեռականապէս կենդանւոյ՝ ախտ, որոց հետևին հեշտութիւնք կամ տրտմութիւնք. քանզի հետևի ախտի տրտմութիւն, և ոչ նոյն է ախտն տրտմութեան[2]. քանզի թէ այս էր, ամենայն որ ախտանայր՝ և խօթանայր[3]. բայց այժմ անզգայքն ախտանան և ոչ խօթանան. ոչ ուրեմն է ախտ խօթութիւնն, այլ ախտի զգայութիւն. և պարտ է այսմ արժանի բանի լինել, զի ընդ զգայութեամբ անկցի[4]։

Իսկ անձնականացն ախտից սահման է այս. Ախտ է շարժութիւն զգալի՝ հարկաւոր ցանկականին զօրութեան, տեսութեան բարւոյ կամ չարի։ Եւ այլազգ. Ախտ է անբան շարժութիւն անձին, վասն կարծեաց բարւոյ կամ չարի։ Իսկ զսեռականն ախտ այսպէս սահմանեն.

1 Իմա. իսկ սրտմտականին՝ սիրտն, որ է մասն արուորագոյն և ընդունակ մեծամեծ յուզմանց կամ շարժութեանց՝ առ կարևորս և դժուարինս, և առ 'ի զսպումն բռնագոյն շարժմանց. զհակառակն ամենևին լեարդի, որ փափուկ գոլով, և այլն։

2 Այսինքն, ոչ եթէ ինքնին իսկ ախտ իցէ տրտմութիւնն։

3 Լծմն. Խօթանալ աստ զտրտմելն ասէ։

4 Այսինքն է, հարկ 'ի վերայ կայ այսմ զգայութեան ախտի ունել գէթ չափաւոր ինչ ուժգնութիւն, զի մարթիցի ընդ զգայութեամբ անկանել։

Ախտ է շարժութիւն յայլում յայլմէ։ իսկ ներգործութեան է շարժութիւն արարողական (ըստ բնութեան). և արարողական ասի յինքենէ շարժեալն։ Արդ, այսպէս և ուսումնութիւն՝ ներգործութիւն է ուսումնատեսականին. իսկ ախտ (ուսումնութեան)՝ երկուցն մասանց անձին և մարմնոյս մերոյ ամենայնի, յորժամ 'ի ուսումնութենէ բանաւոր ածիցի առ գործն. քանզի յայլմէ յայլում եղև շարժութիւնն, զոր ասէաքն գոլ ախտ։ Եւ ըստ այլ յեղանակի. ներգործութիւն ախտ ասի՝ յորժամ իցէ արտաքոյ բնութեան. քանզի ներգործութիւն՝ է ըստ բնութեան շարժութիւն, իսկ ախտ՝ արտաքոյ բնութեանն։ Արդ և ըստ այսմ բանի՝ ներգործութիւն յորժամ ոչ ըստ բնութեան շարժիցի՝ ասի ախտ, թէպէտ և յինքենէ շարժեալ թէպէտ և յայլմէ։ Քանզի սրտի ըստ ընչերակացն շարժութիւն՝ ներգործութիւն է, իսկ ըստ վազիցն՝ ախտ. զի 'ի նմանէ է և ըստ վազիցն շարժութիւն՝ այլ ոչ ըստ բնութեան, 'ի նմանէ և ընչերակայն՝ այլ ըստ բնութեան։ Արդ, ոչ ինչ է սքանչելի միոյ և նորին իրի և՛ ախտ և՛ ներգործութիւն անուանել. քանզի ըստ որում շարժութիւնք՝ են 'ի նոցունց յախտականացն անձին, ներգործութիւնք իմն են. իսկ ըստ որում՝ անչափք և ոչ ըստ բնութեան, ոչ ներգործութիւնք՝ այլ ախտք։ Այսպէս շարժութիւն անբանին ախտ է՝ ըստ երկոցունց նշանակեալքն[1]։ Բայց ոչ ամենայն շարժութիւն ախտականին՝ ախտ կոչի, այլ ուժգնագոյնքն և 'ի զգայութիւն անցեալքն. քանզի փոքունքն և ոչ եկեալք 'ի զգայութիւն՝ չև ևս ախտք, զի պարտ է ունել ախտի և մեծութիւն արժանի բանի, վասն որոյ և առընթեր կայ սահմանի ախտի՝ շարժութիւն զգայական. քանզի փոքունքն շարժութիւնք ոչ եկեալք 'ի զգայութիւն՝ ոչ առնեն ախտ, որպէս և ասացաւ իսկ։

1 Կամի ասել՝ զի շարժութիւն անբանական մասին ախտ ասի՝ ըստ երկուց ևս նշանակութեանց վերոյգրելոց։

# ԳԼՈՒԽ ԵՕԹՆԵՒՏԱՍՆԵՐՈՐԴ

## *Յաղագս Ցանկականին։*

*Արդ, տարորոշի՝ որպէս ասացաքն՝ և անբանութիւն անձին հաւանականն բանի՝ յերկուս, 'ի ցանկականն և 'ի սրտմտականն։ Դարձեալ, ցանկականն տարորոշի յերկուս, 'ի հեշտութիւնս և 'ի տրտմութիւն. քանզի հանդիպեալ ցանկութեանն՝ հեշտութիւն առնէ, իսկ վրիպեալ՝ տրտմութիւն։ Դարձեալ ըստ այլ յեղանակի. ցանկութիւն տարորոշեալ՝ չորս տեսակս առնէ հանդերձ ինքեամբ[1] զամենայնս։ Քանզի յէսս են ինչ որ բարի են, և են ինչ որ չար, և են ինչ՝ որ աստէն մերձ են, և են ինչ՝ որ ակնկալիք. ըստ այսր յեղանակի՝ երկուցն յերկուս բազմապատկեցելոց՝ որ ինչ ցանկութեանն են 'ի չորս տարորոշին. քանզի և բարի և չար և առընթեր և ակնկալիք։ Ակնկալին բարի՝ ցանկութիւն է, իսկ անդէն մերձն՝ հեշտութիւն. դարձեալ, ակնկալին չար՝ երկիւղ, իսկ առընթերն՝ տրտմութիւն. քանզի 'ի բարիսն՝ դառնայ հեշտութիւն և ցանկութիւն, իսկ 'ի չարսն՝ երկիւղ և տրտմութիւն. վասն որոյ ոմանք զախտս 'ի չորս տարորոշեն. 'ի ցանկութիւն, 'ի հեշտութիւն, յերկիւղ, 'ի տրտմութիւն։ իսկ բարիս և չարս ասեմք, կամ զարդարև էսն[2] կամ զկարծեցեալսն։*

*Եւ լինին չարքն ախտք անձին՝ 'ի ձեռն երից այսոցիկ. 'ի չար հրահանգից, յանուսումնութենէ և 'ի չար ունակութենէ։ Քանզի ոչ բարւոք վարժեալք 'ի մանկութենէ՝ որպէս զի կարող գոլ յաղթկու լինել ախտիցըն, յանչափութիւն նոցա անկանիմք։ իսկ յանուսումնութենէ՝ չար դատումն բուսեալ 'ի խոհեցողականին անձին, որպէս զի կարծել զչարսն պիտանիս գոլ և ըզպիտանիսն չարս։ Լինին ինչ և 'ի մարմնոյ չար ունակութենէ. քանզի բարկացողք են դառնամաղձոտքն,*

1 Հանդերձ ինքեամբ, իմա՛ միանգամայն, միահամուռ (σὺν ἑαυτῇ).
2 Օրինակ մի զարդարևսն։

և վայրաբերք՝ որ ջերմն են և խոնաւուտ խառնուածովն ։ Եւ բժշկելի է զչար սովորութիւնն՝ սովորութեամբ բարեաւ, իսկ զանուսմնութիւնն՝ ուսմամբ և մակացութեամբ, իսկ զչար ունակութիւնն՝ ողջացուցանելի է մարմնապէս, փոխադրելով զնա, որպէս կարողութիւն է 'ի միջինն խառնուած՝ պատրաստութեամբ և կրթութեամբ և դեղովք, թէ և այսոցիկ պէտք լինիցին ։

## ԳԼՈՒԽ ՈՒԹԵՒՏԱՍՆԵՐՈՐԴ

### Յաղագս Հեշտութեանց ։

Հեշտութիւնք՝ են ինչ որ անձնականք են և են ինչ որ մարմնականք ։ Անձնականք՝ որ ինչ անձինն իւր ըստ ինքեան, որպէս և որք ինչ ուսմանցն են և տեսութեամբ. քանզի այնք և այնպիսիքն՝ միայնոյ անձինն են ։ իսկ մարմնականք են՝ որք կցորդութեամբ մարմնոյն և անձինն եղեալք, և վասն այսորիկ մարմնականք կոչին. որպէս կերակուրք և մերձաւորութիւնք[1]. քանզի միայնոյ մարմնոյ՝ ոչ ոք գտցէ առանձին հեշտութիւնս՝ այլ ախտս. որպէս վէրս և հոսմունս և զորս ըստ խառնուածոյն՝ որակութիւնս ։ Քանզի ամենայն հեշտութիւն ըզգայութեամբ է, և անձնական ցուցաք զզգայութիւնն ։

Եւ յայտ է 'ի բազմապատկապէս եղելոցն հեշտութեանց, քանզի այլ և այլս առնեն, որպէս փութալիքն[2] հեշտութիւնք և չարք, և ոմանք սուտք և ոմանք ճշմարիտք, և ոմանք մտացն միայն՝ ըստ մակացութեան, իսկ ոմանք մարմնոյն՝ ըստ զգայութեան. և նոցունց յորոց ըստ զգայութեանն՝ են ինչ որ բնաւորականք են, և են ինչ որ ոչ. և հեշտութեան՝ որ յըմբելոյն է՝ հակակայ է ծարաւոյն տրտմութիւն, իսկ որոյ ըստ տեսութեան՝ ոչ ինչ. արդ՝ այս ամենայն ցուցանեն զհեշտութիւնն համանուն ։

Իսկ 'ի մարմնականաց կոչեցելոցն հեշտութեանց՝ են

1 Յոյնն ունի. որպէս որք 'ի կերակրոց և 'ի մերձաւորութեանց (τάς συνουσίας).

2 Իմա, անձկալիքն հեշտութիւնք բարւոյն (αἱ σπουδαιαὶ ἡδοναί).

ինչ որ հարկաւորք են՝ համանգամայնք և բնաւորական, առանց որոց անկար է կեալ, որպէս կերակուրք՝ որք կարօտանայն են լցողականք, և հանդերձք հարկաւորք. և են ինչ՝ որ բնաւորականք են, բայց հարկաւորք ոչ են, որպէս ըստ բնութեանն և ըստ օրինացն խառնումն. քանզի այսոքիկ 'ի փոխանորդութիւն ամենայն ազգի կատարի. բայց կար է և առանց այսոցիկ՝ կուսութեամբ կեալ: իսկ ոչ հարկաւորք և ոչ բնաւորականք, որպէս արբեցութիւնք և վաւաշոտութիւնք և առաւելութիւնք՝ որ քան զպէտսն են գերազանցեալք. քանզի և ոչ 'ի փոխանորդութիւն ազգիս մերոյ նպաստ ինչ լինի, որպէս ըստ օրինացն մերձաւորութիւնն, և ոչ 'ի հաստատումն կենաց, այլ և վնասակարք ևս են:

Արդ, որ ըստ Աստուծոյ կեայն՝ զհետ ընթանալի է միայն հարկաւորացն և բնաւորականացն հեշտութեանց. իսկ յետ այնորիկ՝ յերկրորդ կարգի յառաքինութիւնսն կարգեցելոցն՝ զայսոսիկ և զբնաւորականսն՝ բայց ոչ հարկաւորս՝ փոխադրելի է, ըստ վայելուչ գոլոյ և յեղանակի և չափոյ և ժամանակի և տեղւոյ. իսկ զայլոցն՝ 'ի բաց փախչել ամենայն յեղանակաւ: Եւ պարզաբար համարելի է զայսոսիկ գոլ բարի հեշտութիւնս, զոչ շարամանեալսն ընդ տրտմութեան և ոչ զղջումն արարեալ, և ոչ ինչ այլ վնասու արարողականս, և ոչ զչափաւորուն զանց արարեալ, և ոչ 'ի փութալեայն գործոց զանձն[1] 'ի բաց քարշեալս կամ ընդ ծառայութեամբ արկեալս:

Եւ են տիրապէս հեշտութիւնք՝ որք յԱստուած հայելովն, և մակացութեամբք և առաքինութեամբք եղեալքն կամ շարամանեալք: Զորս ինչ՝ յորս ըստ յառաջնոյն բանի՝ փութալիս է դնելի, ոչ 'ի գոլն պարզաբար և ոչ յարամնայութիւն ազգի, այլ 'ի բարւոք գոլն, և փութացողացն և աստուածասիրացն գոլ կատարելիս, և նոյն 'ի մարդոյն ըստ անձինն և իմացականին կատարելութիւն. որ ինչ ոչ ուրախացուցիչք ախտից են, որպէս կարօտութեանն լցուցողականքն, և ոչ տրտմութիւն բնաւին ունին յառաջագոյն կամ զկնի կամ հա-

1 Յօրինակս ինչ՝ զմեզ:

կակայ, այլ են մաքուրք և անխառն յամենայն նիւթոյ շարամանութենէ, անձնականք միայն գոլով։ Քանզի և ըստ Պղատոնի 'ի հեշտութեանցն են ինչ՝ որ սուտ են, և են ինչ՝ որ ճշմարիտ. սուտք՝ որքան ինչ հանդերձ ըզգայութեամբն լինին, և կարծեօք և ոչ ճշմարտիւ, և տրտմութիւն ունին շարամանեալս. իսկ ճշմարիտ՝ որքան ինչ անձին միայնոյ են իւր ըստ ինքեան մակացութեամբ և մտօք և իմանալով, մաքուրք և անխառն 'ի տրտմութենէ, որոյ և ոչ մի զղջումն հետևի երբեք։ Եւ կոչեն զհետևեալսն տեսութեան և բարեաց գործոյ՝ հեշտութիւնս, ոչ ախտս՝ այլ հաւանումն. իսկ ոմանք տիրապէս զայսպիսիս հեշտութիւնս՝ խնդութիւնս ասեն։

Եւ սահմանեն զհեշտութիւն. Եղելութիւն 'ի բնութիւն զգայական [1]։ Եւ նմանեաց այս սահման՝ մարմնականին միայնոյ հեշտութեանն գոլ. քանզի այս՝ լրումն իմն է և բժշկութիւն մարմնականին կարօտութեան, և յառաջագոյն եղելոյն տրտմութեան՝ վասն կարօտութեանն. քանզի և ցրտացեալք և ծարաւեալք, զոր 'ի ցրտոյն կամ 'ի ծարաւոյն բժշկել զտրտմութիւնն՝ 'ի ջեռնուլն կամ 'ի յըմպելն հեշտանամք [2]։ Արդ՝ ըստ պատահման են բարի, և ոչ ըստ ինքեանց և ոչ բնութեամբ. քանզի որպէս ողջացուցանելն՝ ըստ պատահման է բարի, իսկ ողջն գոլ՝ բնութեամբ ըստ ինքեան. այսպէս և սոքա ըստ պատահման են բարի, բժշկութիւնք իմն գոլով. բայց տեսութեանն [3] հեշտութիւնք՝ ըստ ինքեանց են բարի և բնութեամբ, քանզի ոչ լինին 'ի վերայ կարօտութեան։ Արդ՝ յայտ է յայսմանէ թէ ոչ ամենայն հեշտութիւն՝ կարօտութեան է լցուցանողական, և թէ այս ոչ է առողջ սահման՝ որ ասեն՝ եղելութիւն 'ի զգայական բնութեան գոլ զհեշտութիւնն. քանզի ոչ զամենեսին պարունակէ հեշտութիւնս, այլ արտաքոյ թողու զորս 'ի տեսութենէն։

1 Պղատոնի է սահմանդ. (Ὁρίζονται δὲ τὴν ἡδονήν, γένεσιν εἰς φύσιν αἰσθητήν).

2 Զյունախօս խրթնաբանութիւնդ պարզելի է. Քանզի նեղեալք 'ի ցրտոյ կամ 'ի ծարաւոյ, հեշտանամք 'ի դարմանել (բժշկել) անդ զայնոսիկ՝ ջերմանալով և ըմպելով։

3 Իմա տեսականս հեշտութիւնք, զորս 'ի վերոյ մակացականս և իմացականս անուանեաց։

Եւ Եպիկուրոս սահմանելով զհեշտութիւնս՝ Ջերծումն 'ի տրտմութենէ, զնոյնն ասէ՝ զորոց ասենն՝ Եղելութիւն 'ի բնութիւն զգայական. քանզի զ'ի բաց վճարիլն 'ի տրտմութենէ՝ հեշտութիւն գոլ ասէ։ Իսկ վասն զի և ոչ մի եղելութիւն՝ զորս ինքն կատարէ, է համասեռ կամ փաղասեռ, (ապա) և ոչ զեղելութիւն հեշտութեանն՝ հեշտութիւն է համարելի, այլ այլ ինչ քան զհեշտութիւնն։ Քանզի լինելումն է եղելութիւն. և ոչինչ յեղելոցն համանգամայն լինի և եղև. այլ յայտ է թէ ըստ մասին[1]. իսկ հեշտացեալն յանկարծակի հեշտացաւ. ոչ ուրեմն է եղելութիւն հեշտութիւնն։ Եւս, ամենայն եղելութիւն ոչէից է, իսկ հեշտութիւն արդարև էիցըն, ոչ ուրեմն է եղելութիւն հեշտութիւնն։ Եւս, եղելութիւնն և վաղ և անագան ասի, իսկ հեշտութիւնն ոչ։

Եւս՝ 'ի բարեացն են ինչ՝ որ ունակութիւնք են, և են ինչ՝ որ ներգործութիւնք, և են ինչ՝ որ գործարանք։ Ունակութիւն՝ որպէս առաքինութիւնք, իսկ ներգործութիւն՝ որպէս գործն որ ըստ նմա։ Եւ դարձեալ, ունակութիւն՝ որպէս տեսողականն, ներգործութիւն՝ տեսանելն, իսկ գործարան՝ որով ներգործեմքն, որպէս ակն և հարստութիւն[2], և այսպիսիքս։ Ամենայն որ ինչ բարւոյ և չարին է անձնականք զօրութիւն, ունակութեանց ոմանց են զօրութիւնք. արդ, եթէ բարի է հեշտութիւն կամ չար, յայտոսիկ եղիցի միայն. այլ ունակութիւն ոչ է. քանզի ոչ իբրև զառաքինութիւն (է), զի ոչ արդեօք այսպէս դիւրաւ փոխարկիւր 'ի հակառակն իւր տրտմութիւն. և ոչ որպէս զհակառակացն պակասութիւնն, քանզի ըստ նորին ունակութիւն և պակասութիւն՝ անկար է գոլ. բայց համանգամայն ոմանք հեշտանան և տրտմին, որպէս որք քորինն. ոչ ուրեմն է ունակութիւն հեշտութիւնն։ Այլ և ոչ գործարան, քանզի գործարանք վասն այլոց և ոչ վասն ինքեանց. իսկ հեշտութիւնք ոչ վասն այլոց, այլ վասն ինքեանց. ոչ ուրեմն է և՛ ոչ գործարան և՛ ոչ ունակութիւն։ Արդ, պարտ է ներգործութիւն զնա գոլ ասել.

1 Այս է մի ըստ միոջէ, մասն առ մասն։

2 Յօրինակս մեր հարստութիւն (ըստ յունին πλοῦτος), այլ 'ի լուսանցսն հայեցուածին։

ուստի և Արիստոտելէս սահմանէ զնա՝ ներգործութիւն ըստ բնութեանն ունակութեան անխափան. քանզի խափանումն ըստ բնութեան ներգործութեան՝ տրտմութիւն է. այլ և երջանկութիւն ներգործութիւն է անխափան ըստ բնութեանն ունակութեան. և պատահի ըստ այսր սահմանի՝ երջանկութիւնն հեշտութիւն գոլ, և սխալել սահմանին։ Արդ՝ յուղղութիւնն ածեալ սահմանեաց (Արիստոտէլ) զհեշտութիւնն՝ կատարումն գոլ կենդանւոյն՝ ըստ բնութեանն անխափան ներգործութեանց. որպէս զի շարամանիլ և ՚ի միասին գոլ երջանկութեան և հեշտութեան, այլ ոչ հեշտութիւն գոլ զերջանկութիւնն (ասելի)։

Զի ոչ ամենայն ներգործութիւն շարժութիւն է, այլ է ինչ՝ որ ՚ի ձեռն անշարժութեան ներգործութիւն, ըստ որում նախ ներգործէն Աստուած. քանզի որ նախ շարժէն՝ անշարժ է։ Եւ այսպիսի է տեսանելոյն[1] ՚ի մարդիկ ներգործութիւն, քանզի ՚ի ձեռն անշարժութեան է. զի և տեսեալն մի և նոյն միշտ, և միտք տեսողին հաստատուն կան, քանզի ՚ի մի և նոյն միշտ հայի. իսկ տեսութեանն հեշտութիւն՝ մեծ գոլով և տիրապէս և ճշմարիտ՝ ՚ի ձեռն անշարժութեան լինի, յայտ է թէ որք ՚ի ձեռն նուազ շարժութեանցն լինին, որքան ՚ի ձեռն նուազիցն՝ այնքան և լաւագունին և մեծին են։

Եւ տարորոշին ըստ ներգործութեանցն հեշտութիւնք ըստ տեսակի. քանզի որքան ինչ ներգործութեան տեսակք են՝ այնքան և հեշտութեանցն, և լաւացն՝ լաւք, և վատթարիցն՝ վատթարք։ Եւ յայտ է թէ իւրաքանչիւրոցն զգայութեանց՝ այլք են տեսակաւ և հեշտութիւնքն, քանզի այլք են շօշափելեացն և ճաշակելեաց, և այլք տեսանելեացն և լսելեացն և հոտոտելեացն։ Քանզի մաքրագոյնք են ՚ի զգայութեանցն՝ որք ոչն մերձենան ՚ի զգալիսն հեշտութիւնս, որպէս երեւք և լսելիք և հոտոտելիք։

Եւ իմացողականացն տեսակք երկու. քանզի է ինչ՝ որ գործական է, և է ինչ՝ որ տեսական։ Արդ՝ յայտ է

1 Իմա՛ որպէս ՚ի վեր անդր զներգործութիւնն տեսական (իմացական) որ ՚ի մարդիկ։

թէ 'ի հեշտութեանցն՝ հետևեալք ներգործութեանցս այսոցիկ՝ տեսակք երկու, և 'ի սոցանէ մաքրագոյն է տեսականն քան զգործականն։ Եւ մարդոյ իւր՝ [1] ըստ որում մարդ է՝ իմացողականքն. քանզի հասարակաց է՝ ըստ որում կենդանի՝ զգայականքն, և յայլս [2] կենդանիս։ Իսկ վասն զի 'ի զգայականացն հեշտութեանցն ոմանք այլովք և ոմանք այլովք հեշտանան, ոչ վատթարիցն՝ այլ փութացողացն լաւք երևեալքն՝ և ըստ ինքեանց են լաւք. քանզի դատող ամենայն իրի ոչ անիմաստն՝ այլ հանճարեղն և որ ըստ բնութեանն կայ։

## ԳԼՈՒԽ ԻՆՆԵՒՏԱՍՆԵՐՈՐԴ

### Յաղագս Տրտմութեան։

Տրտմութեան տեսակք են չորք. խօշիւն, տագնապ, նախանձ, ողորմ [3]։ Եւ է խօշիւն՝ տրտմութիւն անբարբառութեան արարող, իսկ տագնապ՝ տրտմութիւն ծանրացուցիչ, նախանձ՝ տրտմութիւն 'ի վերայ այլոց բարեաց, իսկ ողորմ՝ տրտմութիւն 'ի վերայ այլոց չարեաց։

Եւ որպէս տրտմութիւն՝ չար է իւրով բնութեամբ, քանզի թէ և փութացողն՝ [4] տրտմեսցի երբեք յապականել արանց բարեաց կամ զաւակաց կամ քաղաքի աւերեցելոյ, այլ ոչ յառաջագոյն և ոչ ըստ յօժարութեան, այլ վասն վտանգի [5]. և յայսոսիկ՝ տեսականն անախտ եղիցի, ամենայն ամենայնիւ օտարացեալ զինքըն յայսպիսեացս և հպեցուցեալ յԱստուած։ Իսկ

1 Այսինքն է՝ իւր են, սեփականք են։
2 Օրինակք երկու, և առ կենդանիս։
3 Ἄχος, ἄχθος, φθόνος, ἔλεος.
4 Ի Յուսանցս անդ՝ առաքինին։
5 Օրինակք երկու՝ ըստ վտանգի։ — Կամի ասել զի թէ և արանց բարեաց է երբեք կրել տրտմութիւն վասն ինչ ինչ իրաց, այլ այն տրտմութիւն ոչ 'ի կամս նոցա է զգալ կամ ոչ զգալ, զի է այն հաւասարի իմն տարացոյց մարդկային տկարութեան, իսկ որ տեսական կենաց (vie contemplative) կեայ, յայսպիսի դէպս իրաց անխռով կայ միշտ, և այլն։

փութացողն՝[1] չափաւոր՝ ախտիւ 'ի նոսա, և ոչ գերազանցեալ և ոչ գերեալ 'ի նոցանէ, այլ յաւէտ յաղթելու եղեալ նոցա։

Եւ հակակայ է տրտմութիւն՝ որպէս լաւ վատթարի՝ չափաւոր հեշտութեամբ, և որպէս չար չարի՝ գերազանցեալ հեշտութեամբ։ Բայց 'ի մարմնականսն միայն լինին գերազանցեալքն. քանզի տեսականքն՝ ծայրագոյնք ոմանք են և կատարելութիւն ունելով՝ զգերազանցութիւնն ոչ մակընդունին. զի և ոչ հակակայ է նոցա տրտմութիւն, և յուրախութիւն յառաջագոյն տըրտմեալն[2] լինին։

## ԳԼՈՒԽ ՔՍԱՆԵՐՈՐԴ

### Յաղագս Սրտմտութեան*։

Սրտմտութիւն է եռանդն շուրջ զսրտիւն՝ արեան, 'ի վերծխութենէ մաղձոյ, կամ 'ի պղտորմանէ (մաղձոյ) եղեալ. վասն որոյ և դառնութիւն ասի և ցասումն[3]։ Եւ է երբեմն զի և սրտմտութիւն է հարկաւոր ցանկութիւն՝ փոխանակ պատժելոյ[4]. քանզի յորժամ անիրաւիմք (յայլմէ) կամ համարիմք անիրաւել՝ սրտմտիմք, և լինի յայնժամ խառնակ ախտն 'ի ցանկութեան և 'ի սրտմտութեան։

Եւ են տեսակք սրտմտականին՝ երեք, բարկութիւն (ὀργή) և դառնութիւն (χολή) և ցասումն (χόλος), որ կոչին[5] քէնք (μῆνις), ոխք (κότος). քանզի սրտմտու-

1 Լծմն. Փութացող՝ որ ոչ է կատարեալ, այլ դեռ սկսեալ։

2 Ի լուսանցս տրտմեցեալն գրեալ. Յոյնն ունի. Եւ ոչ 'ի յառաջագոյն ինչ տրտմութենէ յուրախութիւն գան։

* Յօրինակս ինչ յունականս, որպէս և 'ի տպագրի Ք. Մատթէի, այս գլուխ յետադասի՝ որում զկնի՝ Յաղագս Երկիւղի. այլ մեք ըստ բազում օրինակաց բնագրին և ըստ ձեռագիր օրինակաց մերոց՝ անփոփոխ կալաք զկարգն։

3 Ըստ յունին, զի ասի χολή և χόλος.

4 Յոյն բնագիրն ունի. Սրտմտութիւն է երբեմն և տենչ իմն վրիժահան լինելոյ։

5 Ըստ յունին ուղղելի է. Եւ են տեսակք սրտմտականին՝ երեք, բարկութիւն որ և դառնութիւն և ցասումն կոչի, և քէնք և ոխք։

թիւն՝ սկիզբն և շարժութիւն ունելով՝ բարկութիւն և դառնութիւն և ցասումն ասի. իսկ քէնք՝ դառնութիւն[1] 'ի հնութենէ եկեալ, և ասի առ 'ի մնալոյն[2] և յիշմանն աւանդելոյ. իսկ ոխք՝ բարկութիւն պատահեալ ժամանակի[3] 'ի պատժել. և ասի այս՝ առ 'ի կալոյն և մնալոյն[4]։ Եւ է սրտմտութիւն՝ սպասաւորական խոհեցողականին. քանզի յորժամ այսպէս արժանի պատժի եղեալս դատի, յայնժամ սրտմտութիւնն 'ի վերայ եղանէ, եթէ ըստ բնութեան զիւրեանցն կարգ պահէն։

## ԳԼՈՒԽ ՔՍԱՆԵՐՈՐԴ ԱՌԱՋՆԵՐՈՐԴ

### Յաղագս Երկիւղի։

Տարորոշի և երկեղ 'ի վեց. 'ի պակուցումն, 'ի խորշումն, յամօթ, 'ի հիացումն, 'ի զարհուրումն, 'ի տագնապ[5]։ Եւ է պակուցումն՝ մածումն արեան, և ընդարմացումն ոգւոյ[6], և երկիւղ ապառնոյ ներգործութեան։ Հիացումըն՝ է երկիւղ 'ի մեծ ինչ տեսութենէ։ Զարհուրումն՝ երկիւղ յանսովոր ինչ տեսութենէ։ Տագնապ՝ երկիւղ 'ի կործանմանէ, այսինքն 'ի վրիպանաց, քանզի երկուցեալք 'ի վրիպանաց գործոց՝ տագնապիմք։ Խորշումն՝ երկեղ յակնկալութենէ պարսաւանաց. և է գեղեցկագոյն այս ախտ։ Իսկ ամօթ՝ երկիւղ 'ի վատթար ինչ գործոյ. և ոչ այս՝ է անյոյս 'ի փրկութենէ։ Եւ այսու տարբերի խորշումն յամօթոյ, քանզի ոմն ամաչեաց՝ յորոց ինչ գործեացն, իսկ ոմն խորշեալ երկնչի զի մի

1 Ի լուսանցս անդ օրինակաց՝ բարկութիւն։

2 Յօրինակս մեր առ իմանալոյն. ուղղեցաք ըստ յունին, զի μένειν, մնալ, տոկալ լսի։ Եւ է ողջ իմաստ բանին. Իսկ քէնք ասի բարկութիւնն՝ որ յերկարեալ ձգի (ἀγομένη) ժամանակս ինչ, և առնու զկոչումն 'ի մնալոյն (παρὰ τὸ μένειν) և յաւանդելոյն առ յիշողութիւնն (τῇ μνήμῃ παραδεδόσθαι).

3 Իմա՛ որ զհետ է պատահելոյ ժամանակի (ἐπιτηροῦσα καιρόν).

4 Κεῖσθαι, ուշ ունել. կալ և մնալ։

5 Ὄκνος, αἰδώς, αἰσχύνη, κατάπληξις, ἔκπληξις, ἀγωνία.

6 Այսպէս միաբան յամենայն օրինակս մեր. իսկ 'ի յոյն բնագրին պարզապէս ասի. Եւ է պակուցումն՝ երկիւղ յապառնւոյ ներգործութենէ։

անկցի յանփառութիւն ինչ։ Բայց կոչեն բազումք յոլովակի և զխորշումն ամօթ, և զամօթ՝ խորշումն, վարեալք անուամբքն։

Եւ լինի երկեղ ընդ սոսկման իմն, ջերմութեանն ամենայնի՝ ընթացելոյ 'ի սիրտն՝ յիշխանականն կոյս, ըստ որում և ռամիկք՝ յորժամ երկիցեն՝ ապաւինին առ իշխանսն։ Իսկ տրտմութեան գործարան է բերան քաղրթին, քանզի այս է՝ որ զազդումն զգայ 'ի տրտմութիւնսն, որպէս Գաղիանոս յերրորդում [1] Ցուցականին ասէ. « Այսպէս տրտմեցելոցն՝ ոչ փոքր ինչ իջանէ յորովայնն խարտեաշ մաղձն, որ զազդումն առնէ [2] նոցա. և եթէ ոչ նախ 'ի բաց փախեսցեն զմաղձն, ոչ դադարեն 'ի տրտմութենէն »։ Քանզի լինի ազդումն նոցա 'ի ներքոյ ըստ միջակրծիցն [3] սրտատեսակին՝ անուանեցելոյ ջղուտ մարմնոյն. քանզի վերագոյն կայ սիրտըն քան զառագաստն. բայց որովայն 'ի վայր կոյս. իսկ սովորապէս հինքն զսիրտ՝ և զբերան որովայնին կոչեն։

## ԳԼՈՒԽ ՔՍԱՆԵՐՈՐԴ ԵՐԿՐՈՐԴ

*Յաղագս անբանին և անհնազանդին բանի։*

Արդ՝ հաւանականն բանի՝ է ըստ այսմ յեղանակի [4]. իսկ ոչ հաւանողք բանի են կերակրականն, ծննդականըն և շնչերակականն։ Եւ կոչի բնաւորական՝ կերակրականն և ծննդականն. իսկ կենդանական՝ շնչերակականն։

1 Յօրինակս մեր յերկրորդում ցուցականին, ուղղեցաք ըստ յունին։ Ցուցականն է Գիրք ցուցակութեանց։

2 Ի լուսանցս՝ տայ։

3 Ի լուսանցս՝ 'ի միջակրծիցն։ — Լուծումն. Ընդ ոսկր կրծիցն և ընդ սիրտն՝ 'ի միջի ջլուտ տեղի, զոր մեք սրտակրանք ասեմք։ Իսկ առագաստ ասէ զմզղնաձև մորթն՝ որ պատեալ է զսիրտն, և 'ի վեր ունի քան զորովայնն։

4 Այս է, ըստ եղանակին զոր կարգեցաք 'ի նախընթաց գլուխս։

# ԳԼՈՒԽ ՔՍԱՆԵՐՈՐԴ ԵՐՐՈՐԴ

## Ցաղագս կերակրականի։

Կերակրականին բնութեան՝ զօրութիւնք են չորք, քարշողական, ունակական, այլայլական, արտաքս վըտարական։ Քանզի իւրաքանչիւր 'ի մասնկանց կենդանւոյն՝ բնաւորապէս քարշէ յինքն զկերակուր, և քարշեալն՝ ունի, և կալեալն՝ յինքն փոխարկէ, և այսպէս զաւելորդսն արտաքս մղէ։ Եւ այսոքիկ են զօրութիւնքն՝ որք զկերակուրն մասնկանց մարմնոյն կարգաւորեն, յորոց աճումն նոր ըստ երկայնութեան և ըստ լայնութեան լինի։ Եւ արտաքս վտարին աւելորդքն՝ յաղբ և 'ի մէզ և 'ի փսխումն և 'ի քրտունս, 'ի ձեռն բերանոյն և 'ի ձեռն ունգացն և 'ի ձեռն ականջացն և 'ի ձեռն աչացն և 'ի ձեռն ընչոյն և 'ի ձեռն անյայտից վտառից։ Արդ՝ այլքն արտաքս առաքմունքն քաջայայտ են, իսկ որ 'ի ձեռն ականջացն՝ աղտն՝ որ 'ի նմանէ[1], 'ի ձեռն աչացն՝ արտասուքն և բիժ, 'ի ձեռն ընչոյն՝ լորձնատեսակութիւն ջերմութեան սրտին[2]։ Իսկ անյայտս վտառս կոչեն՝ զարտաշնչութիւն ամենայն մարմնոյն, ըստ որում 'ի խորութենէ և յանփոփմանէ 'ի խլրտականացն՝ շոգիք իմն բազում 'ի ձեռն անգայտութեան մորթոյն թափանցիկ լինի[3]։

1 Յոյնն ունի. «Որ 'ի ձեռն ականջաց՝ կոչեցեալն χοφέλη, որ է աղտն ականջաց»։

2 Τὸ λιγνυῶδες τῆς θερμότητος τῆς καρδίας. — Լծմն. Լորձնատեսակ աստ է զշունչն թանձրագոյն, որ 'ի սրտէն վերաբերի։

3 Լծմն. Խորութիւն և ամփոփումն զկերակուրն ասէ, թէ 'ի նորա խորանալոյն և յամփոփելոյն յորովայնն, և 'ի խլրամանէ նորա գնայցին ընդ երակ արեանն՝ յամէն մարմինն աւելորդքն արտաքս ծխին ընդ կակղագոյն մորթսն։ Կամ խորութիւն ասէ զթանձրութիւն մարմնոյ, և ամփոփումն խլրտական զխոնաւութիւն գիջութեանն՝ որ յինքն ամփոփեալ է. ասէ՝ թէ զաւելորդս արտաքս հանէ ընդ մորթն։ Եւ կամ խորութիւն ասէ զարձականալ մարմնոյն և ժողովել զխոնաւ գիջութեան 'ի կերակրոյն՝ նման սպունգի. իսկ 'ի խլրտմանէ՝ այսինքն 'ի փոքր կամ մեծ շարժմանէ և կամ յաշխատութենէ՝ յիրար ժողովի և ամփոփի 'ի մարմինն, և զունեալն (իմա զընկալեալն) գիջութիւն արտաքս մղէ ընդ անգայտն մորթ։

Եւ գործարանք են կերակրականին՝ բերանն և ատամունքն և որովայնն և լեարդն, երակքն ամենայն, աղիքն և մաղձքն երկոքեան և երիկամունքն։ Քանզի բերանն յառաջագոյն պատրաստէ որովայնին զկերակուր, մանրեալ զնա 'ի ձեռն ատամանցն և լեզուին. քանզի մեծ իմն պէտս ունի և լեզուին՝ ծամելիքն, ժողովեալ զկերակուրսն և ընդ ատամամբքն արկանել. որպէս որք յաղօրիսն [1] ձեռամբ զցորեանն (տան) երկանացն. քանզի յեղանակաւ իմն և լեզուն՝ ձեռն է ծամելեացն. այսպէս և գործեալ կերակուրն առաքի 'ի յորովայն 'ի ձեռն ատամունքին։ Քանզի ատամունքսն ոչ միայն գործարան են կարօտութեան [2], այլ և ճանապարհ կերակրոյն, քանզի յինքն ընդունի 'ի կլանելեացն զկերակուրն և առաքէ յորովայնն։ Իսկ որովայնին ընկալեալ՝ որոշէ զպիտանին և զանուցողն [3], և առաքէ առ լեարդն 'ի ձեռն երակացն՝ որք քարշենն 'ի նմանէ՝ որպէս ընդ ագուգայս ինչ՝ 'ի լեարդն, որք իբրև արմատք իմն են լերդին, քարշողք յորովայնէն զկերակուրսն, որպէս յերկրէ քարշեն տնկոցն արմատք։ Քանզի նման է որովայն՝ երկրի, որ տայ զկերակուր տնգոց. իսկ արմատոցն՝ երակքն, որ 'ի լեարդն կոյս [4] հանէ զհիւթն յորովայնէն և յաղեացն. իսկ ատեղանցն՝ նոյն լեարդն, իսկ ոստոց և ծայրիցն՝ երակքն՝ որ բաժանին 'ի փորոյն երակէն, որ ելանեն 'ի լերդին փորուածոցն։ Քանզի լերդին՝ ընկալեալ յորովայնէն զհիւթն՝ ամոքէ, և նմանեցուցանէ իւր. նմանեցուցանելովն արեան [5] զիւրն մարմին, վայելչաբար յարիւն փոփոխէ զհիւթն։ Իսկ արիւն մաքրի 'ի ձեռն փայծաղանն և մաղձընկալ ամանին և երի-

1 Յոյնն՝ αἱ ἀλετρίδες, այն է՝ կանայք և կամ կուսանք աղացողք կամ ալերագործք։

2 Իմա՛, որ ազդ առնէ 'ի մեզ՝ կարօտ գոլ կերակրոյ։

3 Օրինակք երեք՝ զանուցանողն։ — Յոյն բնագիրն յաւելու առտանօր. (Որոշէ զպիտանին և զանուցողն)՝ « 'ի քարային, 'ի փայտեղէն և յանսննդական մասանց. և զսննդական մասունս փոխարկելով 'ի մամաց, առաքէ զայն առ լեարդն », և այլն։

4 Յոյնն ունի. ἐπὶ τὰς πύλας καὶ τὰ σιμὰ τοῦ ἥπατος. այս է՝ առ դրունս և յափափայս լեարդին (հանէ) զհիւթն (χυμόν), յորովայնէն և յաղեացն 'ի ձեռն միջաղեաց (διὰ τοῦ μεσαραίου).

5 Յոյնն ունի. (Լեարդն) նման ունելով արեան՝ զիւրն մարմին (ὁμοιοτάτην δὲ ἔχον τὴν σάρκα τῷ αἵματι).

կամանցն. փայծաղանն՝ զմրուրն քարշեալ յինքն [1], իսկ մաղձընկալ ամանոյն՝ զդաժանն մնացեալ 'ի հիւթոյն 'ի կերակրոյն. իսկ երիկամանցն՝ զջրագոյն արիւնն [2]. որպէս զի մաքուր այնուհետեւ և պիտանի եղեալ արեանն՝ 'ի կերակուր բաշխեալ այլոցն ամենեցունց մասնկանց մարմնոյն՝ 'ի ձեռն սփռեցելոցն 'ի նոսա երակացն: Եւ այսպէս իւրաքանչիւր մասնկանցն քարշեալ զարիւն և կալեալ, և փոխարկեալ յիւր բնութիւնն՝ զաւելորդն առաքէ յորս մերձ են՝ կերակուր պատեհ լինել և նոցա: Եւ ըստ այսր յեղանակի ամենայն մասնկունքն յարենէն կերակրին և աճեն՝ բաշխեալ նոցա լերդին: Եւ ասի այս մասն անբանին՝ ոչ հաւանեալ բանի, վասն զի ոչ ըստ կամաց մերոց և ոչ յօժարութեան, այլ բնաւորապէս զիւրն գործ կատարէ:

## ԳԼՈՒԽ ՔՍԱՆԵՐՈՐԴ ՉՈՐՐՈՐԴ

*Յաղագս Ճնշերակաց:*

Ճնշերականն զօրութիւն՝ կոչի և կենդանական զօրութիւն. զսիրտն ունելով սկիզբն և մանաւանդ զձախակողմեանն նորա փորուած՝ զշնչականն կոչեցեալ. զբնաւորն և զկենդանականն ջերմութիւնն բաշխէ ամենայն մասանց մարմնոյ 'ի ձեռն շնչերակացն, որպէս և լեարդն 'ի ձեռն երակացն զկերակուրսն: Քանզի ջեռեալ սիրտն արտաքոյ բնութեանն՝ անդէն և բոլոր կենդանին արտաքոյ բնութեան ջեռնու, և ցրտացեալ՝ ցրտանայ. քանզի կենդանականն շունչ 'ի սմանէ 'ի ձեռն շնչերակացն ընդ ամենայն մարմինն սփռի:

Եւ 'ի միասին բաժանին՝ որպէս երևին միմեանց, որպէս երեքս այսոքիկ՝ երակ, շնչերակ, ջիղ, յերիցն սկզբանց՝ որք կարգաւորեն զկենդանին. 'ի գլխոյն՝ 'ի սկզբանէն շարժութեան և զգայութեան՝ ջիղ, 'ի լերդէն՝ յիսկզբանէն արեան և կերակրականէն կենդանականին՝

1 Յոյնն յաւելու. Եւ զնոյն առ 'ի սնունդ իւր ինքեան բաշխեալ (καὶ τροφὴν οἰκείαν ποιουμένου).

2 Օրինակք երկու՝ զջրագոյնն արեանն: — Յոյնն յաւելու՝ զոյգ ընդ մնացելոյ դառնութեանն.

*շնչերակն, աման շնչոյն [1]: Եւ 'ի միասին գոլով զառ 'ի միմեանց օգտութիւն ընդունին. քանզի և երակն կերակուր բաշխէ ջղին, և շնչերակն հաղորդեցուցանէ զերակն՝ ջերմութեան բնաւորականի և շնչոյն կենդանականի: Ուստի ոչ զշնչերակ է գտանել՝ առանց նուրբ արեան, և ոչ զերակ՝ առանց շնչոյ շոգետեսակի:*

*Եւ տարորոշի ուժգնակի և ամփոփի շնչերակ՝ ըստ յօդման իմն և բանի՝ սկիզբն ունելով շարժութեան 'ի սրտէն. այլ տարորոշեալ՝ յառընթերցն երակաց քարշէ բռնութեամբ զնուրբն արիւն, որ վերածխեալ՝ կերակուր լինի կենդանականի շնչոյն. իսկ ամփոփեալ՝ զբալատեսակն՝ որ յինքեան՝ թափէ 'ի ձեռն ամենայն մարմնոյն և անյայտիցն վտառից. որպէս 'ի ձեռն բերանոյն և ռնգանցն՝ սիրտն զլորձնատեսակն [2] 'ի շնչելն 'ի բաց մղէ:*

## ԳԼՈՒԽ ՔՍԱՆԵՐՈՐԴ ՀԻՆԳԵՐՈՐԴ

### *Յաղագս Ծննդականի կամ Սերմնականի:*

*Եւ ծննդականն է մասն անհնազանդ բանի. քանզի յոչ կամաց յերազսն արտաքս մղեմք զծնչականն. և ցանկութիւն ընդ միմեանս լինելոյն՝ բնաւորական է, քանզի յոչ կամաց շարժիմք 'ի նա. բայց գործն խոստովանելի է՝ զի 'ի մեզ է և անձնական. քանզի և 'ի ձեռն գործարանացն՝ որ ըստ յարձակմանն են՝ կատարի, և մեկուսիլն և ունելն զյարձակումն՝ 'ի մեզ է:*

*Իսկ գործարանք սերմնականին զօրութեան՝ նախ՝ երակքն և շնչերակքն. քանզի 'ի սոսա նախ ծնանի սպիտակաթոյրն խոնաւութ, փոխարկեալ յարենէ, որպէս*

1 Լծմն. « Եւ 'ի միասին բաժանելին ». այսինքն՝ 'ի միասին շնչերակքըն և երակ արեանն և ջիլն ընթանան ընդ ամենայն մարմինն. բայց բաժանեալ են 'ի միմեանց, ոմն շնչերակ, ոմն երակ, ոմն ջիլ: Ի լերդէն՝ իբր 'ի սկզբանէ՝ ելանէ երակն և սփռի ընդ ամենայն մարմինն. իսկ 'ի սրտէն՝ իբր 'ի սկզբանէ՝ ելանէ շնչերակն և խելացն ջիլն: Եւ ասէ՝ թէ երակն որ 'ի լերդէն՝ կերակուր բաշխէ ջլին. և շնչերակն հաղորդեցուցանէ զերակ արեանն և զջիլն՝ կենդանական զօրութեանն:

2 Լծմն. Լորձնատեսակ ասէ զթանձրագոյն շունչն, ընդ որ գիջութիւն բազում բերեալ լինի:

'ի ստինս կաթն. քանզի կերակուր է ամենից այսոցիկ հիւթս այս, զի և 'ի սկզբանն 'ի սերմանէ է լինելութիւն սոցա: Արդ՝ փոխարկեն շնչերակքն և երակք զարիւնն 'ի սպիտակաթոյր թանձրատեսակ խոնաւուտն՝ զի կերակրեսցին. իսկ աւելորդն կերակրոյն նոցա՝ լինի ծննդականն: Քանզի ելանէ նախ (ծննդականն) 'ի ձեռն բազում շրջագայութեանն՝ 'ի գլուխն, և դարձեալ՝ 'ի գլխոյն իջանէ ընդ երկուս երակս և ընդ երկուս շնչերակսն: Ուստի եթէ ոք կտրեսցէ զերակսն մերձ առ ականջսն յետուստ կուսէ, անսերմն առնէ զկենդանին:

Այսոքիկ երակք և շնչերակք՝ լինին գնդաձև իմն մանուած առ մնանամբքն, ուրանօր սպիտակաթոյրն հիւթ մտանէ, և անկանի յիւրաքանչիւր ոք յերկուորեացն. մինն շնչերակ և մինն երակ՝ լի սերմամբ. և 'ի սոսա բոլորովիմբք սերմնանայ. և ընդ գործարանն՝ որ 'ի նոցանէն՝ յառաջ ելանէ հանդերձ շնչովն, վասն զի և շնչերակ է որ առաքեն: իսկ վասն զի և ընդ երակն ելանէ՝ յայտ է 'ի վաւաշոտիցն, քանզի բազում անգամ յորժամ լինին ընդ միմեանս, և սպառի սպիտակաթոյրն հիւթ, յայնժամ 'ի բռնութենէ յաճախմանն՝ արիւն ընկենուն:

Իսկ և կանայք զամենայն զնոյն զարանցն ունին մասնըկունքն, այլ 'ի ներքուստ կուսէ և ոչ արտաքուստ: Արիստոտելէս և Դիմոկրիտոս՝ ոչ ինչ ախորժեն կատարել կնոջ սերման առ 'ի ծնունդն զաւակաց. քանզի 'ի կանանց զեկեալն յառաջ՝ քիրտն մասնկանն յաւէտ և ոչ ծնունդ գոլ ասեն: Բայց Գաղիանոս ըստգտանելով զԱրիստոտելէս՝ ասէ և՛ սերմն գոլ կանանցն, և՛ 'ի խառնըմանէ երկաքանչիւրեցն լինել զծնունդն. վասն որոյ և զընդմիմեանս լինելն՝ խառնումն ասեն. սակայն ոչ կատարեալ սերմն՝ որպէս առնն, այլ տակաւին խոնաւուտ իմն: Այսպիսի գոլով սերման կնոջ, կերակուր լինի առնն սերման, և 'ի յերկաքանչիւրեց՝ 'ի խինձս [1] արգանդին մածանի մանուկն [2]: Բայց յիւրաքանչիւր ազգ

1 Լծմն. Խինձ՝ զեսոր անկիւն արգանդին ասէ:

2 Ցոյնն ունի. Այնպիսի գոլով կազմութիւն սերման կնոջ՝ զի ծառայեսցէ 'ի սնունդ սերման առնն: Նոյնն մատակարարի նաև առ 'ի կազմութիւն մասին ինչ աղտին՝ որ մածանի յեղջերածոյրս (περὶ

կենդանւոյ՝ յայնժամ մատչի էգն առ արուն՝ յորժամ և ծնանելն կարէ. և որք միշտ ծնանելն կարեն՝ միշտ մերձենան 'ի զուգաւորութիւն. որպէս աքաղաղք և աղաւնիք և մարդիկ [1]:

## ԳԼՈՒԽ ՔՍԱՆԵՐՈՐԴ ՎԵՑԵՐՈՐԴ

*Այլ տարորոշումն զօրութեանց կենդանւոյ:*

Տարորոշեն և այլազգ զզօրութիւնս կենդանւոյն, և է ինչ՝ որ ասեն անձնականս, և է ինչ՝ որ բնականս, և է ինչ՝ որ կենդանականս: Անձնականս՝ զորս ըստ յօժարութեանն, իսկ բնականս և կենդանականս՝ զառանց յօժարութեանն: Եւ են անձնականք երկուք, ըստ յարձակմանն շարժութիւն և զգայութիւն: իսկ ըստ յարձակմանն շարժութեանն տեսակք՝ փոխանցականն և շարժական մարմնոյն ամենայնի, և ձայնականն և շնչառականն [2], քանզի 'ի մեզ է առնելն զայսոսիկ և ոչ առնելն: իսկ բնաւորականք և կենդանականք են՝ որ ոչ են 'ի մեզ, այլ և կամաւ և ակամայ [3] լինին. որպէս կերակրականն և աճողականն և սերմնականն՝ բնաւորականք գոլով, և շնչերականն կենդանական: իսկ գործաբանքն այլոց՝ յառաջագոյն ասացան. բայց ըստ յօժարութեան շարժութեանն՝ այժմ ասասցուք:

τάς κεραίας) արգանդին, որ և կոչի երշիկաձև (ἀλλαντοειδής), յորում իբրև յաման ժողովեալ ամփոփին աւելորդքն 'ի սննդոց սաղմին:

1 Ցոյն բնագիրն յաւելու և զհետագայսդ, որք պակասին յամենայն օրինակս մեր. « Ոմանք մինչդեռ յղիք են՝ խոյս տան 'ի մերձաւորութենէ խառնըման. այլ կին միշտ մերձաւորի: Քանզի և հաւք՝ որք աւուր աւուր ածեն, աւուր աւուր և մերձաւորին առ արուս: Իսկ կանայք՝ որպէս յայլում ամենայնի անձնիշխան կամօք վարին, այսպէս և 'ի խառնումն յետ յղութեան: Քանզի ոչ 'ի կամաց բերեալք, այլ 'ի բնութենէ վարին կենդանիք. զի բնութիւնն կանոնաւորէ զգործս նոցա և սահմանէ զեղանակ գործոյն և զդէպ ժամանակ »:

2 Ցօրինակս մեր պակասի շնչառականն, եդաք ըստ յունին, առ 'ի լրումն իմաստիցն:

3 Այս է. Ե՛ւ 'ի կամել անդ մեր և՛ յոչն կամել:

# ԳԼՈՒԽ ՔՍԱՆԵՐՈՐԴ ԵՕԹՆԵՐՈՐԴ

*Յաղագս ըստ յարձակման կամ ըստ յօժարութեան շարժութեան, որ է հարկաւոր ցանկականին։*

*Արդ՝ է ըստ յօժարութեանն կամ ըստ յարձակմանն շարժութեանն սկիզբն՝ խելքն և ողինն ուղիղ, մասն խելացն և նա գոլով։ իսկ գործարանք՝ 'ի սոցանէ բնաւորեալքն՝ ջիղք և շաղկապքն և մկունքն։ իսկ մկունքն շարակային 'ի մարմնոյ և 'ի ջղուտ նեարդից[1] շարամանեցելոց. ուստի ոմանք կարծեցին զնոսա զգայականս գոլով, վասն լինելոյն 'նոցա 'ի շարամանեցելոցն ջղաց զգայութեանց[2]։*

*Իսկ ձեռք են ընդունական գործարան, և են առ արուեստս պատեհագոյնք[3]։ իսկ ոտք՝ փոխանցական գործարան. քանզի ըստ տեղւոյն շարժութիւն 'ի ձեռն սոցա առնեմք[4]։*

*Արդ՝ որքան ինչ 'ի ձեռն ջղաց և մկանցն շարժի, այսոքիկ ամենայն անձնականք են, և ըստ յօժարութեան կատարին. սոցա ցուցակք գոլ (հպատակս) և զզգայութիւնսն և զձայնսն։*

1 Յոյնն յաւելու. Եւ 'ի նեարդալարից (ἐκ τενόντων).

2 Պակասին 'ի հայ թարգմանութեանս հետագայքդ, զորս յարէ աստանօր յոյն բնագիրն. « Եւ է նեարդալարն (ὁ τένων) կազմեալ 'ի շաղկապմանց և 'ի բաղմաշար նեարդից։ Եւ որոշի նեարդալարն 'ի նեարդէ այնու՝ զի ամենայն նեարդ զգայուն է, գլանաձև, կակղանիւթ, և ունի զսկիզբն իւր յուղեղէն. իսկ նեարդալարն առաւել պինդ, ոսկրային բնութեամբ, անզգայ ըստ ինքեան և երբեմն լայն (καὶ ἔσθ' ὅτε πλατύς).

3 Յոյն բնագիրն յաւելու. « Զի եթէ զրկիցի ոք 'ի ձեռաց կամ 'ի մատանց ևս, առ բազում արուեստս անպիտան գտանի։ Քանզի մարդոյ միայն՝ յամենայն կենդանիս՝ պարգևեցան ձեռք յԱրարչագործէն. զի և նա միայն բանաւոր ստեղծաւ և ճարտար առ 'ի գործ արուեստից »։ Յայտ է զի զձեռս կապկաց և այլոց ոմանց կենդանեաց՝ չհաշուի Նեմեսիոս ստուգապէս ձեռն, զի վարին նոքօք փոխանակ ոտից. և գրին արդարև ոտք առաջաւորք, նաև ըստ կենդանաբանից ժամանակիս։

4 Ի հայումս պակասին և ասա հետագայ բանք յոյն բնագրին. « Մարդ միայն յամենայն կենդանեաց կարէ նստել՝ անկարօտ յենլոյ. զի և նա միայն կարող է 'ի ձեռն բարձիցն և սրունից գործել ընդ մարմնոյն երկուս ուղղանկիւնս, զմին վերագոյն և զմիւսն ստորնագոյն »։

Արդ՝ այս է ըստ բանի անձնականացն և բնաւորականաց գործոց՝ գիտութիւնն ։ Իսկ Արարչագործն՝ ըստ ծայրագունին իւրոյ նախախնամութեան՝ շարամանեաց ընդ բնաւորականացն զանձնականսն ։ իսկ վասն զի արտաքս ելումն աւելորդացն՝ 'ի բաց վտարականին զօրութեան է, որ է մի 'ի բնաւորականացն զօրութեանց, զի մի անյօժարաբար ամօթալիք լիցուք, ուրանօր ոչ է պարտ և յորժամ ոչ է արժան՝ եկեալ յառաջ, դռնապանս իմն կարգեաց արտաքս ելիցն զմկունսն. և այսպէս արար զբնութեանն գործսն՝ անձնականս. քանզի զարտաքս ելսն պինդ ունել սովոր կարեմք յոլովակի և բազում անգամ։

Եւ առաջին զգայականքն և կակղագոյնքն ջիղքն՝ 'ի միջնոյն և զառաջնով կուսէ խելացն փորուածոյ. իսկ խստագոյնքն և շարժողականքն՝ յետուստ կուսէ փորուածին, և յողին ուղղոյ. և խստագոյնք են յաւէտ՝ որք յողանէն, և 'ի սոցանէ ևս յաւէտ՝ որք 'ի ներքուստ կուսէ ողինն. քանզի որքան առաւել զատանի 'ի խելացն՝ ողնն, այնքան առաւել խստագոյն լինին և ջիլքն 'ի նմանէ բուսեալք ։ Եւ որպէս զգայարանս կրկին առաք, այսպէս և զելս ջլացն կրկինս ունիմք. քանզի իւրաքանչիւր յօդ ողինն՝ զզոյգս ջլացն առաքէ յիւրմէ, մի յաջկոյս մարմնոյն և մի յահեակ ։ Քանզի գրեթէ ամենայն մարմինս յերկուս բաժանի՝ յաջ և յահեակ. այսպէս և ոտքն և ձեռքն՝ և այլքն ամենայն, որպէս և զգայարանքն ։

## ԳԼՈՒԽ ՔՍԱՆԵՐՈՐԴ ՈՒԹԵՐՈՐԴ

*Յաղագս Շնչոյ ։*

Եւ շունչ յանձնականացն գործոց է. քանզի և մկունք են՝ որ որոշեն[1] զախոնդանսն՝ զտիրագոյնսն գործարանս շնչոյն. և ժողովն[2] և հեծատեսակն շունչն՝ որ

1 Այսինքն է՝ ընդլայնեն. զի διαστέλλω, ունի զնմաստս մերձաւորս և ընդլայնելոյ և զատանելոյ ։

2 Իմա՛ զժողովելն նախ 'ի ներքս ամփոփմամբ զշունչն, և ապա հեծեծելով զնոյն արտաքս մղելն, և այլն ։

'ի մեծիցն տրտմութեանցն լինին, անձնական յուցանէ զներգործութիւնն ։ Բայց 'ի մեզ են և որք ըստ պիտոյիցն շնչոյն փոխարկութիւնք. քանզի խօթացեալ ինչ 'ի շնչականացն մասնկանց կամ յորոց ընդ նոսայն շարժին, կամ 'ի խցմանէ ինչ կամ 'ի լերդէ կամ 'ի փայծաղանէ կամ 'ի փորոյ կամ 'ի նուրբ աղեացն, փոքր և խիտ շնչեմք. փոքր՝ զի մի՛ ուժգնագոյնս ինչ [1] խոցեսցուք զխօթացեալն մարմին. իսկ խիտ՝ զի զպակասութիւնն որ ըստ մեծութեանն՝ խտութիւնն լցցէ ։ Քանզի յորժամ խօթանամք ինչ 'ի յոլոքոց, սակաւս շարժեմք զնա 'ի գնալ, վասն նորին պատճառի՝ վասն որոյ և զշունչն. արդ՝ և գնալն անձնական է, այսպէս և որ ինչ շնչոյն է ։ Այլ թէ և դադարեմք 'ի գնալոյ բազում ժամանակըս, կարեմք կեալ. բայց 'ի շնչոյ և ոչ տասներորդն մասն կիսաժամու միոյ դադարել կարողութիւն է. քանզի հեղձեալ 'ի մեզ ջերմութիւնն 'ի գոլոշոյ՝ շիջանի, և անդէն մահ ածէ 'ի վերայ. քանզի և զբոց ինչ եթէ ոք ծածկեսցէ յամանի իմիք, և ոչ ելցէ արտաքս շունչ նորա, շիջուցանէ զնա հեղձուցեալ 'ի ծխոյն ։ Արդ՝ վասն այսր հարկի և յորժամ 'ի քուն լինիմք, ոչ ինչ փոքր ներգործէ անձն ըստ այսր մասին, գիտելով որպէս զի թէ դոյզն ինչ հեղգասցի՝ ապականի կենդանին ։ Դարձեալ աստանօր ընդ անձնականին շարամանեցաւ բնաւորականն. քանզի 'ի ձեռն շնչերակին առնէ զներգործութիւն տուր և առ շնչոյն՝ գործարանին բնաւորականի և միշտ շարժեցելոյ, զի մի՛ երբեք պակասեսցի գործ նորա, որպէս և ոչ այլոցն շնչերակաց ։ Ուստի ոմանք ոչ եղեալ հասու՝ բնաւորական կարծեցին զոլ զտուր և առ շնչոյն ։

Եւ են երեք պատճառք տուր և առի շնչոյն. պէտք, զօրութիւն, գործարանք ։ Պէտքն կրկին (են), պահպանութիւն բնաւորականին ջերմութեան և սնունդ անձնականին օդոյ ։ Այլ պահպանութիւն ըստ բնութեան ջերմութեանն՝ 'ի ձեռն ներքս մտանելոյն և արտաքս ելանելոյն կայ հաստատուն. և է ինչ՝ որ մտիւք շնչոյն

1 Օրինակս երկուս՝ 'ի բնագրին, և այլոցն 'ի լուսանցսն՝ ուժգնագոյնիւն ։

ցրտացելոյ և չափաւորապէս զովացուցելոյ զջերմութիւնն, և է ինչ՝ որ արտաքս ելեալ՝ զծխատեսակն սըրտին արտաքս հեղու։ իսկ սնունդ անձնականին օդոյ՝ 'ի ձեռն միայնոյ տուր և առի [1] շնչոյն, քանզի քարշէ մասն ինչ յօդոյս՝ ըստ տարորոշից սրտին՝ [2] յինքն՝ զօրութեամբ անձնականաւ. քանզի նա է որ շարժէ զգործարան տուր և առի շնչոյն 'ի ձեռն մկանցն, և նախ զախռնդանսն. քանզի ընդ սմա շարժին թոքքն, և խոշորագոյնք շնչերակքն, մասն գոլով թոքոցն։ Քանզի 'ի խոշոր շնչերակացն՝ նեարդատեսակքն (են) ձայնին գործարանք, իսկ մզնատեսակքն նորա՝ կապք տուր և առի շնչոյն. իսկ յերկաքանչիւրեցս յայտացանէ՝ նոյն շնչերակք՝ (են) ձայնական համանգամայն և շնչական գործարան։

Որդ՝ են թոքք մանուած շարակայեալ 'ի չորից, 'ի խոշոր շնչերակէ և յողորկէ, և յերակէ և 'ի փրփրատեսակ մարմնոյ նորին թոքոցն, զոր մէջ ընդ մէջ եդեալ երկուց շնչերակացն և երակին, որպէս հաստատութիւն նոցա և կապ լինել նմա։ Եւ յինքն քարշէ մարմին թոքոցն բնաւորապէս զօդն, որպէս լեարդն զոր 'ի փորոյն հիւթ. և վասն այսորիկ որպէս լեարդն ծայրիւք բլթակացն իւրոց պատեալ ունի զորովայնն՝ զջերմութեանն կարօտն, այսպէս և թոքքն գիրկս արկեալ՝ 'ի միջի ունին զսիրտն՝ զկարօտն շնչոյ զովացման։ Եւ շարամօտի 'ի խոշորին շնչերակ՝ ըստ մերձ գոլոյն՝ քիմքն, շարակայեալ 'ի յերիցն 'ի մեծաց նեարդատեսակաց. և 'ի սա խռչափողն, և ապա բերանն և ռնգունքն. քանզի 'ի ձեռն երկոցունց քարշեմք արտաքուստ զօդս, և տարեալ լինի աստուստ 'ի ձեռն սպնգատեսակին ոսկեր, որ է ծակոտեալ. զի 'ի գերազանցութիւնսն [3] որ ըստ որակութեան օդոյս՝ ոչ ինչ վնասեսցին խելքն՝ յանկարծակի անկեալ օդոյն 'ի նմա։ Քանզի 'ի միասին վարեցաւ աստանօր ռնգամբքն՝ առ տուր և առ շնչոյն և առ հոտոն, որպէս լեզուաւ՝ առ ձայնն և ճաշակումն և

1 Իմա, 'ի ձեռն լոկ 'ի ներքս քարշելոյ (δίὰ μόνης τῆς ἀναπνοῆς).
2 Իմա ընդլայնելով սրտին, որպէս նշանակեցաւ 'ի վեր անդր։
3 Յունաբան դարձուածովքդ ասել կամի. Զի մի՛ գուցէ 'ի սաստիկ հոսանաց որակութեան օդոյ՝ վնաս ինչ հասանիցէ ուղեղին։

ծամելիսն։ Արդ՝ կատարելագոյնքն մանկունքն՝ առ 'ի նոյն գոյութիւն և առ կարևոր պէտս կենցաղոյս, անձնականօք տարրոյշին զօրութեամբք. իսկ թէ և պակաս ինչ է՝ յասացելոյս՝ դիւրատես եղիցի։

Եւ որպէս ամենայն եղեալքն՝ են ինչ՝ որ վասն ինքեանց եղեն, և են ինչ՝ որ վասն ինքեանց և այլոց, և են ինչ՝ որ վասն այլոց միայն, և են ինչ՝ որ ըստ պատահման առընթերեցան, այսպէս և 'ի վերայ մասնըկանցս կենդանւոյն զնոյն գտցես հետևումն. քանզի ասացեալքս ամենայն երիցս 'ի սկզբան գործարանք կարգաւորողաց կենդանւոյն [1], վասն ինքեանց եղեն. քանզի այսոքիկ՝ նախկին և ըստ առաջնումն բանի կազմեցան, որ և ըստ բնութեան տիրապէս ասին, և յարգանդին՝ նոյն 'ի սերմանէն առնուն զլինելութիւնն՝ որպէս և ոսկերքն։

Բայց խարտեաշն մաղձ՝ և՛ վասն իւր և՛ վասն այլոց (հաստեցաւ), քանզի առ 'ի յամոքումն կատարէ, և շարժէ զարտաքս ելանելն, և լինի ըստ այսոցիկ յեղանակաւ իմն՝ կերակրականացն մի իմն մասն. և ոչ միայն, այլ և ջերմութիւն իմն տայ մարմնոյն. որպէս կենդանական իմն զօրութիւն. արդ՝ այսոցիկ սակս՝ թուի վասն իւր եղեալ. իսկ մաքրելով զարիւնն՝ թուի վասն նորա եղեալ։

Իսկ փայծաղն ոչ փոքր ինչ նպաստ լինի առ 'ի յամոքել. քանզի կենդանապէս [2] գոլով և պինդ բնութեամբ, և զարտաքս ելանելն զյաւելուածոյն և սեաւ հիւթ՝ 'ի յորովայնն հեղլով՝ պնդէ զնա և տոկացուցանէ, և առ 'ի յամոքելն յորդորէ. իսկ առ այսոքիւք՝ և մաքրէ զլեարդն, վասն որոյ թուի ինքն իմն վասն արեանն եղեալ։

Իսկ և երիկամունքն՝ արեան մաքրութիւն են, և մարմնական ցանկութեանն՝ որ ըստ մերձաւորութեանն՝

1 Այսպէս մթին կամ խառնակ յամենայն օրինակս մեր։ Յոյնն գրէ. Քանզի այնոքիկ ամենայն՝ զորոց 'ի վեր անդր, որք վարին իբրև գործարանք՝ երրեակ կարգի կարողութեանց կենդանւոյն, վասն ինքեանց եղեն սեփականք։

2 Յոյնն՝ ὀξώδης γὰρ ὢν καὶ στρυφνὸς τὴν φύσιν. այս է. Քանզի որպէս (գառն) և թթուային ունելով զբնութիւն։

պատճառք. քանզի երակքն՝ զորս ասեմքն անկանել յերկուորիսն՝ ընդ երիկամունսն անցանեն, և անտուստ առնուն զդաժանութիւն իմն յորդորիչ ցանկութեանն, որպէս և զքորելն՝ դաժանութիւնն 'ի ներքոյ մարմնոյն առնէ. զի որքան փափկագոյն է մարմին երկուորեայն քան զմորթն, այնքան առաւել 'ի դաժանութենէն խառնեալ՝ մոլեցուցանէ զցանկութիւնն: — Այդ այսորիկ և այսպիսիքս յեղանակաւ իմն և՛ վասն ինքեանց և՛ վասն այլոց եղեն:

Իսկ գեղձքն որ 'ի խինձս մարմնոյն են և մարմինն՝ վասն այլոց միայն. զի գեղձքն հաստատումն են ամանիցն [1], զի մի՛ խորտակեսցին 'ի բռնի շարժութեանցն. իսկ մարմին՝ ծածկոյթ եղև այլոցն մասնկանցն. զի և 'ի հունձսն [2] զովացուցանէ զկենդանին, խոնաւեցուցանելով 'ի ներքուստ կուսէ [3]: իսկ մորթն ծածկոյթ եղև ամենայն մարմնոյն՝ որ 'ի ներքուստ կուսէ [4]: իսկ ոսկերքն՝ հաստատումն ամենայն մարմնոյն են, և մանաւանդ ողնայարին [5]: իսկ եղնգունքն՝ հասարակաց՝ որք ունին զնա՝ 'ի պէտս քորելոյ, և առանձին դարձեալ զատ 'ի յայսմանէ՝ այլ այլում [6]. քանզի բազմաց և գազանացն և՛ 'ի վրէժխնդրութիւն որպէս և կորամագիլքն, և են որպէս գործարանք իմն սրտմտականին. իսկ բազմաց և՛ 'ի վրէժխնդրութիւն, համանգամայն և՛ հաստատումն գնայից, որպէս ձիոց և այլոց միասմբակաց. և մարդկան՝ ոչ միայն 'ի քորելն և 'ի ցածուցանել զդաժանութիւն մարմնոյն, այլ և առ նուրբս ինչ ընդունել. քանզի ամենեւին զնուրբսն՝ սոքօք առնումք. և ծայրից մատանցն յետուստ կուսէ ընդդիմահար լեալ՝ սերտեն

1 Յօրինակս մեր ամենեցուն, ուղղեցաւ ըստ յունին:

2 Այս է՝ յամառն ժամանակի հնձոց:

3 Յոյն բնագիրն յաւելու. Ի ձեռն արտաշնչութեան, և ջերմացուցանէ 'ի ձմերան, ըստ օրինակի բրդեղէն Թանձր վերարկուի:

4 Պակասին դարձեալ 'ի հայ Թարգմանութեան յետագայ բանք բնագրին. Իսկ մարմին անդանայ 'ի բնէ՝ 'ի շօշափմանէ օդոյ և յամենայն հպելոց 'ի նա:

5 Յոյնն յաւելու և սա. Զոր և հեծան (τρόπις τοῦ ζώου) կենդանւոյն կոչեն:

6 Այս է. Առ այլս զանազանս՝ յայլ և այլ պէտս (տուան եղընգունքն):

զատս նոցունց։ իսկ մազ՝ ըստ պատահման ենթակայեալ. քանզի հիւթոցն ծխատեսակագոյնն՝ որ ելանէ 'ի մարմնոյն, մածումն իմն առեալ՝ որոց ըստ պատահմանն՝ հաստին։ Եւ ոչ զսա յամենեցունց անպիտան արար Արարչագործն, այլ և զըստ պատահման եղեալսն՝ 'ի ծածկոյթ և 'ի գեղեցկութիւն կենդանեաց պատրաստեաց. 'ի ծածկոյթ՝ այծից և ոչխարաց, իսկ 'ի զարդ՝ մարդկան, և ամենայն կենդանեաց՝[1] 'ի զարդ համանգամայն և 'ի ծածկոյթ։

## ԳԼՈՒԽ ՔՍԱՆԵՐՈՐԴ ԻՆՆԵՐՈՐԴ

### Յաղագս կամաւորի և ակամայի։

Վասն զի յոլովակի յիշեցաք զկամաւ և զակամայ, հարկ է և յաղագս այսոցիկ բուռն հարկանել, զի մի՛ 'ի ստոյգ գիտութենէն նոցա սխալեսցուք։ Եւ պարտ է՝ որ ոք հանդերձեալ իցէ յաղագս ակամայի և կամաւորի ասել ինչ, նախ՝ արտադրել կանոնս ինչ և քննութիւնս, որովք ծանօթ եղիցի եթէ կամաւ և եթէ ակամայ են եղեալք։ Արդ՝ վասն զի ամենայն կամաւոր՝ գործով իւիք է, և կարծեցեալն ակամայ՝ և նա գործով իւիք է, ցուցցի այս ոչ յետ յոլովից. իսկ ոմանք և զարդարև ակամայն ոչ միայն 'ի կրել, այլ և 'ի գործել դնեն. սահմանելի է նախ քան զայլսն՝ թէ զինչ է գործն։

Գործ՝ է ներգործութիւն բնական։

Իսկ գործոյն կամ գով և կամ պարսաւ հետևի. և են ինչ 'ի նոցանէն՝ որք հեշտութեամբ են, և են ինչ՝ որ տրտմութեամբ գործին, և են ինչ՝ որ հաճելիք են գործողին, և են ինչ՝ որ փախչելիք։ Եւ 'ի հաճելեացն՝ են ինչ՝ որ հաճելիք են միշտ, և են ինչ՝ որ ըստ ժամանակի իրիք. նմանապէս և 'ի փախչելեացն։ Եւ դարձեալ, են ինչ 'ի գործոցն՝ որ ողորմեալ լինին և թողութեան արժանաւորին, և են՝ որք ատեցեալ լինին և տանջին։

Արդ, եղիցին սահմանք կամաւորին ամենայն իրք՝

1 Յոյնն ունի. և ոմանց կենդանեաց, որպէս առիւծուց։

հետևելն գով կամ պարսաւ, և հեշտութեամբ գործելն, և հաճելիս գոլ զգործն գործողացն կամ միշտ և կամ յայնժամ՝ յորժամ գործենն։ իսկ ակամային սահմանք՝ թողութեան կամ ողորմութեան արժանաւորելն, և տրտմութեամբ գործելն, և ոչ հաճելիս։ Այսոցիկ այսպէս որոշելոց, ասասցուք նախ յաղագս ակամայիցն։

## ԳԼՈՒԽ ԵՐԵՍՆԵՐՈՐԴ

### Յաղագս Ակամայից։

Ակամային են ինչ՝ որ ըստ բռնութեանն, և են ինչ որ ըստ անգիտութեան։ Արդ՝ ըստ բռնութեան ակամայիցն՝ արարողականն սկիզբն արտաքուստ է. քանզի այլ է բռնութեանն պատճառ, և ոչ մեք։ Եւ սահման ըստ բռնութեան ակամային է. Որոյ սկիզբն արտաքուստ, ոչ ինչ նպաստ եղեալ՝ ըստ իւրում յարձակման բռնաւորեցելոյն։ Եւ սկիզբն ասի աստանօր արարողականն պատճառ։

Բայց խնդրի թէ և այս ակամայ, իբրև 'ի բաց ընկենուլ զբեռն 'ի նաւէ՝ զորս առնեն նաւորդք ձմեռնացեալք. կամ յորժամ ոք ամօթալի ինչ իրս յանձն առցէ կրել կամ գործել վասն ապրեցուցանելոյ զբարեկամս կամ զհայրենիս։ Եւ նման են յաւէտ[1] կամաւորք գոլ. քանզի վասն այսորիկ առընթեր կայ սահմանին՝ «Ոչ ինչ նպաստ լինել՝ ըստ իւրում յարձակման բռնաւորեցելոյն». զի 'ի վերայ այսպիսեացս կամաւորութեամբ ինքեանք իւրովի շարժեն զգործարանականսն մասնկունս, և այսպէս ընկենուն 'ի ծով զբեռինսն. Նմանապէս և որք զամօթալիսն կամ դժնդակս ինչ կրեն վասն մեծ բարւոյ. որպէս Զենոն՝ որ ծամեաց զիւր լեզուն և եթուք 'ի Դիոնիւսիս բռնաւոր, վասն և ոչ բնաւին ասելոյ զանճառելիսն[2]. Նոյնպէս և Անաքսարքոս

1 Այս է, թուին մեզ մանաւանդ կամաւորք լինել։

2 Այս է՝ ըստ յունին, զի մի զծածուկս գաղտնեաց իւրոց 'ի վեր հանել իւիք կարող գտանիցի։

իմաստասէր կրեաց 'ի Հիպիկռիոնտեայ[1] բռնաւորէ, յաղագս ոչ տալոյն յառաջ զբարեկամսն[2]։

Արդ՝ ըստ բոլորումն, կամ յորժամ վասն երկեղի մեծամեծ չարեաց՝ կրեսցէ ոք փոքր ինչ չար, կամ վասն յուսոյ մեծի բարւոյ՝ յանձն առցէ ոք փոքր ինչ չար, զոր ոչ է այլազգ կանգնել, ոչ ակամայ կրէ զգործն կամ զկիրսն. քանզի առնէ ըստ յօժարութեանն և ըստ ընտրութեան, և յայնժամ են հաճելիք՝ յորժամ գործինն, ըստ ինքեանց ոչ գոլով հաճելիք։ Եւ են խառն 'ի կամաւորէ և յակամայէ. յակամայէ՝ ըստ ինքեանց, իսկ 'ի կամաւորէ՝ յայնժամ վասն վտանգին. քանզի առանց վտանգի ոչ ոք արդեօք կամեսցի զայս գործել։ Եւ յայտ է և 'ի վերայ այսպիսեացս գործոց եղեալն գով կամ պարսաւ՝ թէ կամաւորք են, քանզի ակամայից գործոց՝ ոչինչ եղիցի գով կամ պարսաւ։

Բայց ոչինչ է դիւրին որոշել եթէ ո՛ր փոխանակ որո՛յ է հաճելի. պարտ է՝ որպէս երևինն՝ նախ քան զամօթալիսն ընդ տրտմելիսն հաճել. որպէս Շուշանն և Յովսէփ արարին։ Ոչ միշտ մեղադրելիք[3], իսկ Իւրեգինէս[4] վասն ոչ անկանելոյ յամօթ Եթովպացւոցն, զոհեալ՝ յամենայնէ արտաքս անկաւ[5]։ Այսպէս ոչ է դիւրին այսպիսեացս գիտութիւն։

Իսկ ևս դժնդակագոյն քան զայս է՝ անթուլաբար չարչարելն. զի ոչ նմանապէս զարհուրեցուցանէ չար ակընկալին և 'ի վերայ եկեալն. այլ է երբեք զի դատեալք՝ զարհուրիմք 'ի տանջանաց, նեղեալ 'ի չարչարանս։ Որպէս և պատահեաց ոմանց 'ի վկայիցն[6], քանզի 'ի սկըզ-

1 Յոյնն՝ Նիկոկրէոնտեայ (Νικοκρέοντος)։
2 Իմա՛, ոչ մատնելոյ։
3 Յոյնն ունի, Οὐχ ἀεὶ μέντοι, այն է՝ Այլ ոչ միշտ. հաւանօրէն զբառդ μέντοι ընթերցեալ է թարգմանչին μεμπτοί, որ է մեղադրելի։
4 Օրինակ մի՝ Որոգինէս։
5 Լծմն. Դեկոս հրամայեաց սև աւն ընդ նմա անկանել, և կամ զոհել. ոչ բարւոք ընտրեաց՝ զի զոհեաց. զոր չէր պարտ առնել, այլ կրել, թէ և ամօթալի էր գործն։ – Զգիտեմ ուստի առեալ Թիբալտ՝ 'ի գաղղիական թարգմանութեան իւրում՝ յարմարէ. Pour ne pas tomber dans les désordres des Ethiopiens, se rendit coupable de mutilation sur lui-même.
6 Յօրինակս երկուս՝ 'ի վկայելն։

բանն հանդուրժեցին, և յետոյ թուլացան 'ի տանջանացն[1], չարաչար խօթացեալք։

Բայց մի ոք կարծեսցէ զվաւաշոտութեանն ցանկութիւն կամ զսրտմտութիւն՝ յակամայից գոլ մեղաց, վասն զի և այսոքիկ[2] զսկիզբն արտաքուստ ունին՝ զարարողականն. քանզի յայնժամ գեղեցկութիւն պոռնըկին զլրբեցոյց 'ի վաւաշոտութիւն զտեսողն, և որ սըբեացն՝ շարժեաց զսրտմտութիւնն. քանզի թէպէտ և զսկիզբն արտաքուստ ունին, այլ ինքեանք 'ի ձեռն ինքեանց և գործարանականացն մասնկանց ներգործեն, և ոչ անկանին ընդ սահմանաւ ակամային, որ և զսկիզբն պատճառոյն յանձանց իւրեանց տան, վասն վատթարն գնացից՝ յախտից դիւրաւ գերեալք. քանզի պարսաւին որ զայսն գործեն, որպէս կամաւոր չար գործեալ։ Եւ զի կամաւոր է՝ յայտ է, քանզի հեշտութիւնք են 'ի գործն, իսկ ակամայն տրտմական ցուցաւ։

Արդ, վասն ակամային որ բռնութեամբ՝ այսոքիկ, իսկ յաղագս որոյ և վասն անգիտութեանն՝ ասելի է։

## ԳԼՈՒԽ ԵՐԵՍՆԵՐՈՐԴ ԱՌԱՋՆԵՐՈՐԴ

*Յաղագս անգիտութեան ակամայի։*

Բազում ինչ գործեմք վասն անգիտութեան՝ յորոց վերայ յետոյ խնդամք. որպէս յորժամ ոք յակամայ թշնամի սպանցէ, և խնդայ ընդ սպանումն. զայսոսիկ և զայսպիսիս կոչեն ոչ 'ի կամաց, սակայն և ոչ ակամայ։ Դարձեալ, գործեմք ինչ վասն անգիտութեան, և տրտմիմք 'ի վերայ եղելոյն. զայսոսիկ կոչեն ակամայս, որոց գործոց հետևի և տրտմութիւն։

Արդ, որոց վասն անգիտութեան՝ երկուք են տեսակք. մի՝ ոչ 'ի կամայն, իսկ միւս՝ ակամայն։ Եւ առաջին կայ այժմ ասել յաղագս ակամային. քանզի ոչ 'ի կամացն՝ կամաւորացն յաւէտ հետևի՝ խառն գոլով. զի զսկիզբն ակամայ ունի, բայց զվախճան կամաւոր. քանզի 'ի դիտ-

1 Օրինակ մի՝ 'ի տանջողացն։
2 Օրինակք ինչ՝ յայսոսիկ։

մանէ կամաւոր եղև ակամայն․ վասն որոյ և այսպէս սահմանեն զակամայն․ Ակամայ է՝ առ ոչ կամաւորն գոլ, տրտմական և ապաշաւանօք [1]․

Դարձեալ, այլ է վասն անգիտութեան ինչ առնելն և այլ անգիտացեալն․ քանզի թէ 'ի մեզ է անգիտանալոյն պատճառն՝ անգիտութեամբ առնեմք, բայց ոչ վասն անգիտութեան․ զի որ արբենայն և սրտմտի և առնիցէ վատթարս ինչ, ոմն զարբեցութիւն և ոմն զբարկութիւն [2] ունի պատճառ 'ի նմանէ եղելոցն, որք են կամաւորք, քանզի պարտ էր նմա ոչ արբենալ. ինքն ինքեան եղև անգիտանալոյն պատճառ։ Այսոքիկ ոչ վասն անգիտութեան ասին առնել, այլ անգիտացեալն գործել, որ ոչ են ակամայ, այլ կամաւոր․ վասն որոյ և պարսաւին 'ի պիտանեացն՝ որք զայսն գործեն․ քանզի թէ ոչ էր արբեցեալ՝ ոչ գործէր, այլ կամաւորութեամբ արբեցաւ, կամաւորութեամբ ուրեմն արար և զայսոսիկ։ Իսկ վասն անգիտութեան զայսոսիկ գործեմք, յորժամ ոչ մեք ինքեամբք տամք զպատճառն անգիտանալոյն, այլ այսպէս պատահեաց․ իբր զի 'ի տեղւոջ սովորականին նետ ձգելով, հօր իւրոյ յանցանել դիպեցոյց [3] և սպան։ Յասացելոցս ցուցանի՝ եթէ ոչ որ անգիտութեամբ զօգտակարսն, և ոչ որ կարծէն գոլ զվատթարսն պիտանիս՝ ախտ ակամայ կրէ․ քանզի իւրոյ դաժանութեանն է անգիտութիւնն․ պարսաւի և սա, և կամաւորացն է պարսաւ։

Ոչ ուրեմն ըստ բոլորումն և սեռականացն, և կամ որոց ըստ յօժարութեանն ակամայ է անգիտութիւն, այլ որոց 'ի մասնէ․ քանզի զորս ըստ իւրաքանչիւրումն՝ ակամայ, իսկ զորս ըստ բոլորումն՝ կամաւ անգիտանամք։ Այսոցիկ այսպէս որոշեցելոց, զկնի սորին ասելի է թէ ո՛րք են ըստ իւրաքանչիւրումն․ և են այսոքիկ՝ որք կոչին առ 'ի ճարտասանիցն՝ վտանգականք մասնկունք․ Ո՛վ, զո՛վ, զի՞նչ, ո՞ւմ, ո՞ւր, ե՞րբ, զիա՞րդ, վասն էր․ որգոն՝ դէմ, իր, գործարան, տեղի, ժամանակ, յեղա-

1 Այսինքն է, ակամայ ասի ոչ այնու միայն՝ զի յոչ կամաց է, այլ զի և տրտմութիւն և ապաշաւանս ածէ։

2 Յամենայն օրինակս 'ի լուսանցսն՝ զարտամտութիւն։

3 Ի լուսանցս՝ դիպաւ։

նակ, պատճառ։ Դէմ՝ որ առնէն և կամ առ որ գործն. իբր՝ թէ զհայր եհար որդի անգիտութեամբ։ Իսկ իր՝ նոյն գործեալն. եթէ ապտակել կամելով՝ կուրացոյց։ Իսկ գործարան, եթէ քար արձակեաց՝ կարծեցեալ կիսայր գոլ։ Իսկ տեղի, 'ի նեղի բեկանելով ինչ՝ եհար զոք անգիտութեամբ։ Իսկ ժամանակ, թէ 'ի գիշերի կարծեցեալ թշնամի գոլ զբարեկամ՝ եսպան։ Իսկ յեղանակ, եթէ հարեալ զգուշաբար և ոչ անազարմապէս՝[1] սպան, քանզի անգիտացաւ թէ 'ի հանդարտ հարկանելոյն մեռանիցի։ Իսկ պատճառ, եթէ ումն ետ դեղ ողջացուցանելոյ, և որ էառն մեռաւ, եղեալ դեղն՝ դեղ մահու։ Այլ զայս ամենայն համանգամայն՝ ոչ արդեօք մոլեգնեալ ոք անգիտասցի։ Իսկ որ գլորելս 'ի նոցանէ կամ զտիրագոյնս անգիտացեալ, սա վասն անգիտութեանն արար. և տիրագոյնք են յայտոսիկ՝ որոյ աղագաւն և զինչ գործեալն, այսինքն՝ պատճառն և իրն։

## ԳԼՈՒԽ ԵՐԵՍՆԵՐՈՐԴ ԵՐԿՐՈՐԴ

Յաղագս կամաւորի։

Ակամայն երկակի գոլով՝ վասն անգիտութեան և վասն բռնութեան, կամաւորն երկոցունց հակակայ է, քանզի ոչ բռնութեամբ է և ոչ անգիտութեամբ եղեալն։ Եւ է ոչ բռնութեամբն՝ որոյ սկիզբն 'ի նոսա. իսկ ոչ անգիտութեամբ, եթէ ոչ՝ յորոց ըստ իւրաքանչիւրումն ինչ իցէ՝ անգիտացեալ, վասն որոյ և որովք գործն։ Արդ, շարադրեալ զերկաքանչիւրսն՝ սահմանեսցուք զկամաւորն. Որոյ սկիզբն 'ի նմա, գիտողի զիւրաքանչիւրսն՝[2] որով գործն։

Բայց խնդրի, եթէ բնութեամբ եղեալքն՝ կամաւորք են. որգոն, ամոքելն և աճելն։ Եւ ցուցանին այսոքիկ ոչ կամաւորք և ոչ ակամայք. քանզի կամաւորն և ակա-

[1] Այսպէս յօրինակն. գուցէ անողորմապէս։ — Լծն. Ոչ անխնամ, կամ ոչ ուժգնագոյն և պինդ (μὴ ῥαγδαίως).

[2] Օրինակ մի՝ զորս ըստ իւրաքանչիւրոցն. օրինակք երկու՝ զորս ըստ իւր։ Կամի ասել. Կամաւոր է՝ որոյ սկիզբն 'ի գործողն է, որ գիտէն զմէն մի պատկանեալսն առ նոյն գործ։

մայն 'ի մեզ է, իսկ ամոքելն և աճելն ոչ է 'ի մեզ. ուստի թէ և զորս ըստ իւրաքանչիւրումն անգիտանամք, ոչ 'ի մեզ այնոցիկ գոլով, ոչ կամաւոր է և ոչ ակամայ։

Բայց որք վասն սրտմտութեան և ցանկութեան՝ ցուցան կամաւորք. քանզի յուղղութիւն եկեալ՝ գովի, և մեղուցեալ՝ պարսաւի կամ ատեցեալ լինի. և հեշտութիւն և տրտմութիւն հետևի նոցա. և սկիզբնն 'ի նոսա[1] է. քանզի 'ի նոսա է ոչ դիւրաւ ըմբռնելն յախտից, քանզի 'ի ձեռն սովորութեանց այսպիսիքս յուղղութիւն գան։ իսկ այլ ազգ. եթէ այսոքիկ ակամայք, ոչ ինչ յանբանիցն կենդանեաց կամաւ ինչ գործէ, այլ և ոչ մանկունք. բայց այժմ ոչ այսպէս ունի. քանզի տեսանեմք կամաւորութեամբ եկեալս զնոսա 'ի կերակուրս և ոչ բռնութեամբ. քանզի սոքա 'ի ձեռն ինքեանց դիմեալք, և ոչ անգիտութեամբ. քանզի զկերակուրն ոչ անգիտանան, զի տեսեալ զկերակուրն հեշտանան, և որպէս 'ի ծանօթ իր դիմեն, և վրիպեալ՝ տրտմին։ Եւ են կամաւորին հանդիպեցելոյն[2] հեշտութիւնք, իսկ վրիպեցելոյն՝ տրտմութիւնք. յորոց յայտ է՝ թէ կամաւոր ունի զցանկութիւնն և զսրտմտութիւնն[3]. քանզի և սրտմտութիւն հանդերձ հեշտութեամբ լինի։

Եւ այլազգ. եթէ ոք զոր վասն տրտմութեան և ցանկութեան՝ կամաւորս ոչ ասէ, 'ի բաց բառնայ զբարոյական առաքինութիւնսն. քանզի 'ի միջի են այսոքիկ ախտիցն։ իսկ եթէ ակամայ են ախտքն՝ ակամայ է և գործքն՝ որք ըստ առաքինութեանց, քանզի և սոքա ըստ ախտի լինին։ Եւ ոչ ոք ըստ խորհրդոց և յօժարութեան, ըստ իւրոյ յարձակմանն և փափագանացն՝ յետ ճանաչելոյն զիւրաքանչիւրսն՝ ակամայ ասէ. ցուցաւ և սկիզբն 'ի նոսա՝ կամաւոր ուրեմն։

Իսկ վասն զի յոլովակի յիշեցաք զյօժարութիւնն, և զոր 'ի մեզն՝ բուռն հարկանելի է և յաղագս նախայօժարութեանն։

1 Այս է՝ 'ի մարդիկ, 'ի մեզ։
2 Օրինակս ինչ՝ հանդիպելոյն... իսկ վրիպելոյն։
3 Ի լուսանցս օրինակաց՝ զտրտմութիւնն։

## ԳԼՈՒԽ ԵՐԵՍՆԵՐՈՐԴ ԵՐՐՈՐԴ

### Ցաղագս Նախայօժարութեան։

Զի՞նչ արդեօք իցէ նախայօժարութիւնն։ Արդեօք կամա՞ւն[1]. վասն զի ամենայն որ ըստ յօժարութեան՝ և՛ կամաւորի է. այլ ոչ արդեօք հակադարձ. էր՝ որ ինչ եղևն, եթէ նոյն էր կամաւն և յօժարութիւն[2]։ Բայց առաւելագոյն գտանեմք զկամաւն. քանզի ամենայն յօժարութիւն՝ կամաւ, բայց ոչ ամենայն կամաւն՝ յօժարութեամբ. քանզի և մանկունք և անասունք կամաւ առնեն, սակայն և ոչ նախայօժարեալք. և որքան ինչ վասն սրտմտութեան գործեալք, ոչ յառաջագոյն խորհեալք, զայսոսիկ կամաւորութեամբ առնեմք, սակայն ոչ և ըստ նախայօժարութեան. այլ և բարեկամ մեզ եկն յանկարծակի, կամաւորութեամբ՝ որպէս 'ի հեշտանալ, սակայն ոչ նախայօժարութեամբ. և որ գանձ ոք անկուսաբար գտանէ, կամաւորութեամբ գիւտիցն հանդիպեցաւ, բայց ոչ նախայօժարութեամբ։ Արդ՝ յամենեցունց ժողովի՝ ոչ նոյն գոլ կամաւորն և յօժարութեամբն։

Արդեօք հարկաւոր ցանկութիւնն է յօժարութիւնն։ Այլ և ոչ այս. քանզի տարորոշի հարկաւոր ցանկութիւնն՝ յերիս, 'ի ցանկութիւն և 'ի սրտմտութիւն և յախորժումն. այլ զի ոչ սրտմտութիւն և ոչ ցանկութիւն է յօժարութիւն, յայտ է յոչ ունելոյն կցորդութիւն մարդկան առ անասունս ըստ յօժարութեան, այլ ըստ ցանկութեան և սրտմտութեան. քանզի թէ և ըստ այսոցիկ հաղորդիմք, ըստ յօժարութեան տարբերիմք. յայտ է թէ ա՛յլ ինչ է յօժարութիւն և ա՛յլ սրտմտութիւն և ցանկութիւնն։ Ցուցանէ և անժուժկալն՝ ըմբռնեալ 'ի ցանկութենէ և գործեալ զնա. սակայն ոչ ըստ յօժարութեան, քանզի ընդդիմանայ 'ի նմա յօժարու-

1 Այս է՝ ազատական կամքն (τὸ ἑκούσιον, le libre arbitre).

2 Այսպէս խառնակ յամենայն օրինակս. յոյն բնագիրն ունի պարզորէն. «Այլ ոչ հակադարձն ճշմարիտ. և լինէր արդեօք ճշմարիտ՝ եթէ նոյն էր կամաւն և յօժարութիւնն»։

թիւնն՝ ցանկութեանն. իսկ եթէ նոյն էին՝ ոչ մարտընչէին: Եւ ժուժկալն՝ գործելով ըստ յօժարութեանն՝ ոչ գործէ ըստ ցանկութեան:

Իսկ զի և ոչ ախորժումն յօժարութիւն է, յայտ է յայսմանէ. ոչ ամենեցունց՝ որոց պատշաճն է նախայօժարել՝ նոցունց պատշաճ է և ախորժել: Քանզի ասեմք ախորժել զողջ գոլն, բայց նախայօժարել զողջ գոլն՝ ոչ ոք ասէ. և ախորժել հարստանալ, բայց ոչ ևս նախայօժարել հարստանալ ասի: Եւս, ախորժելն և 'ի վերայ տըկարիցն դասի[1], բայց նախայօժարելն՝ միայն 'ի վերայ որոց 'ի մեզն է: Արդ այսպէս՝ ասեմք անմահ լինել, բայց նախայօժար իմն անմահ լինել՝ ոչ ասեմք. քանզի ախորժելն՝ վախճանին է, իսկ նախայօժարութիւնն՝ որոց մերձ առ վախճանն: Ըստ նմին համեմատութեան ունի ախորժելին առ խորհելին. քանզի ախորժելի է վախճանն, իսկ խորհելիք՝ որք մերձ առ վախճանն: Եւս՝ զայսոսիկ միայն նախայօժարիմք, զորս 'ի ձեռս մեր կար համարիմք լինել. իսկ ախորժեմք և զորս ոչ 'ի ձեռն մեր կարն է լինել. որպէս յաղթել ումեմն զօրավարի:

Արդ՝ զի ոչ արտմտութիւն և ոչ ցանկութիւն է յօժարութիւն՝ բաւականապէս ցուցաւ: Իսկ զի և ոչ կարծիք՝ յայտ լիցի և 'ի ձեռն սոցունց ապացուցիցս, և 'ի ձեռն այլոց. քանզի կարծիք ոչ միայն որոց 'ի մեզն, այլ և 'ի մշտնջենաւորացն[2]: Եւս, զկարծիս և ճշմարիտ ասեմք և սուտ. իսկ զնախայօժարութիւնն ոչ ասեմք ճշմարիտ և սուտ: Եւ կարծիք՝ որոց ըստ բոլորումն, իսկ նախայօժարութիւնն՝ որոց ըստ իւրաքանչիւրիցն[3]. քանզի յաղագս գործելեացն է յօժարութիւն, և այսոքիկ ըստ իւրաքանչիւրիցն (են):

Այլ և ոչ խորհուրդ է նախայօժարութիւնն. քանզի խորհուրդ՝ է խնդիր յաղագս իրաց ինչ, իսկ յօժարութիւն՝ որ 'ի խորհրդոցն նախադատեալն: Արդ՝ յայտ է թէ խորհուրդ՝ 'ի վերայ տակաւին խնդրելեացն է, իսկ յօժարութիւն 'ի վերայ նախադատելոցն:

1 Իմա, և 'ի վերայ անկարելի իրաց ձգի, որք ոչ են ընդ մերով կարողութեամբ:
2 Իմա՛ ոչ միայն յածի զորովք 'ի մեզն, և այլն:
3 Կամի ասել զի կարծիք՝ լինին և զընդհանուր իրաց, այլ յօժարութիւն՝ զմասնականաց:

*Արդ, զոր ինչ ոչն է յօժարութիւն՝ ասացաւ, իսկ զոր ինչ էն յօժարութիւն՝ ասասցուք։ Յօժարութիւն է խառն իմն 'ի խորհրդոյ և 'ի դատողութենէ, խառն և 'ի հարկաւոր ցանկութենէ։ Եւ ոչ հարկաւոր ցանկութիւն է ըստ ինքեան, և ոչ խորհուրդ միայն, այլ 'ի սոցանէ իմն շարակացեալ. քանզի որպէս ասեմք զկենդանին յանձնէ և 'ի մարմնոյ շարակացեալ, և ոչ մարմին գոլ ըստ ինքեան կենդանին, և ոչ անձն միայն, այլ հանդերձ երկաքանչիւրիւքն, այսպէս և զնախայօժարութիւնն։*

*Արդ, վասն զի խորհուրդ իմն է՝ հանդերձ դատողութեամբ, թէպէտ և ոչ նոյն խորհուրդն[1], յայտ է և 'ի ստուգաբանութենէ. քանզի նախայօժարական է՝ մին քան զմիւսն յօժարականն[2], և ոչ ոք նախ դատէ ինչ՝ եթէ ոչ խորհեսցի, և ոչ յօժարի՝ եթէ ոչ դատեսցի։ Իսկ վասն զի ոչ զամենայն թուեցեալսն մեզ բարւոք գոլ 'ի գործ ածեմք, յայնժամ և նախայօժարութիւնն յօժարելի լինի, նախադատեալն 'ի խորհրդոց, յորժամ առնու զցանկութիւնն[3]։ Արդ՝ հարկաւորապէս նախայօժարութիւնն յայսոսիկ է՝ յորս և խորհուրդն։*

*Եւ ժողովի յայսցանէ, յօժարութիւնն գոլ՝ ցանկութիւն խորհրդական՝ որոց 'ի մեզն է առնելն, կամ խորհուրդ ցանկական՝ որոց 'ի մեզն է. քանզի նախադատեցելոցն 'ի խորհրդոյն՝ փափագեմք յօժարեալք։ Իսկ վասն զի զնախայօժարութիւնն ասացաք յայսոսիկ գոլ՝ յորս և խորհուրդն, յայտնեսցուք և յորս լինին խորհուրդքն և վասն որոյ խորհիմք։*

## ԳԼՈՒԽ ԵՐԵՍՆԵՐՈՐԴ ՉՈՐՐՈՐԴ

*Յաղագս որոց խորհիմքն։*

*Նախ քան զասելն յաղագս որոյ խորհիմք, վեհագոյն է որոշել թէ իւ տարբերի խնդիր 'ի խորհրդոյն. քանզի*

1 Թէպէտ և ոչ խորհուրդ սոսկ, ըստ յունին։

2 Ստուգաբանութիւնդ է ըստ յունին. զի προαιρετόν կազմի 'ի αιρετόν բառէ, որ է ընտրեալ, յօժարեալ. և 'ի πρό նախադրութենէ, որ նշանակէ փոխանակ, 'ի տեղի

3 Մթին է իմաստ, որում կամի ասել, զի յորժամ հակառակ բարւոյն գործեմք, ընտրութիւն մեր ոչ միայն կախեալ կայ 'ի խորհրդոց, այլ և զյօժարութենէ ցանկութեան։

ոչ է նոյն խորհուրդ և խնդիր [1], թէ և որ խորհին՝ խնդրելով ինչ խորհի, այլ յոյժ տարբերի։ Քանզի խնդրեմք թէ մեծ է քան զերկիր արեգակն. բայց ոչ ոք ասէ՝ թէ խորհիմք թէ մեծ է քան զերկիր արեգակն։ Քանզի է խնդիր՝ սեռ խորհրդոյ, զի յոլովագոյն ասի. քանզի ամենայն խորհուրդ՝ խնդիր է, բայց ոչ ամենայն խնդիր՝ խորհուրդ. այս ցուցաւ։ Իսկ նկատել՝ երբեմն 'ի վերայ խորհրդոյ ասեմք, որպէս մինչ նկատեմք թէ պարտ է նաւել. իսկ երբեմն 'ի վերայ հայելոյ, որպէս մինչ նկատեմք թէ պարտ է գրել։ Այսպէս ամբոխիմք յոլովակի անտարորոշաբար լսելով զանուանս, կարծելով նոյն գոլ զոչ նոյնն։

Արդ տարբերութեանցս այսոցիկ յայտնի եղելոյ, ասելի է այսուհետև յաղագս որոյ խորհիմքն։ Խորհիմք յաղագս որոց 'ի մեզն է առնելն, և 'ի ձեռն մեր կարելեացն լինել, և 'ի ձեռն անյայտիցն՝ ունողաց զվախճանն, այսինքն՝ որոյ մարթն է և այսպէս և այլազգ լինել։ Արդ՝ 'ի մեզն ասի, վասն զի յաղագս գործելեացն խորհիմք միայն. քանզի այսոցիկ առնելն՝ է 'ի մեզ. զի ոչ յաղագս տեսականին կոչեցելոյ իմաստասիրութեան խորհիմք. քանզի և ոչ յաղագս Աստուծոյ, և ոչ յաղագս 'ի հարկէ եղելոցն, (և 'ի հարկէ ասեմք, որք միշտ նոյնօրինակ լինին. որգոն, շրջադայի տարւոյն), և ոչ յաղագս միշտ միացելոյն և միշտ նոյնօրինակ եղելոյն. հիզան, արևելից և արևմտից. և ոչ յաղագս որոց բնութեամբն, բայց ոչ միշտ նոյնօրինակ եղելոցն, այլ յոլովակի. հիբար, ալևորելոյ վաթսնամենի, կամ մօրուս արձակելոյ քսանամենի. այլ և ոչ յաղագս որոց բնութեամբ, այլ այլազգ անսահմանաբար եղելոց. հիզան, յաղագս անձրևոց կամ երաշտից կամ կարկտի. այլ ոչ յաղագս որոց 'ի դիպմանէ լինել տասցելոցն, որ է 'ի վերայ սակաւաւոր հնարաւորացն։

Արդ՝ վասն այսորիկ է ինչ՝ որ 'ի մեզ ասի, և է ինչ՝ որ 'ի ձեռն մեր. վասն զի ոչ յաղագս ամենայն մարդկան, և ոչ վասն ամենայն իրի խորհիմք. քանզի և ոչ խորհիմք իսկ թէ զիարդ պատերազմունք, կամ զիարդ

[1] Խնդիր՝ իմա զքննելն (ζήτησις).

որք հեռին են 'ի մէնջ բնակեալք քաղաքավարիցն. այլ և ոչ յաղագս ամենայնի՝ որ 'ի ձեռն մեր լինին և'ի մեզն է առնել՝ խորհիմք. այլ պարտ է առընթեր կալ և անյայտ ունողացն զվախճանն. քանզի եթէ իցէ յայտնի և խոստովանելի, ոչ ևս խորհիմք: Չի և ոչ յաղագս որոց ըստ մակացութեան կամ արուեստի գործոց կամ իրաց է խորհուրդ. քանզի սահմանեալ են այսոքիկ բանք. բայց միայն 'ի սակաւուց արուեստից՝ կոչեցելոցն դիպողականացն, բժշկականին և կրթականի և ղեկավարականի: Քանզի ոչ վասն այսոցիկ միայն խորհիմք, այլ և յաղագս որոց 'ի մեզն է առնել և 'ի ձեռն մեր, անյայտ ունողացն զվախճանն, որոց կարի է և՛ այսպէս և՛ այլազգ գործել:

Եւ ցուցաւ թէ ոչ յաղագս վախճանին, այլ յաղագ- որոյ մերձ է առ վախճանն՝ է խորհուրդ. քանզի խորհիմք ոչ հարստանալ՝ այլ թէ զիա՞րդ և որո՞վք հարստասցուք. և միահամուռ ասել՝ յաղագս այսոցիկ միայն խորհիմք՝ որ հաւասարապէսն են հնարաւորք:

Եւ վասն այսոցիկ պարտ է բուռն հարկանել, զի մի՛ ինչ պակաս եղիցի բանիս առ 'ի հաւաստումն:

կարողութիւն ասին՝ ըստ որոց կարեմքն առնել. քանզի ամենայնի զոր ինչ առնեմք՝ կարողութիւն ունիմք, իսկ որոց ոչն ունիմք կարողութիւն՝ այսոցիկ և ոչ զառնելն: Արդ՝ բուռն հարեալ ունի առնելն զկարողութենէ, իսկ կարողութիւնն զէութենէ, քանզի առնելն 'ի կարողութենէ է, և կարողութիւնն յէութենէ և յէութեանն: Արդ, երեք են այսոքիկ՝ որպէս և ասացաք իսկ, որք զմիմեանց բուռն հարեալ ունին. կարողն, կարողութիւն, կարելին: Եւ է կարողն՝ էութիւն, յորմէ ունիմք զկարելն. իսկ կարելին՝ յոր ինչ ըստ կարող[1] բնութեանն բնաւորեալ է լինել:

Եւ 'ի կարելեացն են ինչ՝ որ հարկաւորք են, և են ինչ՝ որ հնարաւորք. հարկաւորք՝ զորս ոչն է կար արգելուլ, կամ որոց և հակակայն անկարելի. իսկ հնարաւորք՝ զորս կարն է արգելուլ, կամ որոյ և հակակայն՝ կարելի է: Հիկէն, հարկաւոր է տուրևառ շնչոյ կենդանւոյ. այ-

1 Բառդ կարող եդեալ է 'ի լուսանցս ամենայն օրինակաց:

սորիկ և հակական անկար, ոչն չնչել կենդանւոյն։ Իսկ հնարաւորն, այսօր անձրևն լինել. այլ հակական սորա կարելին, ոչն լինել այսօր անձրև։

Դարձեալ, հնարաւորին է ինչ՝ որ յոլովակի ասի, և է ինչ՝ որ սակաւաւորակի, և է ինչ՝ որ հաւասարապէս. յոլովակի, որպէս վաթսնամենին ալևորել. իսկ սակաւաւոր, որպէս ումեմն վաթսնամենի ոչ ալևորել. իսկ հաւասարապէս, գնալն և ոչ գնալ, և պարզաբար՝ գործելն ինչ և ոչ գործել։

Արդ՝ յաղագս այսոցիկ հաւասարապէս հնարաւորացն միայն խորհիմք։ Եւ է հաւասարապէս հնարաւորն՝ նոյն զոր կարեմքն և հակական նորա. քանզի թէ ոչ զերկոսին կարէաք՝ զնոյնն և հակական, ոչ արդեօք խորհէաք. քանզի ոչ յաղագս խոստովանելեացն և ոչ վասն անկարելեացն ոք խորհի։ Իսկ եթէ զընկերն միայն զհակակայիցն կարէաք, այս էր խոստովանելի, և ոչ ուրեք երկբայելիք. բայց հակական անկարելի։

## ԳԼՈՒԽ ԵՐԵՍՆԵՐՈՐԴ ՀԻՆԳԵՐՈՐԴ

### Յաղագս ճակատագրի։

Որք շրջաբերութեամբ աստեղաց զպատճառ եղելոցն ամենայնի մակագրեն, ոչ միայն ընդ հասարակաց մտածութեանցս մարտնչին, այլ և զամենայն քաղաքավարութիւն անպիտան ցուցանեն։ Ուրեմն անտեղիք են օրէնք, աւելորդք դատաստանք՝ որք պատժեն զմեղսաւորս, արտաքոյ բանի են պարսաւք և գովք, ոչ ինչ յօգուտ աղօթք՝ ամենեցունց ըստ բախտի և ճակատագրի եղելոց. արտաքսի և նախախնամութիւնն հանդերձ բարեպաշտութեամբ՝ առ 'ի մարդոյ՝ գործարան միայն գտանելոյ 'ի վերուստ շրջաբերութեանն. զի յայսմանէ շարժիլ առ գործսն՝ ոչ միայն որ ինչ մարմնոյ են, այլ և անձին իմացուածոց։ Եւ բոլորովիմբ՝ ո՛րք զայսն ասեն՝ 'ի բաց բառնան զոր 'ի մեզն է առնելն, և զհնարաւորին բնութիւն. և այսպէս ոչ ինչ է՝ այլ՝ քան թէ ամենեքեան ապականին։ Անիրաւք են նոյն աստեղքն, որք զոմանս շունս և զոմանս սպանողս գործեն։ Եւ նախ քան զայսո֊

սիկ՝ յարարչագործ Նոցա Աստուած տարեալ լինի պատճառն, եթէ այսպիսիս կազմեաց՝ որք զչարի բերումն 'ի մեզ՝ 'ի հարկէ դնեն 'ի վերայ. որպէս զի ոչ միայն 'ի վերայ քաղաքավարութեանն կալ սոցա անտեղութեանն, այլ և մեծամեծ չարեաց պատճառ երևեցուցանեն զԱստուած. առ և անկարելի ցուցանելով ենթադրութեանն նոցա [1]։ Այլ զայսոսիկ և ոչ լսել է կարևոր, քաջայայտ ունելով զհայհոյութիւնն և զանտեղութիւն։

Իսկ են որք ասեն թէ և որ 'ի մեզն է առնել և որ ըստ ճակատագրին՝ ամբողջ պահին. քանզի իւրաքանչիւրումն յեղելոցն՝ տուեալ ինչ է ըստ ճակատագրին. որպէս ջրոյ զցրտացուցանելն, և իւրաքանչիւր տնկոց՝ զայսպիսիսն բերել պտուղս, և քարի զ'ի վայր բերումն, և հրոյ՝ զ'ի վեր բերումն. այսպէս և կենդանւոյ՝ զհաւանելն և զյարձակելն[2]։ Իսկ յորժամ այսորիկ յարձակման ոչ ինչ կայցէ ընդդէմ յարտաքնոցն, և ըստ ճակատագրին յայնժամ գնալն կատարեալ 'ի մեզ գոլ, և ամենայն խոզք գնամք։ Որք զայսոսիկ ասեն Ստոյիկեանք, Քրիսիպպոս և Փիլիպատոս, և այլք բազումք և պայծառք, ոչ ինչ այլ ցուցանեն՝ քան եթէ զամենայն ըստ ճակատագրի լինել. քանզի թէ և զյարձակմունսն 'ի ճակատագրէն ասեն մեզ տուեալ, և զայսոսիկ երբեմն 'ի ճակատագրէն խափանեալս և երբեմն ոչ, յայտ է թէ ամենայն ինչ ըստ ճակատագրին լինի, և թուեցեալքն 'ի մեզն գոլ։

Եւ դարձեալ նոքումբք բանիւք վարեսցուք առ նոսա, ցուցանելով զկարծեացն անտեղութիւն։ Քանզի թէ նոցունց պատճառանացն շուրջ կալով, որպէս ասեն նոքա, հարկ է ամենայնիւ զնոյնս լինել, և ոչ գոլ կար երբեմն այսպէս լինել և երբեմն այլազգ գոլ, վասն այսպէս վի-

[1] Ի լուսանցս՝ ընթադրութեան. Եւ այսպէս պակասաւոր յամենայն օրինակս։ Լծմն. Մինչ զի անկար է ընթադրել զնոսա Աստուծոյ յիւրեանց չարութենէն։ — Յոյնն ասէ. Προς τῷ καὶ ἀδύνατον ἀποδείκνυσθαι τὴν ὑπόθεσιν αὐτῶν. որ է. Որ զի բնաւ իսկ անհնարին է լինել այդմ, զոր ենթադրեն, ցուցանէ բանն։

[2] Ὁρμᾷν, այս է ցանկալ, յօժարիլ. զի յոյն բառդ բազմադիմի և մասամբ յառաջ բերէ, յորս և զյարձակիլ. այլ ոչ 'ի ճահ աստանոր 'ի վար արկեալ 'ի թարգմանչէն, որ յոլով ուրեք բառից առաւել՝ քան թէ իմաստից թուի թարգմանիչ։

ճակելոյ նոցա յաւիտենից, հարկ է և յարձակման կենդանւոյն՝ ամենևին և ամենայն իրօք նոցունց պատճառացն շուրջ կալով այսպէս լինել։ Իսկ թէ և յարձակումն 'ի հարկէ հետևի, ուր է այնուհետև որ 'ի մեզն է առնել. և էր ազատ արդեօք, եթէ նոցունց պատճառացն ոչ շուրջ կալով 'ի մեզ էր երբեմն յարձակելն և երբեմն ոչ յարձակելն[1]։ Իսկ եթէ 'ի հարկէ հետևի և յարձակելն, յայտ է թէ ըստ ճակատագրին՝ և որ ըստ յարձակմանն[2] եղիցի. եթէ և 'ի մէնջ լինի և ըստ մերոյս բնութեան և՛ յարձակումն և՛ դատողութիւն. քանզի թէ կարողութիւն էր նմա և ոչ լինելն, սուտ արդեօք է առաջարկութիւնն, որ ասէ թէ նոցունց պատճառացն շուրջ կալով հարկ է այսոցիկ հետևել։

Այսպէս և 'ի վերայ անբանիցն և անշնչիցն գտցի. քանզի թէ զյարձակումն 'ի մեզ դասեն՝ եթէ բնութեամբ ունիմք զայս, զինչ արգելու և 'ի վերայ հրոյ ասել գոլ զայրելն, վասն զի բնութեամբ այրէ հուր. որպէս ուրեք երևեցուցանել նմանեցոյց Փիլոպատիւ՝ յորում[3] Ցաղագս ճակատագրին։

Ոչ ուրեմն է 'ի ձեռն մեր՝ 'ի ճակատագրէն եղեալն, 'ի մեզ է առնելն[4]. քանզի նովին բանիւ և 'ի վերայ քնարի և փողոյ և այլոց գործարանացն, և ամենայն անբանիցն և ամենայն անշնչից եղիցի իմն, յորժամ ոմանք 'ի ձեռն նոցա ներգործեն։ Այլ այս անտեղի է։

## ԳԼՈՒԽ ԵՐԵՍՆԵՐՈՐԴ ՎԵՑԵՐՈՐԴ

*Ցաղագս աստեղաց ճակատագրի։*

Իսկ առ իմաստունսն եգիպտացւոց, որք ասեն ճշմարիտ գոլ զոր 'ի ձեռն աստեղաց ճակատագիրն, բայց փոփոխիլ նմա աղօթիւք և հաշտեցուցողականօք, (քան-

1 Իմա՛, որպէս 'ի վեր անդր ասացաք, և՛ կամելն և՛ ոչ կամել։

2 Այս է, իրքն՝ որք վերաբերին առ յարձակումն, (առ ներքին շարժմունս հոգեկանս)։

3 Իմա 'ի ճառս անդ իւրում, որ Ցաղագս ճակատագրին։

4 Մթին և խառնակ թուի իմաստ յամենայն օրինակս մեր. իսկ յոյնն ունի. Ոչ ուրեմն՝ որ ինչ 'ի ձեռն ճակատագրին 'ի մեզ կատարի՝ ընդ մերովս է իշխանութեամբ։

զի ասեն գոլ ոմանց և սոցունց աստեղացս հանդարտեցուցիչս՝ որք յեղուն զսոսա, և այլս ոմանս գերագոյնս զօրութիւնս՝ որք փոփոխել զնոսա կարող են, և վասն այսորիկ աղօթս և պատարագս աստուածոց յաղագս հաշտութեան հնարաւորել), ասեմք՝ թէ 'ի հնարաւորաց և ոչ 'ի հարկաւորացն առնեն զճակատագիրն. իսկ հնարաւորն անսահման է, և անսահմանն անգիտելի: Արդ՝ 'ի բաց բառնայ այսու ամենայն դիւթութիւնք, մանաւանդ բախտիցն պատմողք[1], զորս նոքա նախ քան զայլսն ամենայն ընծայեցուցանեն՝ որպէս հզօր ինչ և ճշմարիտ իր:

Իսկ եթէ ասիցեն թէ և ձևոցն[2] կատարմունք՝ նախայայտնիք են, և մակացողացն ճանաչելի, իսկ յորժամ ձևքն՝ ոչ ըստ իւրեանց զօրութեանցն լինին՝ յԱստուծոյ արգելլան, ասասցուք թէ և այս անտեղի է. նախ՝ զի զաղօթսն միայն դնեն 'ի մեզ, և ուրախացուցանել զաստուածսն և այլ ոչինչ. և ապա վիճեսցուք ընդ նոսա, եթէ զիա՞րդ այլոցն ամենեցունց մարդկայնոցն գործոց և նախայօժարութեանց յորակի կալման աստեղացն գոլով՝ միայն աղօթիցն է 'ի մեզ: Տարակուսելի է այս՝ վասն զի՞նչ պատճառի ունի այս այսպէս, և զի՞նչ է հարկն:

Եւ ապա, եթէ արուեստ է և ըստերիւրումն ինչ յեղլոյն[3] զնոսա, և կամ արգելլոյ՝ զորս 'ի ճակատագրէն, արդեօք ամենայն մարդկան կարելի է ստերիւրել, եթէ ոմանց է և ոմանց ոչ: Քանզի եթէ ամենեցունց, ոչ ինչ արգելու բանիւ՝ ամենեցունց յեղուլ զճակատագիրն, ամենեցունց ունել զարուեստն՝ որ կարող է արգելուլ զկատարմունս նոցա: Իսկ եթէ ոմանց է հասանելի և ոմանց ոչ, ո՞ր արդեօք իցէ և ո՞վ է որ զայս տարասահմանեաց. քանզի թէ նոյն ճակատագիրն զոմանս առնէ ուրախացուցիչս[4] Աստուծոյ և զոմանս ոչ առնէ, գտցէ

1 Ի լուսանցս ամենայն օրինակաց՝ բաշխողք:

2 Լծմն. Եւ ասեն թէ աստեղացն ձևքն՝ զոր կրեն, որով զամենայն շարժեն, յայտնի է գիտողացն. որ երբ մառեխն ւ արեգակն 'ի մի կենդանակերպ լինին՝ խորովին 'ի յերերաց և այրեն զերկիր. և այլ այսպիսիքս՝ զոր ձև ասէ:

3 Ի մա՛յ յեղլոյ, յետս ընկրկելոյ զնոսա. (μέθοδος τῶν ἀποτροπιασμῶν).

4 Τοὺς θεραπευτὰς τοῦ θείου, նշանակէ սպասաւորքս աստուածութեան:

ամենայնն դարձեալ ըստ ճակատագրին. քանզի աղօթքըն և ուրախութիւնն՝ ոչ միայն ոչ 'ի մեզ տրուպ այժմ երևեցաւ քան զճակատագիրն, այլ և մեծագոյն ևս:

Իսկ եթէ ոչ ճակատագիր, այլ այլ ինչ է պատճառս այսոցիկ, նա յայտ է երևեցի ճակատագիր. քանզի կարելոյն 'ի ձեռն աղօթից յուղղութիւն ածել կամ ոչ կարելոյն՝ ամենայն իշխանութիւն ճակատագրին պարունակի. քանզի կարողացն՝ ոչինչ է ըստ ճակատագրին, իսկ անզօրացն՝ ամենայն ըստ ճակատագրի. և գտցի ոմանց 'ի մարդկանէ ամենայն ըստ ճակատագրի, և ոմանց ոչ ըստ ճակատագրի: Եւ յայտ է թէ որ զայսն սահմանէ՝ նա է տիրագոյն ճակատագիր. և այսպէս դարձեալ ամենայն ըստ ճակատագրի գտցի առ 'ի յանիրաւ գոլոյ՝[1] որ զայսն բաշխէ, թէ և դև ոք իցէ և եթէ այլ ոք ճակատագիր. քանզի ոչ ըստ արժանաւորութեան բաշխէ մարդկան զուրախութեան աստուածոցն հնարս: Զի զինչ յայտ ըստ արժանի է կամ նա, ամենեցունց գործարան գոլով ճակատագրին, և ոչինչ ոչ ուրուք յիւրմէ յօժարութենէ է գործեալ, յայտ զի և անյօժարաքար: Քանզի յայսպէս եղեալսն՝ ոչ ոք է արդար և ոչ անիրաւ. ապա ուրեմն ոչ արժանի և ոչ անարժան շնորհի, և հաւասարիցն անհաւասարն բաշխելն է անիրաւ:

## ԳԼՈՒԽ ԵՐԵՍՆԵՐՈՐԴ ԵՕԹՆԵՐՈՐԴ

Յաղագս որոց ասեն զյօժարութիւն գործոցն 'ի մեզ գոլ:

Իսկ որք ասենն զյօժարութիւն գործոցն 'ի մեզ գոլ և յօժարութեանն զեղլսն՝ ճակատագրին, որք են հեղղենացւոց իմաստասէրքն, է ինչ՝ որ ուղղակի ասեն, և է ինչ՝ որ սխալեն: Քանզի 'ի մեզ է եդեալն[2] զյօժարութիւն գործոցն, բայց ոչ ամենայն իրօք և զեղլսն, ուղղակի ասեն. իսկ 'ի ճակատագիրն հայեցուցանել զայսոսիկ՝ ոչ ուղղակի: Զի յանդիմանեսցին՝ նախ անկատար արարեալ զճակատագիրն, եթէ է ինչ զորս ունի և է ինչ զորս ոչն ունի, և ապա՝ հետևումն արարեալ զնա

1 Ըստ յունին իմա՝ անիրաւ գոլով և որ զայս բաշխէ:
2 Ի լուսանցս՝ դնելն:

մերոց կամաց։ Քանզի սմա հետևել ասեն զճակատագրին գործ. և այսպէս գտցի շարժեալ 'ի մէնջ յաւէտ՝ քան թէ շարժել զմեզ. և տիրագոյն է մարդ քան զճակատագիրն՝ որ տպացուցանէն զնա 'ի ձեռն իւրոյնն[1]։

Պարտ է նախախնամութիւն ասել պատճառ ելից գործոցն, քանզի նախախնամութեանն յաւէտ գործ է այս՝ քան եթէ ճակատագրի։ Զի նախախնամութեանն իւր է՝ իւրաքանչիւր ումեք բաշխել ըստ օգտի. և 'ի ձեռն այսոցիկ՝ յօժարութեանց ելք ըստ օգտի՝ երբեմն եղիցին, երբեմն ոչ եղիցին։

Իսկ ճակատագիր՝ յարմարումն իմն գոլով պատճառաց անվրիպութեանց, (քանզի այսպէս զնա սահմանեն Ստոյիկեանքն), այսինքն դասումն և մակշաղկապութիւն անվրէպ, ոչ ըստ օգտի, այլ իւրոյն շարժութեան և հարկի՝ 'ի վերայ ածէ զվախճանն։ Իսկ զինչ արդեօք ասիցեն վասն ամենեւին անմտիցն և յիմարացն, և վասն այսոցիկ անյօժարիցն. թերևս արդեօք ըստ ճակատագրին առնէ նոցա այսպիսի գոլ և կամ ոչ. և եթէ ոչ ըստ ճակատագրի, արտաքս անկցին 'ի ճակատագրէն. իսկ եթէ ըստ ճակատագրին՝ 'ի հարկէ հետևի՝ և ոչ զյօժարութիւնն 'ի մեզ գոլ. քանզի թէ յանյօժարականն 'ի ճակատագրէն, 'ի հարկէ և յօժարականն։ Եւ այսպէս վերստին դառնան յառաջինսն՝ որք ասենն զամենայնն ըստ ճակատագրին գոլ։ Աւելորդ է և մարտ խորհրդոց և ցանկութեան՝ 'ի վերայ ժուժկալին և անժուժկալին. քանզի եթէ 'ի հարկէ է սահմանեալ՝ ումեմն գործել և ումեմն ոչ գործել, զի՞ պիտոյ է նմա ամբոխմանն և վիճոյ։ Զի և այս ճակատագրեալ է՝ ոչ միայն գործել, այլ և այսպիսիս գործել։ Զինչ այլ ասէ՝ որ զայսն ասէ, բայց միայն և զյօժարութիւնն 'ի սահմանեցելոցն գոլ։ Քանզի յօժարութիւնն է՝ որ մարտնչին ընդ ցանկութեանն, և յաղթեալ ժուժկալիքն, և պարտեալ անժուժկալիքն[2]։

Ապա ուրեմն 'ի բաց բառնի՝ որ ինչ 'ի սկզբանէ ենթադրութիւնն նոցա է. զի ոչ ևս 'ի մեզ է յօժարութիւնն։

1 Այսպէս յօրինակս։ — Լծմն. Զի մեք յօժարիմք. և ապա նա տպել կարէ։

2 Կամի ասել՝ զի սեփական է յօժարութեանն՝ պատերազմել ընդդէմ ցանկութեանց. և յաղթել՝ 'ի ձեռն ժուժկալ մարդկան, և պարտել 'ի ձեռն վաւաշոտից։

## ԳԼՈՒԽ ԵՐԵՍՆԵՐՈՐԴ ՈՒԹԵՐՈՐԴ

*Յաղագս երէ զիարդ ասէ Պղատոն զճակատագիրն։*

Պղատոն՝ երկակի ասէ զճակատագիրն[1]. է ինչ՝ որ ըստ էութեան է, և է ինչ՝ որ ըստ ներգործութեան։ Ըստ էութեան՝ ասէ զամենեցունցն անձն մի. ըստ ներգործութեանն՝[2] աստուածային օրէնս անվրէպս, յորմէ ոչ է փախչել։ Եւ կոչէ զայս դրութիւնս անփախչելիս[3]. և զայս զօրէնս տուեալ լինել՝ յառաջագոյն և 'ի վերնագունէն Աստուծոյ՝ ամենեցունցն անձին, 'ի զարդ բոլորից իսկ՝ ըստ որում ասին եղեալք։ Եւ զայս զըստ ներգործութեանն ճակատագիրս և ըստ նախախնամութեան ասէ. քանզի նախախնամութենէն 'ի ներքս պարունակիլ սահմանէ ճակատագրին. զի ամենայն որ ըստ ճակատագրին՝ և ըստ նախախնամութեան լինել, այլ ոչ ամենայն որ ըստ նախախնամութեանն՝ և ճակատագրին գոլ։

Քանզի նոյնն աստուածայինն օրէնք, զորս ասէն գոլ նախախնամութիւն, համանգամայն և ճակատագիր, զամենայն յինքեան պարունակէ. է ինչ՝ որ ըստ ենթադրութեան, և է ինչ՝ որ յենթադրութենէ։ Քանզի զոմանս նախկին պատճառս՝ որպէս զսկզբունս ինչ ըստ ենթադրութեան ունի, որ է 'ի մեզն՝ հաւանութիւնք, դատողութիւնք, յարձակմունք. և են ինչ՝ որք 'ի հարկէ այսորիկ հետևին՝ յենթադրութենէ։ Եւ է 'ի մեզն յօժարութիւն գործոցն՝ ըստ ենթադրութեան 'ի ներքս կալով որոց 'ի մեզն. և 'ի սոցանէ որպէս յենթադրութեան՝ հետևին որք ինչ ճակատագրին են։ Որզան, 'ի մեզ կայ նաւելն, այն ըստ ենթադրութեան է. արդ 'ի ներքոյ կալով նաւելն մեզ՝ հետևի որ ինչ յայսմանէ իցեն՝ յենթադրութենէն նաւաբեկ լինել կամ ոչ։

1 Ի Հասարակապետութիւն մատենին, Գլ. Ժ։

2 Զէք յօրինակս մեր ըստ ներգործութեանն. յաւելաք ըստ յոյն բնագրին, առ 'ի լրումն իմաստիցն։

3 Ընտիր օրինակ մի՝ անփախչելիս.(Θεσμὸς ἀδραστείας).

վասն որոյ յենթադրութենէ կոչէ (Պղատոն) զորս զկնին երթան և հետևին՝ որոց 'ի մեզն ենթադրութեանց, այսինքն սկզբանց և գործոց. որպէս զի գոլ (ասէ) զնախկինսն և զորս 'ի մեզն՝ ըստ ենթադրութեան, իսկ զհետևեալսն՝ յենթադրութենէ, և ոչ 'ի մեզ, այլ 'ի հարկէ։ Քանզի ոչ 'ի մշտնջենաւորութենէ սահմանիլ (ասէ) զըստ ճակատագրին, այլ պատահիլ ('ի) նախկնագունիցն՝ որք 'ի մեզ։ Այսմիկ համաձայնի՝ և՛ պատճառ՝ առնելոյն, Աստուած անպատճառ է, և՛ ոչ ընդ իշխանութեամբ գոլն առաքինութեան, և՛ ունի զնախագիտութիւնսն գոլն [1]։

Բայց ձգի ամենայն բան նորա (Պղատոնի) 'ի յօժարութիւն գործոցն 'ի մեզն գոլն, բայց զհետևողսն նոցա և զվախճանսն՝ 'ի ճակատագրէն և 'ի հարկէ ցուցանել։ Եւ զայս ցուցաք յառաջագոյն՝ ոչ գոլ բարւոք։ Արդ՝ ըստ որում կոչէն Աստուծոյ հրամանս և կամս զճակատագիրն, և ըստ որում զճակատագիրն զհետ տանի նախախնամութեանն, սակաւ ինչ խոտորի յաստուածայնոյ գրոց, որ ասեն նախախնամութեան միայնոյ կարգաւորել զամենայն։ Իսկ յոլովակի[2] տարբերի ասելովն 'ի հարկէ հետևել վախճանին՝ որոց 'ի մեզն է առնել։ Քանզի մեք ոչ 'ի հարկէ ասեմք ածել զնախախնամութիւնն 'ի վերայ, այլ հնարաւորապէս։ Քանզի եթէ ըստ հարկի, նախ՝ զի բաղում մասն աղօթիցն խափանի[3], քանզի միայն վասն սկզբանցն գործոց եղիցի՝ որ ինչ աղօթիւք են՝ ըստ նոցա[4], որպէս զի զլաւագոյնսն առնուլ. իսկ յետ առնելոյն՝ 'ի նանիր են այնուհետև աղօթքն[5]։

1 Յոյնն ունի. Τούτῳ δὲ συμφωνεῖ καὶ τὸ, αἰτία ἑλομένου, Θεὸς ἀναίτιος, καὶ τὸ, ἀδέσποτον εἶναι τὴν ἀρετὴν, καὶ τὸ, εἶναι μαντείας. — Որ է ասել. Եւ համաձայն գտանի այս ընդ այն՝ զի յանցումն առընտրողն հայի, և զի Աստուած ոչ է պատճառ (յանցմանն). և դարձեալ՝ զի առաքինութիւն ոչ ընդ բռնադատութեամբ է, և եթէ՝ նախագուշակութիւնք (ըղձութիւնք) գոն։

2 Օրինակք երկու՝ ըստ յոլովակի։

3 Յօրինակսն՝ 'ի լուսանցս դնի հատանի։

4 Իմա՛ ըստ Պղատոնի կարծեացն հաւանողաց։ — Լծմն. Եւ միայն վասն սկզբանցն է 'ի մեզանէ աղօթելն, որ 'ի բարի սկսումն լինի. և հարկաւ կատարի՝ թէ 'ի բարի սկսաւ՝ 'ի բարի, և թէ 'ի չար՝ 'ի չար։

5 Յոյն բնագիրն յաւելու. Τῶν ἑπομένων πάντως ἐξ ἀνάγκης ἐπαγομένων. Որ է. Զի ամենայն՝ որ զկնի գայցեն (սկսանելոյն) 'ի հարկէ բերիցին։

Բայց մեք և 'ի վերայ այսորիկ[1] կարող գոլ սահմանեմք զաղօթսն. քանզի 'ի վերայ Նախախնամութեանն գոլ սահմանեմք զնաւաբեկն լինել կամ ոչ. ոչ 'ի հարկէ զմինն նորա[2], այլ հնարաւորապէս. քանզի ոչ ընդ հարկիւ է Աստուած, և ոչ զկամս նորա՝ ծառայել հարկի պարտ է ասել, քանզի և հարկի արարչագործ է։ Հարկ 'ի վերայ եդ աստեղաց՝ որպէս զի միշտ նոյնօրինակ շարժել, և զծով շուրջանակի սահմանեաց, և որոց ըստ բոլորումն և սեռականագունիցն՝ սահման հարկաւոր եդ։ Զոր թէ կամիցին կոչել ճակատագիր, վասն ամենեւին և ամենայն իրաց այսպէսն լինել ըստ հարկի. որպէս ամենայնի ըստ փոխանորդութեան եղելութեամբ՝ ապականիլ, և ոչ մի բան է[3]. քանզի վասն անուանցն ոչ վիճիմք ընդ նոսա։

Զի նա (Աստուած) ոչ միայն արտաքոյ է ամենայն հարկի, այլ և տէր և արարիչ է. քանզի իշխանութիւն գոլով և բնութիւն իշխեցողական, ոչինչ ոչ 'ի բնութենէ հարկի և ոչ 'ի դրութենէ օրինաց առնէ, այլ են նմա ամենայն հնարաւորքն։ Եւ զի այս ցուցցի, զտեղի կացոյց երբեմն զընթացս արեգական և լուսնի, որք 'ի հարկէ բերեալն լինին և միշտ նոյնօրինակ ունին. զի ցուցցէ՝ ոչինչ նմա ըստ հարկի լինել, այլ ամենայն ըստ իշխանութեան հնարաւոր։ Միանգամ արար զայսպիսին օր, որպէս նշանակէ աստուածայինն գիր, զի միայն ցուցցէ, և ոչ լուծցէ զդրութիւն զիսկզբանէ եդեալն նորա 'ի հարկէ բերմանն աստեղաց։ Այսպէս և զոմանս 'ի մարդկանէ 'ի կենդանութեան պահէ, որպէս զԵնովք և զԵղիայն՝ մահկանացուս գոլով և ընդ ապականութեամբ. զի ամենեքումբք այսուքիւք զիշխանութիւնն նորա և զանհարկաւոր կամսն նորա 'ի միտ առցուք։

Իսկ Ստոյիկեանքն ասեն՝ անդրէն հաստուցանել զմոլորակսն 'ի նոյն նշան՝ ըստ երկայնութեան և լայնութեան, ուրանօր իսկզբան իւրաքանչիւր ոք էր, յորժամ նախ աշխարհս հաստատեցաւ. ժամանակացն շրջագայութեամբքն՝ յեղումն և ապականութիւն էից առնել, և

1 Յոյնն՝ ի վերայ այսոցիկ (ἐπὶ τούτοις), այն է, 'ի վերայ իրաց՝ որք զհետ գան սկսանելոյն։

2 Իմա զմինն յերկուց, այն է՝ կամ նաւելոյն կամ նաւաբեկելոյն։

3 Լծմն. Եւ ոչ մի բան է մեզ ընդ նոսա հակառակելոյ։

դարձեալ սկզբամբ 'ի նոյն աշխարհ հաստուցանել։ Եւ աստեղացն՝ նմանապէս անդրէն բերեցելոցն իւրաքանչիւրիցն յառաջնում շրջագայութեան եղելոցն՝ անվրէպ նմանութեամբ կատարիլ։ Քանզի լինել դարձեալ Սոկրատեայն Պղատոն, և զիւրաքանչիւր ոք 'ի մարդկանէ հանդերձ իւրեանցայնովքն և բարեկամօք, և քաղաքավարութեամբ. զնոյն գործել, և նոցունց հանդիպել, և 'ի նոյնս ձեռնարկել, և զամենայն քաղաք և գեօղ և ագարակ՝ նմանապէս հաստատել, և լինել զանդրէն հաստատութիւն ամենայնի. ոչ միանգամ, այլ յոլովակի, յաւէտ՝ զի անբաւս և անվախճանապէս զնոյնս լինել[1]։ Իսկ զԱստուածս՝ որք ոչ ընդ ապականութեամբ այսմիկ հետևեալս, միով շրջագայութեամբս՝ դիտել յայսմանէ զամենայն հանդերձեալսն լինել՝ յորս զկնի շրջագայութիւնս. քանզի ոչ ինչ օտար լինել քան զեղեալսն յառաջագոյն, այլ ամենայն նոյնօրինակ, անվրէպ նմանութեամբ մինչև ցտրուպն. և վասն այնորիկ կարծեն Ստոյիկեանքդ՝ անդրէն հաստատութեանս՝ ասեն քրիստոնեայք զյարութիւնն լինել։ Արդ՝ բազումք են մոլորեալք։ Այլ մի անգամ, և ոչ ըստ շրջագայութեան լինել զյարութիւնն պատմեն աստուածայինքն ասացեալք։

## ԳԼՈՒԽ ԵՐԵՍՆԵՐՈՐԴ ԻՆՆԵՐՈՐԴ

*Յաղագս որ 'ի մեզն է առնելն, որ է՝ անձնիշխանականին։*

Որ յաղագս անձնիշխանականին բան, այսինքն՝ որ 'ի մեզն է առնելն, նախ ունի խնդիր թէ իցէ 'ի մեզն. քանզի բազումք են որ ընդդիմանան այսմիկ. իսկ երկրորդ, եթէ ո՞յք են որք 'ի մեզն են, և ո՞յց ունիմք իշխանութիւն. երրորդ, զպատճառն խնդրել՝ վասն որոյ որ արարն զմեզ Աստուած՝ անձնիշխան արար։

Արդ՝ բուռն հարեալ յաղագս առաջնոյն նախ՝ ասաս-

[1] Տարօրինակդ այդ վարդապետութիւն՝ պաշտպանեալ՝ 'ի նախնի Ստոյիկեանց՝ հերքեցաւ յետ ժամանակաց 'ի նոցունց իսկ յաշակերտելոց անտի աղանդոյն։

ցուք, ցուցանելով թէ է ինչ՝ որ 'ի մեզն է առնել. յորոց և նոքայն խոստովանին, եղելոցս ամենեցունց՝ կամ զԱստուած, ասեն, գոլ պատճառ, կամ զհարկ, կամ զճակատագիր, կամ զբնութիւն, կամ զբախտ, կամ զինքնամատոյցն[1]։ Այլ Աստուծոյ գործ է էութիւն և նախախնամութիւն. իսկ հարկի՝ միշտ նոյնօրինակ ունողացն զշարժութիւնն. իսկ ճակատագրի՝ 'ի հարկէ 'ի ձեռն նորին կատարիլն, քանզի և սա (ճակատագիրն) հարկին է. իսկ բնութեան՝ լինելութիւն, աճումն, ապականութիւն, տունկք և կենդանիք. բախտի՝ պակասքըն և անակնկալիքն. (քանզի սահմանեն զբախտ՝ դիպումն և ընթացակցութիւն յերկուց պատճառաց՝ 'ի յօժարեցութենէ զսկիզբն ունողաց, այլ ինչ քան զոր բնաւորեցաւն կատարողաց. որպէս գերեզման փորելով՝ գանձ գտանել. քանզի ոչ որ եդն՝ այնպէս եդ, որպէս զի նմա գտանել, և ոչ որ փորեացն՝ այսպէս փորեաց որպէս զի գանձս գտանէ. այլ ումն՝ զի յորժամ կամեսցի՝ առցէ, իսկ ումն՝ զի գերեզման փորեսցէ. և դիպաւ այլ ինչ՝ քան զոր ինչ կամէինն երկոքեան). իսկ ինքնամատոյցն՝ անշնչիցն և կամ անբանիցն դիպմունք՝ առանց բնութեան և արուեստի։

Արդ, ում'ի սոցանէ հետևեցուսցուք՝ զորս 'ի ձեռն մարդկան գործ լինի, եթէ մարդ ոչ է պատճառ և ըսկիզբն գործոց։ Այլ և ոչ Աստուծոյ այնպէս պարտ է մակագրել՝ ամօթալիս ինչ գործս և անիրաւս. ոչ հարկի, զի ոչ 'ի միշտ 'ի նոյնօրինակ ունողացն է. ոչ ճակատագրի, քանզի ոչ 'ի հնարաւորացն է, այլ 'ի հարկաւորացն ամենայն որ ինչ ճակատագրին է. ոչ բնութեան, քանզի բնութեան գործ է կենդանիք և տունկք. ոչ բախտի, քանզի ոչ պակասք և անակնկալիք են մարդկան գործք. ոչ ինքնամատուցին, քանզի անշնչիցն և անբանիցն են դիպմունք։ Արդ՝ պարտ է զնոյն զմարդն գործող և արարող գոլ ասել, սկիզբն իւրոցն գործոց և անձնիշխան։

Եւս, եթէ և ոչ միոյ գործոյ է սկիզբն մարդ՝ աւե֊

1 Τὸ αὐτόματον, որ է, զդէպս զդիպուածն։

լորդ ունի զխորհելն. քանզի 'ի զինչ պէտս է նմա խորհուրդ, և ոչ միոյ գործոյ գոլով տէր։ Իսկ զգեղեցիկն և զպատուականն որ 'ի մարդ՝ աւելորդ ասել՝ 'ի յոյժ անտեղեացն է։ Արդ՝ եթէ խորհի, գործոյ սակս խորհի, քանզի ամենայն խորհուրդ՝ գործոյ աղագաւ և վասն գործոյ։

Եւս, որոց ներգործութիւնքն 'ի մեզ են, այսոքիկ և գործքն ըստ ներգործութեան 'ի մեզ են. 'ի մեզ են՝ որք ըստ առաքինութեանցն ներգործութիւնք, 'ի մեզ ուրեմն են և առաքինութիւնքն։ Եւ զի 'ի մեզ են՝ որք ըստ առաքինութեանն ներգործութիւնքն՝ յայտնէ և բարւոք յԱրիստոտելէ ասացեալքն 'ի վերայ բարոյականացն առաքինութեանց. «Քանզի զորս ինչ գործելովն ուսանիմք, զայսոսիկ ուսանելովն և գործեմք. ընդյաղթկուն լինել հեշտութեանց ուսեալք՝ զգաստ լինիմք, և եղեալք զգաստք՝ յաղթկու լինիմք հեշտութեանցն»։

Է և այսպէս ասել. խոկալ և կրթիլ՝ յամենեցունց խոստովանի 'ի մեզ գոլ. և խոկմունք՝ ունակութեանցն են տեարք, քանզի սովորութիւն՝ բնութիւն մակստացական է. իսկ թէ տէր ունակութեան է խոկումն, և 'ի մեզ է խոկալն, 'ի մեզ է ապա ուրեմն և ունակութիւնն։ Իսկ որոց 'ի մեզն է ունակութիւնն, սոցունց 'ի մեզ է և գործքն՝ որ ըստ ունակութեանն. քանզի ունակութեանց և գործքն ըստ նմին։ Ուրեմն որ արդար ունակութիւն ունի՝ արդարացի գործէ, և որ անիրաւն՝ անիրաւս. 'ի մեզ ուրեմն է և անիրաւս գոլ կամ արդարս։

Իսկ զի են ինչ՝ որ 'ի մեզն է առնելն, յայտնեն յորդորմունք և խրատք. քանզի ոչ ոք յորդորէ զմարդ ոչ քաղցնուլ կամ ոչ ծարաւել, այլ և ոչ՝ թռչել. քանզի ոչ 'ի մեզ առնելն զայն. արդ՝ յայտ է որոց յորդորմունք են՝ այսոքիկ են 'ի մեզ։

Եւս, եթէ ոչ ինչ է 'ի մեզ՝ աւելորդ են օրէնք. քանզի բնաւորապէս ամենայն ազգ օրինօք իւիք վարի, գիտելով թէ իշխանութիւն ունին գործել զորս ինչ օրինադրեն։ Եւ բազումք յազգաց զաստուածս ոմանս մակագրեն օրինադիրս, որպէս Կրետացիք զԴիոս և Ղակեդեմոնացիք զԱպողոն։ Բնաւորապէս ուրեմն ամենայն

մարդկան գիտութիւն՝ որոյ 'ի մեզն է առնելն սփռի։ Զնոյնս ասելի է նոցա և 'ի վերայ պարսաւիցն և գովիցն, և ամենայն՝ որ 'ի բաց բառնայն ըստ ճակատագրին լինել զամենայն։

## ԳԼՈՒԽ ՔԱՌԱՍՆԵՐՈՐԴ

Յաղագս որոյ[1] թէ են ինչ՝ որ 'ի մեզ է առնելն։

Եւ զի են ինչ՝ որ 'ի մեզ է առնելն, և զի տեարք եմք գործոց ոմանց՝ բաւականապէս ցուցաւ. բայց ասասցուք՝ թէ ո՞յք են որ 'ի մեզն է առնելն։

Ասեմք այժմ սեռականապէս՝ զամենայն զորս 'ի ձեռն մեր կամաւորապէս գործեմք՝ 'ի մեզ գոլ. քանզի ոչ արդեօք կամաւորութեամբ ասիւր գործել, եթէ առնել զգործն ոչ էր 'ի մեզ. և պարզաբար՝ որոց հետևի պարսաւ կամ գով, և յորոց վերայ է յորդորումն և օրէնք. քանզի և այս յառաջագոյն ցուցաւ։ Եւ տիրապէս 'ի մեզ են անձնականք ամենայն և յաղագս որոց խորհիմքն. քանզի որպէս 'ի մեզ գոլով գործել զոր առաջի կայ և ոչ գործել՝ խորհիմք։ Եւ ցուցաւ յառաջագոյն՝ խորհուրդ 'ի վերայ հաւասարին գոլ հնարաւոր, և է հաւասար հնարաւոր՝ նոյն զոր կարեմքն և հակակայն նորա, և առնէ զայսոսիկ և յօժարութիւնն՝ միտքս մեր[2]. և սա է սկիզբն գործոցն։ Եւ այսոքիկ են որ 'ի մեզն է առնել՝ հաւասարապէս հնարաւոր, իբր՝ շարժիլն և ոչ շարժիլ, 'ի վեր դիմելն և ոչ դիմելն, ոչ ցանկալ ոչ կարևորացն և ցանկալ, ստել և ոչ ստել, տալ և ոչ տալ, խնդալ ընդ որս պարտ է և ոչ խնդալ. և որքան այսպիսիք են, յորս ենն չարութեան և առաքինութեան գործք. քանզի այսոքիւք եմք անձնիշխանք։

Ի հաւասարապէս հնարաւորացն են և արուեստք. զի ամենայն արուեստք 'ի լինել հնարաւորացն է՝ և՛ գոլ և՛ ոչ գոլ, և սկիզբն յարարողին է և ոչ յարարելումն.

1 Օրինակ մի՝ Յաղագս թէ են, և այլն։ — Ըստ յունին իմանալի է, Յաղագս թէ ո՞յք իցեն որք ընդ մերումս անկանին իշխանութեամբ։
2 Յոյնն ասէ. Եւ յօժարութիւն այսոցիկ գտանի 'ի միտս մեր։

քանզի ոչինչ՝ ոչ 'ի մշտնջենաւորացն և 'ի հարկէ էիցս և ոչ 'ի հարկաւորացն եղելոց՝ ըստ արուեստի լինել ասի։ Այլ և ոչ յեղելոցն 'ի հնարաւորսն՝ և այլազգ ունել ինքեանց զարարողականն պատճառ. որպէս ոչ 'ի վերայ կենդանեացն և տնկոցն՝ ըստ արուեստի ինչ ասին լինել, քանզի բնութեամբ և ոչ արուեստիւ։ Իսկ եթէ ըստ արուեստի եղելոցն՝ արտաքուստ է պատճառն որ առնէ, ո՞վ արդեօք է պատճառն ըստ արուեստի եղելոցն՝ քան զարուեստաւորն որ առնէն։ Քանզի արուեստաւորին է առնելն, սա ուրեմն է սկիզբն և պատճառ առնելոյն։ Ի մեզ են ուրեմն և ըստ արուեստի ներգործութիւնքն և առաքինութիւնք և ամենայն գործք անձնականք [1]։

Իսկ բազումք կարծելով ասել զանձնիշխանականն 'ի վերայ ամենայն գործոց և ստացուածոց և բախտի՝ անգոսնեն յիրաւի զբանս։ Իսկ դաժանագոյնքն և զԳիրս 'ի յանդիմանութիւն բերելով «զՈչ 'ի մարդոյն 'ի վերայ գոլ զճանապարհս իւր», ո՛վ վեհքդ, ասեն, զիա՞րդ է անձնիշխան մարդ՝ որ երբեմն ոչ նորա էին ճանապարհք իւր. «Ի նանիր են խորհուրդք մարդկան», որպէս ոչ կարողաց 'ի մեզ 'ի գործ ածել զոր մտածեմքն. և այսպիսիս բազումս ասեն, ոչ գիտելով թէ զիա՞րդ տալ անձնիշխանականն [2]։ Քանզի ոչ հարստանալոյ կամ աղքատանալոյ, կամ ողջ գոլոյ կամ ուժգին՝ ըստ բնութեան, կամ բոլորովին գործարանականացն կամ դիպուածոցն ասացելոցն բարութեանցն կամ ըստ նախախնամութեան վախճան ասելոցն՝ ունիմք իշխանութիւն. այլ որոց ըստ առաքինութեան և չարութեան գործոց, և յօժարութեանց և չարժութեանց, և որոց հաւասարապէս և զհակակայսն գործել կարեմք. վասն զի ամենայն գործոյ նախայօժարութիւնն առաջնորդէ։

1 Յոյն բնագիրն յաւելու աստանօր. Իսկ թէ զինչ իցեն գործք-անձինն և իրք՝ ցուցաւ յառաջագոյն։

2 Լծմն. — Դաժանագոյն ասէ զշռայլսն և զպոռնիկսն, և այլ այսպիսի բարուքն դաժանքն, որ ոչ կամին զմարդն անձնիշխան։ Ի մէջ առնու 'ի Գրոց, զոր Յոբ ասաց, թէ «Մարդոյ ոչ իւր են ճանապարհք իւր», որպէս և Երեմիա ասէ. և թէ «Ճանաչէ Տէր զխորհուրդս մարդկան՝ զի են ընդունայն»։

Եւ ոչ միայն գործն, այլ և նախայօժարութիւնն ընդ դատաստանաւ է. և զայս յայտնէ յԱւետարանին. Որ հայի 'ի կին՝ ցանկանալ նմա, անդէն շնացաւ ընդ նմա 'ի սրտի իւրում: Եւ Յովբ վասն 'ի մտածութիւնս իւրեանց՝ յանցանաց որդոցն իւրոց՝ պատարագս մատուցանէր: Քանզի սկիզբն մեղաց և արդարագործութեան՝ նախայօժարութիւնն է:

Զի գործն երբեմն թողլ տուեալ լինի 'ի նախախնամութենէն և երբեմն արգելեալ. քանզի գոլով և որ 'ի մեզն է, գոլով և նախախնամութեանն, հարկ է ըստ երկոցունցն լինել եղելոցն. զի թէ ըստ միոյն միայն լինէր՝ ոչ արդեօք էր միւսն. բայց խառն գոլով եղելոցն՝ երբեմն ըստ որում 'ի մեզն է պատահեսցի, և երբեմն ըստ նախախնամութեանն բանի, և երբեմն ըստ երկոցունց:

Իսկ նախախնամութեանն՝ մերթ հասարակաց գոլով և մերթ առանձնապէս, հարկ է որոց ըստ բոլորումն և որք ըստ մասին են՝ ախտակիցն լինել: Քանզի պարունակողին չոր [1] գոլով՝ չորանան և մարմինքն, թէ և ոչ ամենայն նմանապէս. նմանապէս և մօր ոչ բարւոք կերակրեցելոյ, հետևաբար ծնեալքն և մարմնոյ չար խառնուածովն և յարձակմամբքն՝ ջանգք ծնանին: Եւ յայտ է յասացելոցն թէ պատահի և 'ի խառնուածոյ ոչ 'ի բարեբախտութիւն անգանել, կամ 'ի հասարակաց պարունակողէն, կամ 'ի կամաւոր նօթութենէ ծնողաց, և կամ նոցին նոցունց 'ի փափկութենէ ապականեցելոց. որպէս զի և զխառնուածսն 'ի կամաւոր սկսմանէ՝ [2] է երբեք զի և վատթարսն կազմիլ և (կամ) ոչ. և ոչ զնախախնամութիւնն ամենայն իրօք պատճառս գոլ այսպիսեացս:

Արդ, յորժամ անձն՝ զխառնուածոյ մարմնոյ զհետ երթեալ՝ ցանկութեանց կամ սրտմտութեանց զինքն տայցէ, 'ի դիպուածոցն ըմբռնեսցի կամ թողասցի, իբր յաղքատութենէ կամ 'ի հարստութենէ, կամաւոր չար

1 Յօրինակս՝ պարունակող ինչ որ կամ ոչ գոլով. ուղղեցաւ ըստ յունարէն բնագրին:

2 Ի լուսանցս՝ իսկզբանէ:

կրէ, քանզի ոչ երթալովն զհետ՝ յուղղութիւն գայ և յաղթէ չարի խառնուածոցն, որպէս զի այլայլեալ յաւէտ և ոչ այլայլել. և ածէ զանձնականսն տրամադրութիւնսն 'ի բարւոք ունակութիւնս, պիտանի վարուք և պարկեշտ կերակրովք: Եւ յայտ է յուղղութիւն եկելոցն՝ (զի) ոչ եկեալքն յուղղութիւն՝ կամաւորապէս մեղանչեն. քանզի 'ի մեզ է ընթացակիցն լինել չար խառնուածոցն, և կամ դիմանալ և յաղթել: Իսկ բազումք զչար խառնուածն որպէս պատճառ ախտիցն բերեալ յառաջ, հարկի և ոչ յօժարութեան մակագրեն զչարութիւնն, և վասն այսորիկ, ասեն, և ոչ զառաքինութիւնս 'ի մեզ գոլ, յոյժ անտեղաբար:

## ԳԼՈՒԽ ՔԱՌԱՍՆԵՐՈՐԴ ԱՌԱՋՆԵՐՈՐԴ

Թէ վասն զինչ պատճառի անձնիշխան եղաք:

Առաջի կայ մեզ ասել թէ վասն զինչ պատճառի անձնիշխանք եղաք: Արդ ասեմք՝ անդէն ընդ բանականութեանն մտանել 'ի ներքս անձնիշխանութեանն. և եղականացս՝ բնաւորակից լինել փոխադրութիւն և յեղումն, մանաւանդ՝ որք 'ի ստորակայիս նիւթոյ եղեալք. քանզի սկիզբն եղելութեանն՝ յեղումն է, զի յայլայլութենէ ստորակայիս նիւթոյ է լինելութիւն: Եւ 'ի միտ առցէ ոք արդեօք զասացեալս՝ հայելով 'ի տունկս և 'ի կենդանիս ցամաքայինս, թռչունս և ջրայինս, քանզի յաճախէ սոցա փոխադրութիւնս:

Իսկ զի և ընդ բանականութեանն 'ի ներքս մտանէ անձնիշխանութիւնն, յասացելոցն՝ յաղագս որոյ 'ի մեզ գոլն ինչ, որոց ոչ վարկպարազի է և այժմ յիշեցուցանել, զնոյն հետևմանս խնդրելով զնոսա: Բանականին է ինչ՝ որ տեսական է, և է ինչ՝ որ գործական: Տեսական է՝ որ ըստ մտաց թէ որպէս ունին էքս, իսկ գործական՝ խորհեցողականն, սահմանել գործելեացն զուղիղն բան: Եւ կոչեն զտեսականն՝ միտս, իսկ զգործականն՝ բան, և զոմն իմաստութիւն և զոմն խոհականութիւն: Եւ ամենայն որ խորհի՝ որպէս 'ի վերայ նորին

գոլով յօժարութեան գործարանացն՝ խորհի, զի զնախադատեալն 'ի խորհրդոյն առցէ, և զառեալն գործեսցէ։ Արդ, հարկ է ամենայնիւ՝ որ ունի զխորհելն՝ և տէր գործոցն գոլ. քանզի եթէ տէր ոչ իցէ գործոցն՝ աւելորդ ունի զխորհելն. և եթէ այս՝ 'ի հարկէ առընաւորի բանականին անձնիշխանականն. քանզի կամ ոչ եղիցի բանական, և կամ բանական գոլով՝ տէր եղիցի գործոցն, և տէր գոլով գործոցն՝ ամենայն իրօք և անձնիշխան եղիցի։ Ցուցաւ և որ 'ի ստորակայէս նիւթոյ եղականք՝ փոփոխելիք գոլ։ Ցերկոցունց ուրեմն ժողովի՝ մարդոյն 'ի հարկէ անձնիշխան և փոփոխելի գոլ. փոփոխելի՝ վասն զի եղական է, իսկ անձնիշխան՝ վասն զի և բանաւոր։

Արդ, որք մեղադրենն զԱստուած՝ եթէ զմարդ ոչ արար չարութեան անընդունակ, այլ անձնիշխան, զանխլանան ինքեանց, մեղադրելով զԱստուած զի բանական արար զմարդն և ոչ անբան. քանզի հարկ է յերկոցունցն մինն, կամ անբան լինել և կամ բանական գոլով և 'ի գործականս շրջելով՝ անձիշխան գոլ։

Արդ, 'ի հարկէ ամենայն բնութիւն բանական՝ անձնիշխան է. և փոփոխելի ըստ իւրում բնութեան։ Այլ որք 'ի ստորակայէս նիւթեղէն՝ ըստ երկուց յեղանակաց ունին զփոփոխումն, ըստ նիւթոյն և ըստ լինելոյն։ Իսկ որք ոչն եղեն 'ի ստորակայէս նիւթոյ, ըստ միոյն միայն յեղանակի, ըստ լինելոյն են փոփոխելիք։

Դարձեալ, այսոցիկ աննիւթիցն՝ որքան ինչ յերկրաւորքս են, և կցորդութեամբն որ առ մարդիկ՝ 'ի գործականս յեղեալք, յաւէտ են փոփոխելիք քան զայլսն։ Իսկ որք ծառայութեամբն[1] առ Աստուած ըստ կալման մերձին, և զայս 'ի միտ առնլով՝ զերանականն պտղաբերեն յինքեանս, և յԱստուած միայն դարձեալ 'ի գործականացս և 'ի նիւթոյս ամենայն՝ ամենևին զինքեանս օտարացուցեալ, տեսութեանն և Աստուծոյ ընտանացեալք՝ միան անփոփոխելիք. անձնիշխանք գոլով վասն բանական գոլոյն, և ոչ փոփոխեալք՝ վասն յա-

1 Ի լուսանցսն՝ ծայրութեամբ յբնութեան, որ է, ըստ յունին, գերազանցութեամբ բնութեանն։

առաջադոյն ասացելոցս պատճառաւ։ Եւ դժանչելի ինչ ոչ է, քանզի և 'ի մարդկանէ՝ որք տեսականք եղեն 'ի գործականացն զինքեանս 'ի բաց որոշեցին, և միացին անյեղք։

Որպէս և համարիմ՝ ցուցաւ ասացելովք՝ թէ 'ի սկզբբանէ բանականքս ամենայն բնութիւնք՝ հաճելիք արարչագործեցան, և եթէ էին միացեալք նոյնպիսիք՝ որպէս 'ի սկզբանէն արարան, ամենայն չարութեան արտաքոյ արդեօք էին. բայց լինի նոցա չարութիւն ըստ յօժարութեան։ Քանզի այսպէս միացեալքն՝ ըստ 'ի սկզբանէ լինելութեանն զերանութիւնն ունէին։ Միայն 'ի հրեշտակացն՝[1] յանմարմնոցն յեղան. և ոչ ամենեքին, այլ ոմանք 'ի նոցանէ, որք չեղեցանն առ ներքինս, զերկրայնոցս փափագումն ունելով, 'ի վերնոյն և առ Աստուած կալմանէն 'ի բաց որոշեալք։

Ապա ուրեմն 'ի ցուցելոցս յայտ է՝ եթէ սակս բնութեամբ փոփոխելիս գոլոյս մեր՝ զզօրութիւնս յօժարականս փոփոխելիս ունիմք. այլ ոչ վասն ունելոյս փոփոխականս զօրութիւնս՝ չարս գոլոյս մեզ՝ զԱստուած ոք արդեօք մեղադրեսցէ։ Քանզի ոչ 'ի զօրութիւնս են չարութիւնքն, այլ յունակութիւնսն. իսկ ունակութիւնքն ըստ յօժարութեանն են. ըստ յօժարութեանն ուրեմն լինիմք չարք, և ոչ ըստ բնութեանն։

Ուսցի ոք արդեօք զասացեալսն այսպէս. յորոց յառաջ քան զայս՝ զօրութիւնս ասէաք գոլ, յորմէ իւրաքանչիւր ինչ զոր առնեմք՝ առնել կարեմք. և ամենայն յօժարական զօրութիւն՝ նոյն և հակակայիցն է. քանզի մի և նոյն զօրութիւն է ստելոյ և ճշմարտելոյ, և մի և նոյն զօրութիւն է պարկեշտանալոյ և վաւաշոտելոյ. բայց ոչ ևս նոյն ունակութիւն՝ հակակայիցն է, որզան, վաւաշոտելոյն և պարկեշտանալոյն, կամ ստելոյն և ճըշմարտելոյն, այլ ներհակացն ներհակք։ Քանզի պարկեշտանալն՝ առաքինութեան ունակութիւն է, իսկ վաւաշոտելն՝ չարութեան։ Ոչ ուրեմն են զօրութեանն չարութիւնք, այլ ունակութեանցն և յօժարութեանն. քանզի ոչ զօրութիւնն է՝ որ տայն մեզ վաւաշոտել կամ

[1] Ցօրինակս երկուս՝ հրեշտակք։

ստել, այլ յօժարութիւնն. քանզի 'ի մեզ է ճշմարտել կամ ստել։ Արդ, եթէ ոչ է չարութիւն, այլ ունակութիւն, ոչ՝ որ զզօրութիւնն 'ի մեզ ետ՝ է պատճառ չարութեանցն, այլ ունակութիւնն՝ որ առ 'ի մէնջ և 'ի ձեռն մեր և վասն մեր առեալ. քանզի պարտ էր զհակառակ ունակութիւնն 'ի կրթութենէ ստանալ և ոչ զչարն։

Եւ տարբերի զօրութիւնն յունակութենէն. զամենայն զզօրութիւնս 'ի բնաւորականս գոլոյն, բայց զունակութիւնսն եկամուտս. և զզօրութիւնսն անուսանելիս գոլով, բայց զունակութիւնսն յուսմանէ և 'ի սովորութենէն լինելով։ Արդ, եթէ զօրութիւն՝ բնաւորական իմն է և անուսանելի, իսկ ունակութիւն մակստացական է և ուսանելի, ոչ բնութիւնս է պատճառ չար էութեանցն, այլ չարաչար վարիլն մեր, և վասն այսորիկ զչար ունակութիւն ստանալ. քանզի ամենայն ունակութիւն՝ մակստացական ցուցաւ։

Եւ զի բնութեամբ են զօրութիւնքն՝ յայտ է յամենեցունցն զնոյնս ունելոյն զօրութիւնս, բայց 'ի տկարացելոցն[1]. և զի ունակութիւնքն ափշեցելոցն[2] ոչ բնաւորականք, յայտ է ոչ ամենեցունց զնոյն ունակութիւնսն, այլ այլոց այլս. քանզի բնութեամբն՝ ամենայն յամենեսին[3]։

## ԳԼՈՒԽ ՔԱՌԱՍՆԵՐՈՐԴ ԵՐԿՐՈՐԴ

### Յաղագս Նախախնամութեան։

Արդ, զի անձնիշխան է մարդ, և որոց է անձնիշխան, և վասն զինչ պատճառի անձնիշխան եղև, բաւականապէս ասացաւ յառաջագոյն. իսկ վասն զի ոչ ամենայն՝ որոց առաջի եդեալ զպատահանելն, ամենայն իրք սպա-

1 Օրինակ մի՝ տարակացելոցն։

2 Օրինակ մի 'ի լուսանցսն գնէ չափեցելոցն. իսկ 'ի յունարէնն չիք այդ բառ, այլ լոկ թէ « Եւ զի ունակութիւնքն (αἱ ἕξεις) ոչ 'ի բնէ են », և այլն։

3 Իմա. քանզի այն որ 'ի բնութենէ ինչ է՝ հաւասար գտանի յամենեսին։

նանէ, այլ երբեմն սպանանէ և երբեմն ոչ, գործոյն խափանեցելոյ և ոչ ընթացելոյ ըստ դիպմանն, զնախախնամութիւնն ասեմք այսոցիկ պատճառ գոլ և ոչ ճակատագիրն. հետևող է՝ որոց 'ի մեզն է՝ առնել յաղագս նախախնամութեանն բան։

Ցարորոշի և սա յերիս, նախ՝ թէ է նախախնամութիւն, երկրորդ՝ զինչ է, երրորդ՝ որոց է։

Այլ Հրէայն՝ ո՞չ արդեօք այսքան մոլորեալ անգիտանայցէ զնախախնամութիւնն, գիտելով զորս յեգիպտոսն՝ սքանչելիսն, լուեալ և զորս յանապատին, որովք բազմափայլագոյնս քան զերևելիս սերեցաւ մարդկան նախախնամութիւն, բազում ինչ և մարգարէիւք և 'ի Բաբելոնի՝ տեսեալ գործս նախախնամութեան։ Եւ ոչ մի ինչ երկբայութիւն ընկալեալ զքրիստոնեայս, և այսոքիկ ամենայն ուսուցանեն նախախնամութիւն գոլ. մանաւանդ զաստուածայինն և զգերազանցեալ մարդասիրութիւնն, անհաւատալի գործ նախախնամութեանն, զվասն մեր մարմնաւորութիւնն Աստուծոյ։

Իսկ վասն զի ոչ առ նոսա միայն է բանս, այլ և առ 'ի հեթանոսս, բեր և 'ի ձեռն այլոց՝ որովք նոքայն հաւատան՝ ցուցցուք նախախնամութիւն գոլ։ Արդ, զի է նախախնամութիւն՝ 'ի ձեռն նոցունց ոք արդեօք ցուցցէ, որովք թէ Աստուած է՝ ցուցաք։ Քանզի յարամնայութիւն ամենայնի, և մանաւանդ որքան եղելութեամբն և ապականութեամբն, և դրութիւն և կարգք էիցս միշտ պահպանեալք, ըստ նորին յեղանակի և աստեղաց բերումն, և ոչ ինչ ոչ երբեք փոխել, շրջագայութիւնք տարւոյ, և ժամուց դարձումն, տունջեան և գիշերոյ՝ որ ըստ տարւոյն հաւասարութիւնն, պակասամասնութիւն իւրաքանչիւր ուրուք՝ աճելով և նուազելով, ոչ նուազ և ոչ առաւել չափով, զիա՞րդ արդեօք կատարէր նմանապէս՝ հաւանեալ եթէ ոչ էր նախախնամութիւնն։

Եւ ոչ այս միայն, այլ և յանցանացն հետևեալն պատիժ, յայտ է զի և նոցունց մեղացն յայտնումն՝ յորժամ ոչ ոք գոլով յանդիմանիչ՝ ոմանց վտանգից 'ի յերևոյթ գայ, և ցուցանէ նախախնամութիւն գոլ։ Լի են այսպիսեօք պատմութեամբք և՛ Եբրայեցւոյն գիրք և՛ Հելլենացւոցն պատմութիւնք։ Քանզի այսպիսի ինչ սաս-

ցաւ ՚ի գիրս և վասն Շուշանայ կրիցն. իսկ Հեղենա-ցւոցն և վասն Իւբեկեայ[1] բանաստեղծի. քանզի ՚ի սպանանելն զնա ամանց՝ ոչ զոք օգնական և վկայ դա-ւաճանութեան ունելով, և տեսեալ երամ խորդուց՝ Դուք, ասէ, ով խորդք, խնդրեցէք զվրէժ սպանմանս իմոյ։ իսկ քաղաքին խնդրեալ զսպանողսն, և ոչ կարա-ցին գտանել։ Դէպ եղև թէատրոն, և մինչդեռ նստէին ռամիկքն, տեսեալ զնոսա սպանողացն՝ ծիծաղեցան և ասեն. Ահա վրէժխնդիրքն Իւբեկեայ։ իսկ մի ոմն յո-րոց մերձ նստէին՝ լուաւ. պատմեաց իշխանացն. և ըմբռնեալք՝ խոստովանէին զսպանումնն։ Շատից և այլոց այսպիսեաց է գրեալ զհնոցն. զոր թէ ոք կամես-ցի ժողովել՝ յանբաւ յերկայնութիւնս ձգի բանս։ իսկ եթէ ոչ ամենեցունց որք մեղանչենն՝ նոյն յեղանակ յանդիմանութեան գայ ՚ի վերայ, այլ է երբեք զի և զերծանիլ կարեն, մի՛ ոք ուրասցի վասն այսորիկ զնա-խախնամութիւն. քանզի ոչ ըստ միոյ միայն յեղանակի առնէ զմարդկան հպատակս, այլ ըստ բազմաց և ըստ տարբերից։

Ոչ վայրապար ինչ գոլ ցուցանէ նախախնամութիւն և մարմնոցն՝ որ ՚ի լինելութեան և յապականութեան՝ կազմութիւն և համեմատութիւն, հանապազ նմանա-պէս պահեալ։ Քանզի ամենայն մասին մարմնոյ երևի նախախնամութեան գործ, զորս ջանասիրացն է պարտ ՚ի յոլովից գրոց ժողովել։ իսկ և գունոցն զանազանու-թիւն որ ՚ի կենդանիսն զնոյն զարդ միշտ պահելով ա-ղաղակէ նախախնամութիւն գոլ։ Եւ հասարակաց առ ՚ի յամենայն մարդկանէ խոստովանեալն՝ թէ պարտ է աղօթել և ուրախացուցանել զԱստուած պատարագօք և այլովք այսպիսեօքս, նախախնամութեանն է յայտ-նողական, զի առանց նախախնամութեան գոլով ամե-նայնի, ո՞վ արդեօք կամ զի՞նչ ոք աղօթեսցէ։ Եւ փոյթ՝ որ յերախտաւորութիւնսն բնաւորապէս յանթիւրելիսն փութացեալ, զնախախնամութիւնսն երևեցուցանէ. քանզի որ յայսմանէ[2] վարձուց ակն ունելով, և զոր ոչ

1 Τὸ κατὰ Ἴβυκον τὸν ποιητήν.
2 Այս է՝ ՚ի նախախնամութենէ։

են կարող փոխարէն հատուցանել, բարի առնել յօժարեցուցանեմք։

Իսկ Նախախնամութեան 'ի բաց բարձեցելոյ, թոյլ տուեալ լինի անիրաւութիւն՝ որոց կարողն են անիրաւել. 'ի բաց բառնայ և ողորմածութիւն և երկիւղ Աստուծոյ. ընդ նմին 'ի բաց բառնայ հանդերձ այսոքիւք՝ առաքինութիւն և բարեպաշտութիւն. քանզի եթէ ոչ նախախնամէ Աստուած, և ոչ պատժէ և ոչ որոց զբարիսն գործեն՝ յաղթանակս բաշխէ, և ոչ զանիրաւեցելոյն վնասս արգելու, ո՞վ արդեօք երկրպագէր Աստուծոյ, եթէ ոչ ինչ իւիք լինէր նպաստ։ Ի բաց բառնայ և մարգարէութիւնն և ամենայն Նախագիտութիւն. այլ ոչ համաձայնի այս՝ գրեթէ զօրհանապազ երևեցելոցն. քանզի բազում երևմունք աստուածայինք լինին 'ի պէտս. բազում ինչ և 'ի ձեռն երազոց տուեալ հիւանդաց դեղ. բազում Նախախնամութիւնք[1] եկին յառաջ յամենայն ազգ։ Բազում սպանողք, և կամ այլ ինչ չարագործք՝ փախստականք լինին զտիւ և զգիշեր։ Այլ որպէս բարերարն է Աստուած, բարերար գոլով բարեգործէ. և եթէ բարերար գոլով բարեգործէ, և՛ Նախախնամէ։

Զինչ պարտ է ասել զստացուածոցս գործ, և զհամեմատութիւն սորա և զյօդաւորութիւն և զդիրն և զընկարգն և զպէտսն՝ զոր իւրաքանչիւր ումեք տայ ամենայնիւ. և որպէս ոչ կարէ այլազգ բարւոք գոլ ունելն՝ ըստ որում այժմս ունի. և որպէս ոչ յաւելուած ընդունի, և ոչ յելիցս պակասիլ ինչ կարէ, այլ կատարեալ ամենայն և բարի և իմաստասիրաբար և արարչագործապէս են եղեալ։

Այլ արարչագործութեանն բանի տացուք զայսոցիկ արտադրութիւն. զի մի կրեսցուք՝ որ ինչ բազումք յաղագս Նախախնամութեան անգիտողացն[2] կրեցին, քան-

1 Ի լուսանցս օրինակաց՝ Նախագիտութիւն, համաձայն յոյն բնագրին։

2 Ի լուսանցս օրինակացն՝ անգրողացն։ Ըստ յոյն բնագրին իմանալի է. Այլ զայս ամենայն թողցուք 'ի մէջ ածել՝ յորժամ զարարչագործութենէ բանք լինիցին, զի մի ըստ օրինակի ոմանց՝ անգիտաբար չփոթեսցուք զարարածոցս լինելութիւն ընդ Նախախնա-

զի զարարածս փոխանակ Նախախնամութեան դնեն. արդ, առաջնորդեալ մեզ 'ի Նախախնամութեանն բան ըստ բազում տարբերութեան. քանզի ոչ է նոյն Նախախնամութիւն և արարածս, զի արարածի գործ է՝ բարիոք առնել զեղեալսն. իսկ Նախախնամութեան՝ բարիոքն հպատակել եղելոցն. և ոչ են գոյակից այսոքիկ ամենայն իրօք միմեանց։ Որպէս է տեսանել և 'ի մարդիկ՝ զոր ինչ ըստ իւրաքանչիւր արուեստի և գործոյ. քանզի ոմանք 'ի նոցանէ միայն առնելովն՝ այնուհետև բարւոք կան, և ոչինչ այլ տանին հոգ. որպէս հիւսունք և նկարագրողք և անդրիաստեղծք. իսկ ոմանք միայն հպատակեն և խնամ տանին. որպէս իմն անդէք որդւք և հովիւք։ Ապա ուրեմն և մեզ՝ յորում յաղագս արարածոյս բանի՝ որպէս պարտ է ցուցանեմք եթէ բարւոք են եղեալքս. իսկ յորում յաղագս Նախախնամութեան՝ թէ և պիտանի հպատականացն հանդիպին յետ լինելոյն։

Զիարդ մարդ 'ի մարդոյ և արջառ յարջառոյ ծնանի, և իւրաքանչիւր ինչ յիւրմէ սերմանէ բուսանի և ոչ յայլոյ, եթէ առանց Նախախնամութեան են։ Քանզի թէ ասասցէ ոք թէ ըստ ինքզքանէ լինելութեան՝ յօդմամբ իմն յառաջ գայ իրն, զայս լինի ասացեալն՝ թէ ընդ արարածոյ գոյակից է ամենայն իրօք Նախախնամութիւնն։ Քանզի յօդմամբ յառաջ գալն արարածոյն՝ յայտնէ ընդ արարածոցն լինել և զնախախնամութիւն. քանզի Նախախնամութեան է յետ առնելոյն՝ յառաջն գալ էիցս։ Եւ այսպէս ոչ այլ ինչ ոք արդեօք ասիցէ, քան թէ զնոյնն գոլ արարչագործ՝ համանգամայն և Նախախնամող էիցս։

Ո՞վ ոք տեսանելով զկերպից մարդկան փոփոխումն յայնչափ բիւրս, և ոչ ուրեք անգանել 'ի միմեանս, ոչ սքանչանայցէ ընդ գործն։ Զմտաւ ածեալ զպատճառն՝ գտցէ Նախախնամութեան սակս զտարբերու-

մութեան. զի թէպէտ և ստեղծանելոյն բան առաջնորդէ մեզ առ խնդիր Նախախնամութեան, այլ խտիր մեծ 'ի մէջ կայ ընդ արարչագործել և ընդ Նախախնամել. քանզի ոչ նոյն է Նախախնամութիւն և արարածս (առնելն), և այլն։

լորդ ունի զխորհելն. քանզի 'ի զի՞նչ պէտս է նմա խորհուրդ, և ոչ միոյ գործոյ գոլով տէր։ իսկ զգեղեցիկն և զպատուականն որ 'ի մարդ՝ աւելորդ ասել՝ 'ի յոյժ անտեղեացն է։ Արդ՝ եթէ խորհի, գործոյ սակս խորհի, քանզի ամենայն խորհուրդ՝ գործոյ աղագաւ և վասն գործոյ։

Եւս, որոց ներգործութիւնքն 'ի մեզ են, այսոքիկ և գործքն ըստ ներգործութեան 'ի մեզ են. 'ի մեզ են՝ որք ըստ առաքինութեանցն ներգործութիւնք, 'ի մեզ ուրեմն են և առաքինութիւնքն։ Եւ զի 'ի մեզ են՝ որք ըստ առաքինութեանն ներգործութիւնքն՝ յայտնէ և բարւոք յԱրիստոտելէ ասացեալքն 'ի վերայ բարոյականացն առաքինութեանց. «Քանզի զորս ինչ գործելովն ուսանիմք, զայսոսիկ ուսանելովն և գործեմք. ըղ-յաղթկուն լինել հեշտութեանց ուսեալք՝ զգաստ լինիմք, և եղեալք զգաստք՝ յաղթկու լինիմք հեշտութեանցն»։

Է և այսպէս ասել. խոկալ և կրթիլ՝ յամենեցունց խոստովանի 'ի մեզ գոլ. և խոկմունք՝ ունակութեանցն են տեարք, քանզի սովորութիւն՝ բնութիւն մակստացական է. իսկ թէ տէր ունակութեան է խոկումն, և 'ի մեզ է խոկալն, 'ի մեզ է ապա ուրեմն և ունակութիւնն։ իսկ որոց 'ի մեզն է ունակութիւնն, սոցունց 'ի մեզ է և գործքն՝ որ ըստ ունակութեանն. քանզի ունակութեանց և գործքն ըստ նմին։ Ուրեմն որ արդար ունակութիւն ունի՝ արդարացի գործէ, և որ անիրաւն՝ անիրաւս. 'ի մեզ ուրեմն է և անիրաւս գոլ կամ արդարս։

Իսկ զի են ինչ՝ որ 'ի մեզն է առնելն, յայտնեն յորդորմունք և խրատք. քանզի ոչ ոք յորդորէ զմարդ ոչ քաղցնուլ կամ ոչ ծարաւել, այլ և ոչ՝ թռչել. քանզի ոչ 'ի մեզ առնելն զայն. արդ՝ յայտ է որոց յորդորմունք են՝ այսոքիկ են 'ի մեզ։

Եւս, եթէ ոչ ինչ է 'ի մեզ՝ աւելորդ են օրէնք. քանզի բնաւորապէս ամենայն ազգ օրինօք իւիք վարի, գիտելով թէ իշխանութիւն ունին գործել զորս ինչ օրինադրեն։ Եւ բազումք յազգաց զաստուածս ոմանս մակադրեն օրինադիրս, որպէս Կրետացիք զԴիոս և Ղակեդեմոնացիք զԱպողոն։ Բնաւորապէս ուրեմն ամենայն

մարդկան գիտութիւն՝ որոյ 'ի մեզն է առնելն ափոփ։ Զնոյնս ասելի է նոցա և 'ի վերայ պարսաւիցն և գովիցն, և ամենայն՝ որ 'ի բաց բառնայն ըստ ճակատագրին լինել զամենայն։

## ԳԼՈՒԽ ՔԱՌԱՍՆԵՐՈՐԴ

*Յաղագս որոյ[1] թէ են ինչ՝ որ 'ի մեզ է առնելն։*

Եւ զի են ինչ՝ որ 'ի մեզ է առնելն, և զի տեսարք եմք գործոց ոմանց՝ բաւականապէս ցուցաւ. բայց ասասցուք՝ թէ ո՞յք են որ 'ի մեզն է առնելն։

Ասեմք այժմ սեռականապէս՝ զամենայն զորս 'ի ձեռն մեր կամաւորապէս գործեմք՝ 'ի մեզ գոլ. քանզի ոչ արդեօք կամաւորութեամբ ասիւր գործել, եթէ առնել զգործն ոչ էր 'ի մեզ. և պարզաբար՝ որոց հետևի պարսաւ կամ գով, և յորոց վերայ է յորդորումն և օրէնք. քանզի և այս յառաջագոյն ցուցաւ։ Եւ տիրապէս 'ի մեզ են անձնականք ամենայն և յաղագս որոց խորհիմքն. քանզի որպէս 'ի մեզ գոլով՝ գործել զոր առաջի կայ և ոչ գործել՝ խորհիմք։ Եւ ցուցաւ յառաջագոյն՝ խորհուրդ 'ի վերայ հաւասարին գոլ հնարաւոր, և է հաւասար հնարաւոր՝ նոյն զոր կարեմքն և հակակայն նորա, և առնէ զայսոսիկ և յօժարութիւնն՝ միտքս մեր[2]. և սա է սկիզբն գործոցն։ Եւ այսոքիկ են որ 'ի մեզն է առնել՝ հաւասարապէս հնարաւոր, իբր՝ շարժիլն և ոչ շարժիլ, 'ի վեր դիմելն և ոչ դիմելն, ոչ ցանկալ ոչ կարևորացն և ցանկալ, ստել և ոչ ստել, տալ և ոչ տալ, խնդալ ընդ որս պարտ է և ոչ խնդալ. և որքան այսպիսիք են, յորս ենն չարութեան և առաքինութեան գործք. քանզի այսոքիւք եմք անձնիշխանք։

Ի հաւասարապէս հնարաւորացն են և արուեստք. զի ամենայն արուեստք 'ի լինել հնարաւորացն է՝ և գոլ և ոչ գոլ, և սկիզբն յարարողին է և ոչ յարարելումն.

1 Օրինակ մի՝ Յաղագս թէ են, և այլն։ — Ըստ յունին իմանալի է, Յաղագս թէ ոյք իցեն որք ընդ մերով անկանին իշխանութեամբ։
2 Յոյնն ասէ. Եւ յօժարութիւն այսոցիկ գտանի 'ի միտս մեր։

քանզի ոչինչ՝ ոչ 'ի մշտնջենաւորացն և 'ի հարկէ էիցս և ոչ 'ի հարկաւորացն եղելոց՝ ըստ արուեստի լինել ասի։ Այլ և ոչ յեղելոցն 'ի հնարաւորսն՝ և այլազգ ունել ինքեանց զարարողականն պատճառ. որպէս ոչ 'ի վերայ կենդանեացն և տնկոցն՝ ըստ արուեստի ինչ ասին լինել, քանզի բնութեամբ և ոչ արուեստիւ։ Իսկ եթէ ըստ արուեստի եղելոցն՝ արտաքուստ է պատճառն որ առնէ, ո՞վ արդեօք է պատճառն ըստ արուեստի եղելոցն՝ քան զարուեստաւորն որ առնէն։ Քանզի արուեստաւորին է առնելն, սա ուրեմն է սկիզբն և պատճառ առնելոյն։ Ի մեզ են ուրեմն և ըստ արուեստի ներգործութիւնքն և առաքինութիւնք և ամենայն գործք անձնականք[1]։

Իսկ բազումք կարծելով ասել զանձնիշխանականն 'ի վերայ ամենայն գործոց և ստացուածոց և բախտի՝ անգոսնեն յիրաւի զբանս։ Իսկ դաժանագոյնքն և զԳիրս 'ի յանդիմանութիւն բերելով՝ «զՈչ 'ի մարդոյն 'ի վերայ գոլ զճանապարհս իւր», ո՞վ վեհքդ, ասեն, զիա՞րդ է անձնիշխան մարդ՝ որ երբեմն ոչ նորա էին ճանապարհք իւր. «Ի նանիր են խորհուրդք մարդկան», որպէս ոչ կարողաց 'ի մեզ 'ի գործ ածել զոր մտածեմքն. և այսպիսիս բազումս ասեն, ոչ գիտելով թէ զիա՞րդ տաի անձնիշխանականն[2]։ Քանզի ոչ հարստանալոյ կամ աղքատանալոյ, կամ ողջ գոլոյ կամ ուժգին՝ ըստ բնութեան, կամ բոլորովին գործարանականացն կամ դիպուածոյն ասացելոյն բարութեանցն կամ՝ ըստ նախախնամութեան վախճան ասելոցն՝ ունիմք իշխանութիւն. այլ որոց ըստ առաքինութեան և չարութեան գործոց, և յօժարութեանց և չարժութեանց, և որոց հաւասարապէս և զհակակայսն գործել կարեմք. վասն զի ամենայն գործոյ նախայօժարութիւնն առաջնորդէ։

1 Յոյն բնագիրն յաւելու աստանօր. Իսկ թէ զինչ իցեն գործքանձինն և իրք՝ ցուցաւ յառաջագոյն։

2 Լծմն. — Դաժանագոյն ասէ զչռայլսն և զպոռնիկսն, և այլ այսպիսի բարուքն դաժանքն, որ ոչ կամին զմարդն անձնիշխան։ Ի մէջ առնու 'ի Գրոց, զոր Յոբ ասաց, թէ «Մարդոյ ոչ իւր են ճանապարհք իւր», որպէս և Երեմիա ասէ. և թէ «Ճանաչէ Տէր զխորհուրդս մարդկան՝ զի են ընդունայն»։

Եւ ոչ միայն գործն, այլ և նախայօժարութիւնն ընդ դատաստանաւ է. և զայս յայտնէ յԱւետարանին. Որ հայի 'ի կին՝ ցանկանալ նմա, անդէն շնացաւ ընդ նմա 'ի սրտի իւրում: Եւ Յովբ վասն 'ի մտածութիւնս իւրեանց՝ յանցանաց որդոցն իւրոց՝ պատարագս մատուցանէր: Քանզի սկիզբն մեղաց և արդարագործութեան՝ նախայօժարութիւնն է:

Զի գործն երբեմն թոյլ տուեալ լինի 'ի նախախնամութենէն և երբեմն արգելեալ. քանզի գոլով Ա որ 'ի մեզն է, գոլով և նախախնամութեանն, հարկ է ըստ երկոցունցն լինել եղելոցն. զի թէ ըստ միոյն միայն լինէր՝ ոչ արդեօք էր միւսն. բայց խառն գոլով եղելոցն՝ երբեմն ըստ որում 'ի մեզն է պատահեսցի, և երբեմն ըստ նախախնամութեանն բանի, և երբեմն ըստ երկոցունց:

Իսկ նախախնամութեանն՝ մերթ հասարակաց գոլով և մերթ առանձնապէս, հարկ է որոց ըստ բոլորումն և որք ըստ մասին են՝ ախտակիցն լինել: Քանզի պարունակողին չոր[1] գոլով՝ չորանան և մարմինքն, թէ և ոչ ամենայն նմանապէս. նմանապէս և մօր ոչ բարւոք կերակրեցելոյ, հետևաբար ծնեալքն և մարմնոյ չար խառնուածովն և յարձակմամբքն՝ ջանգք ծնանին: Եւ յայտ է յասացելոցն թէ պատահի և 'ի խառնուածոյ ոչ 'ի բարեբախտութիւն անգանիլ, կամ 'ի հասարակաց պարունակողէն, կամ 'ի կամաւոր նօթութենէ ծնողաց, և կամ նոցին նոցունց 'ի փափկութենէ ապականեցելոց. որպէս զի և զխառնուածսն 'ի կամաւոր սկսմանէ՝[2] է երբեք զի և վատթարսն կազմիլ և (կամ) ոչ. և ոչ զնախախնամութիւնն ամենայն իրօք պատճառս գոլ այսպիսեաց:

Արդ, յորժամ անձն՝ զխառնուածոյ մարմնոյ զհետ երթեալ՝ ցանկութեանց կամ սրտմտութեանց զինքն տացէ, 'ի դիպուածոցն ըմբռնեսցի կամ թողասցի, իբր յաղքատութենէ կամ 'ի հարստութենէ, կամաւոր չար

1 Յօրինակս՝ պարունակող ինչ որ կամ ոչ գոլով. ուղղեցաւ ըստ յունարէն բնագրին:

2 Ի լուսանցս՝ իսկզբանէ:

կրէ, քանզի ոչ երթալովն զհետ յուղղութիւն գայ և յաղթէ չարի խառնուածոցն, որպէս զի այլայլել յաւէտ և ոչ այլայլել. և ածէ զանձնականսն տրամադրութիւնսն 'ի բարւոք ունակութիւնս, պիտանի վարուք և պարկեշտ կերակրովք։ Եւ յայտ է յուղղութիւն եկելոցն՝ (զի) ոչ եկեալքն յուղղութիւն՝ կամաւորապէս մեղանչեն. քանզի 'ի մեզ է ընթացակիցն լինել չար խառնուածոցն, և կամ դիմանալ և յաղթել։ Իսկ բազումք զչար խառնուածն որպէս պատճառ ախտիցն բերեալ յառաջ, հարկի և ոչ յօժարութեան մակագրեն զչարութիւնն, և վասն այսորիկ, ասեն, և ոչ զառաքինութիւնս 'ի մեզ գոլ, յոյժ անտեղաբար։

## ԳԼՈՒԽ ՔԱՌԱՍՆԵՐՈՐԴ ԱՌԱՋՆԵՐՈՐԴ

*Թէ վասն զինչ պատճառի անձնիշխան եղեաք։*

Առաջի կայ մեզ ասել թէ վասն զինչ պատճառի անձնիշխանք եղաք։ Արդ ասեմք՝ անդէն ընդ բանականութեանն մտանել 'ի ներքս անձնիշխանութեանն. և եղականացս՝ բնաւորակից լինել փոխադրութիւն և յեղումն, մանաւանդ՝ որք 'ի ստորակայիս նիւթոյ եղեալք. քանզի սկիզբն եղելութեանն՝ յեղումն է, զի յայլայլութենէ ստորակայիս նիւթոյ է լինելութիւն։ Եւ 'ի միտ առցէ ոք արդեօք զասացեալս՝ հայելով 'ի տունկս և 'ի կենդանիս ցամաքայինս, թռչունս և ջրայինս, քանզի յաճախէ սոցա փոխադրութիւնս։

Իսկ զի և ընդ բանականութեանն 'ի ներքս մտանէ անձնիշխանութիւնն, յասացելոցն՝ յաղագս որոյ 'ի մեզ գոլն ինչ, որոց ոչ վարկպարազի է և այժմ յիշեցուցանել, զնոյն հետեւմանս խնդրելով զնոսա։ Բանականին է ինչ՝ որ տեսական է, և է ինչ՝ որ գործական։ Տեսական է՝ որ ըստ մտաց թէ որպէս ունին էքս, իսկ գործական՝ խոհեցողականն, սահմանել գործելեացն զուղիղն բան։ Եւ կոչեն զտեսականն՝ միտս, իսկ զգործականն՝ բան, և զոմն իմաստութիւն և զոմն խոհականութիւն։ Եւ ամենայն որ խորհի՝ որպէս 'ի վերայ նորին

գոլով յօժարութեան գործարանացն՝ խորհի, զի զնախադատեալն 'ի խորհրդոյն առցէ, և զառեալն գործեսցէ։ Արդ, հարկ է ամենայնիւ՝ որ ունի զխորհելն՝ և տէր գործոցն գոլ. քանզի եթէ տէր ոչ իցէ գործոցն՝ աւելորդ ունի զխորհելն. և եթէ այս՝ 'ի հարկէ առընթաւորի բանականին անձնիշխանականն. քանզի կամ ոչ եղիցի բանական, և կամ բանական գոլով՝ տէր եղիցի գործոցն, և տէր գոլով գործոցն՝ ամենայն իրօք և անձնիշխան եղիցի։ Ցուցաւ և որ 'ի ստորակայէս նիւթոյ եղականք՝ փոփոխելիք գոլ։ Յերկոցունց ուրեմն ժողովի՝ մարդոյն 'ի հարկէ անձնիշխան և փոփոխելի գոլ. փոփոխելի՝ վասն զի եղական է, իսկ անձնիշխան՝ վասն զի և բանաւոր։

Արդ, որք մեղադրենն զԱստուած՝ եթէ զմարդ ոչ արար չարութեան անընդունակ, այլ անձնիշխան, զանխլանան ինքեանց, մեղադրելով զԱստուած զի բանական արար զմարդն և ոչ անբան. քանզի հարկ է յերկոցունցն մինն, կամ անբան լինել և կամ բանական գոլով և 'ի գործականս շրջելով՝ անձնիշխան գոլ։

Արդ, 'ի հարկէ ամենայն բնութիւն բանական՝ անձնիշխան է. և փոփոխելի ըստ իւրում բնութեան։ Այլ որք 'ի ստորակայէս նիւթեղէն՝ ըստ երկուց յեղանակաց ունին զփոփոխումն, ըստ նիւթոյն և ըստ լինելոյն։ Իսկ որք ոչն եղեն 'ի ստորակայէս նիւթոյ, ըստ միոյն միայն յեղանակի, ըստ լինելոյն են փոփոխելիք։

Դարձեալ, այսոցիկ աննիւթիցն՝ որքան ինչ յերկրաւորքս են, և կցորդութեամբն որ առ մարդիկ՝ 'ի գործականս յեղեալք, յաւէտ են փոփոխելիք քան զայլսն։ Իսկ որք ծառայութեամբն[1] առ Աստուած ըստ կալման մերձին, և զայս 'ի միտ առնլով՝ զերանականն պտղաբերեն յինքեանս, և յԱստուած միայն դարձեալ 'ի գործականացս և 'ի նիւթոյս ամենայն՝ ամենևին զինքեանս օտարացուցեալ, տեսութեանն և Աստուծոյ ընտանացեալք՝ միան անփոփոխելիք. անձնիշխանք գոլով վասըն բանական գոլոյն, և ոչ փոփոխեալք՝ վասն յա-

1 Ի լուսանցսն՝ ծայրութեամբ բնութեան, որ է, ըստ յունին, գերազանցութեամբ բնութեանն։

ռաջագոյն ստացելոցս պատճառի։ Եւ սքանչելի ինչ ոչ է, քանզի և 'ի մարդկանէ՝ որք տեսականք եղեն՝ 'ի գործականացն զինքեանս 'ի բաց որոշեցին, և մնացին անյեղք։

Որպէս և համարիմ՝ ցուցաւ ստացելովք՝ թէ 'ի սկզբանէ բանականքս ամենայն բնութիւնք՝ հաճելիք արարչագործեցան, և եթէ էին մնացեալք նոյնպիսիք՝ որպէս 'ի սկզբանէն արարան, ամենայն չարութեան արտաքոյ արդեօք էին. բայց լինի նոցա չարութիւն ըստ յօժարութեան։ Քանզի այսպէս մնացեալքն՝ ըստ 'ի սկզբանէ լինելութեանն զերանութիւնն ունէին։ Միայն 'ի հրեշտակացն՝[1] յանմարմնոցն յեղան. և ոչ ամենեքին, այլ ոմանք 'ի նոցանէ, որք չեղեցանն առ ներքինսս, զերկրայնոցս փափագումնս ունելով, 'ի վերնոյն և առ Աստուած կալմանէն 'ի բաց որոշեալք։

Ապա ուրեմն 'ի ցուցելոցս յայտ է՝ եթէ սակս բնութեամբ փոփոխելիս գոլոյս մեր՝ զզօրութիւնս յօժարականս փոփոխելիս ունիմք. այլ ոչ վասն ունելոյս փոփոխականս զօրութիւնս՝ չարս գոլոյս մեզ՝ զԱստուած ոք արդեօք մեղադրեսցէ։ Քանզի ոչ 'ի զօրութիւնս են չարութիւնքն, այլ յունակութիւնսն. իսկ ունակութիւնքն ըստ յօժարութեանն են. ըստ յօժարութեանն ուրեմն լինիմք չարք, և ոչ ըստ բնութեանն։

Ուսցի ոք արդեօք զասացեալսն այսպէս. յորոց յառաջ քան զայս՝ զօրութիւնս ասէաք գոլ, յորմէ իւրաքանչիւր ինչ զոր առնեմք՝ առնել կարեմք. և ամենայն յօժարական զօրութիւն՝ նոյն և հակակայիցն է. քանզի մի և նոյն զօրութիւն է ստելոյ և ճշմարտելոյ, և մի և նոյն զօրութիւն է պարկեշտանալոյ և վաւաշոտելոյ. բայց ոչ ևս նոյն ունակութիւն՝ հակակայիցն է, որզան, վաւաշոտելոյն և պարկեշտանալոյն, կամ ստելոյն և ճշմարտելոյն, այլ ներհակացն ներհակք։ Քանզի պարկեշտանալն՝ առաքինութեան ունակութիւն է, իսկ վաւաշոտելն՝ չարութեան։ Ոչ ուրեմն են զօրութեանն չարութիւնք, այլ ունակութեանցն և յօժարութեանն. քանզի ոչ զօրութիւնն է՝ որ տայն մեզ վաւաշոտել կամ

[1] Յօրինակս երկուս՝ հրեշտակք։

ատել, այլ յօժարութիւնն. քանզի 'ի մեզ է ճշմարտել կամ ստել: Արդ, եթէ ոչ է չարութիւն, այլ ունակութիւն, ոչ՝ որ զզօրութիւնն 'ի մեզ ետ՝ է պատճառ չարութեանցն, այլ ունակութիւնն՝ որ առ 'ի մէնջ և 'ի ձեռն մեր և վասն մեր առեալ. քանզի պարտ էր զհակառակ ունակութիւնն 'ի կրթութենէ ստանալ և ոչ զչարն:

Եւ տարբերի զօրութիւնն յունակութենէն. զամենայն զզօրութիւնս 'ի բնաւորականս գոլոյն, բայց զունակութիւնս եկամուտս. և զզօրութիւնս անուսանելիս գոլով, բայց զունակութիւնս յուսմանէ և 'ի սովորութենէն լինելով: Արդ, եթէ զօրութիւն՝ բնաւորական իմն է և անուսանելի, իսկ ունակութիւն մակստացական է և ուսանելի, ոչ բնութիւնս է պատճառ չար էութեանցն, այլ չարաչար վարիլն մեր, և վասն այսորիկ զչար ունակութիւն ստանալ. քանզի ամենայն ունակութիւն՝ մակստացական ցուցաւ:

Եւ զի բնութեամբ են զօրութիւնքն՝ յայտ է յամենեցունցն զնոյնս ունելոյն զօրութիւնս, բայց 'ի տկարացելոցն[1]. և զի ունակութիւնքն ափշեցելոյն[2] ոչ բնաւորականք, յայտ է ոչ ամենեցունց զնոյն ունակութիւնս, այլ այլոց այլս. քանզի բնութեամբքն՝ ամենայն յամենեսին[3]:

## ԳԼՈՒԽ ՔԱՌԱՍՆԵՐՈՐԴ ԵՐԿՐՈՐԴ

### Յաղագս Նախախնամութեան:

Արդ, զի անձնիշխան է մարդ, և որոց է անձնիշխան, և վասն զինչ պատճառի անձնիշխան եղև, բաւականապէս ասացաւ յառաջագոյն. իսկ վասն զի ոչ ամենայն՝ որոց առաջի եդեալ զպատանանելն, ամենայն իրք սպա-

1 Օրինակ մի՝ տարակացելոցն:

2 Օրինակ մի 'ի լուսանցսն գնէ չափեցելոցն. իսկ 'ի յունարէնն չիք այդ բառ, այլ լոկ թէ «Եւ զի ունակութիւնքն (αἱ ἕξεις) ոչ 'ի բնէ են», և այլն:

3 Իմա. քանզի այն որ 'ի բնութենէ ինչ է՝ հաւասար գտանի յամենեսին:

նանէ, այլ երբեմն ապանանէ և երբեմն ոչ, գործոյն խափանեցելոյ և ոչ ընթացելոյ ըստ դիպմանն, զնախախնամութիւնն ասեմք այսոցիկ պատճառ գոլ և ոչ ճակատագիրն. հետևող է՝ որոց 'ի մեզն է՝ առնել յաղագս նախախնամութեանն բան ։

Տարորոշի և սա յերիս, նախ՝ թէ է նախախնամութիւն, երկրորդ՝ զի՞նչ է, երրորդ՝ որո՞ց է ։

Այլ Հրէայն՝ ո՞չ արդեօք այնքան մոլորեալ անգիտանայցէ զնախախնամութիւնն, գիտելով զորս յեգիպտոսն՝ սքանչելիսն, լուեալ և զորս յանապատին, որովք բազմափայլագոյնս քան զերևելիս սերեցաւ մարդկան նախախնամութիւն, բազում ինչ և մարգարէիւք և 'ի Բաբելոնի՝ տեսեալ գործս նախախնամութեան ։ Եւ ոչ մի ինչ երկբայութիւն ընկալեալ զքրիստոնեայս, և այսոքիկ ամենայն ուսուցանեն նախախնամութիւն գոլ. մանաւանդ զաստուածայինն և զգերազանցեալ մարդասիրութիւնն, անհաւատալի գործ նախախնամութեանն, զվասն մեր մարմնաւորութիւնն Աստուծոյ ։

Իսկ վասն զի ոչ առ նոսա միայն է բանս, այլ և առ 'ի հեթանոսս, բեր և 'ի ձեռն այլոց՝ որովք նոքայն հաւատան՝ ցուցցուք նախախնամութիւն գոլ ։ Արդ, զի է նախախնամութիւն՝ 'ի ձեռն նոցունց ոք արդեօք ցուցցէ, որովք թէ Աստուած է՝ ցուցաք ։ Քանզի յարամնայութիւն ամենայնի, և մանաւանդ որքան եղելութեամբն և ապականութեամբն, և դրութիւն և կարգք էից միշտ պահպանեալք, ըստ նորին յեղանակի և աստեղաց բերումն, և ոչ ինչ ոչ երբեք փոխել, շրջագայութիւնք տարւոյ, և ժամուց դարձումն, տունջեան և գիշերոյ՝ որ ըստ տարւոյն հաւասարութիւնն, պակասամասնութիւն իւրաքանչիւր ուրուք՝ աճելով և նուազելով, ոչ նուազ և ոչ առաւել չափով, զի՞րդ արդեօք կատարէր նմանապէս՝ հաւանեալ եթէ ոչ էր նախախնամութիւնն ։

Եւ ոչ այս միայն, այլ և յանցանացն հետևելն պատիժ, յայտ զի և նոցունց մեղացն յայտնութեն՝ յորժամ ոչ ոք գոլով յանդիմանիչ՝ ոմանց վտանգից 'ի յերևոյթ գայ, և ցուցանէ նախախնամութիւն գոլ ։ Լի են այսպիսեօք պատմութեամբք և՛ Եբրայեցւոցն գիրք և՛ Հելլենացւոցն պատմութիւնք ։ Քանզի այսպիսի ինչ աստա-

ցան 'ի դիրս և վասն Շուշանայ կրիցն. իսկ Հեղենացւոցն և վասն Իւբեկեայ[1] բանաստեղծի. քանզի 'ի սպանանելն զնա ոմանց՝ ոչ զոք օգնական և վկայ դաւաճանութեան ունելով, և տեսեալ երամ խորդուց՝ Դուք, ասէ, ով խորդք, խնդրեսջիք զվրէժ սպանմանս իմոյ։ Իսկ քաղաքին խնդրեալ զսպանողսն, և ոչ կարացին գտանել։ Դէպ եղև թէատրոն, և մինչդեռ նստէին ռամիկքն, տեսեալ զնոսա սպանողացն՝ ծիծաղեցան և ասեն. Ահա վրէժխնդիրքն Իւբեկեայ։ Իսկ մի ումն յորոց մերձ նստէին՝ լուաւ. պատմեաց իշխանացն. և ըմբռնեալք՝ խոստովանէին զսպանումն։ Շատից և այլոց այսպիսեաց է գրեալ զհնոցն. զոր թէ ոք կամեսցի ժողովել՝ յանբաւ յերկայնութիւնս ձգի բանս։ Իսկ եթէ ոչ ամենեցունց որք մեղանչենն՝ նոյն յեղանակ յանդիմանութեան գայ 'ի վերայ, այլ է երբեք զի և զերծանիլ կարեն, մի ոք ուրասցի վասն այսորիկ զնախախնամութիւն. քանզի ոչ ըստ միոյ միայն յեղանակի առնէ զմարդկան հպատակս, այլ ըստ բազմաց և ըստ տարբերից։

Ոչ վայրապար ինչ գոլ ցուցանէ նախախնամութիւն և մարմնոցն՝ որ 'ի լինելութեան և յապականութեան՝ կազմութիւն և համեմատութիւն, հանապազ նմանապէս պահեալ։ Քանզի ամենայն մասին մարմնոյ երևի նախախնամութեան գործ, զորս ջանասիրացն է պարտ 'ի յոլովից գրոց ժողովել։ Իսկ և գունոցն զանազանութիւն որ 'ի կենդանիսն զնոյն զարդ միշտ պահելով աղաղակէ նախախնամութիւն գոլ։ Եւ համարակաց առ 'ի յամենայն մարդկանէ խոստովանեալն՝ թէ պարտ է աղօթել և ուրախացուցանել զԱստուած պատարագօք և այլովք այսպիսեօքս, նախախնամութեանն է յայտնողական, զի առանց նախախնամութեան գոլով ամենայնի, ով արդեօք կամ զինչ ոք աղօթեսցէ։ Եւ փոյթ՝ որ յերախտաւորութիւնսն բնաւորապէս յանթիւրելիսն փութացեալ, զնախախնամութիւնսն երևեցուցանէ. քանզի որ յայսմանէ[2] վարձուց ակն ունելով, և զոր ոչ

1 Τὸ κατὰ Ἴβυκον τὸν ποιητήν.
2 Այս է՝ 'ի նախախնամութենէ։

նանէ, այլ երբեմն սպանանէ և երբեմն ոչ, գործոյն խափանեցելոյ և ոչ ընթացելոյ ըստ դիպմանն, զնախախնամութիւնն ասեմք այսոցիկ պատճառ գոլ և ոչ ճակատագիրն. հետևող է՝ որոց 'ի մեզն է՝ առնել յաղագս նախախնամութեանն բան։

Տարորոշի և աս յերիս, նախ՝ թէ է նախախնամութիւն, երկրորդ՝ զի՞նչ է, երրորդ՝ որո՞ց է։

Այլ Հրէայն՝ ո՞չ արդեօք այսքան մոլորեալ անգիտանայցէ զնախախնամութիւնն, գիտելով զորս յեգիպտոսն՝ սքանչելիսն, լուեալ և զորս յանապատին, որովք բազմափայլագոյնս քան զերևելիս սերեցաւ մարդկան նախախնամութիւն, բազում ինչ և մարգարէիւք և 'ի Բաբելոնի՝ տեսեալ գործս նախախնամութեան։ Եւ ոչ մի ինչ երկբայութիւն ընկալեալ զքրիստոնեայս, և այսոքիկ ամենայն ուսուցանեն նախախնամութիւն գոլ. մանաւանդ զաստուածայինն և զգերազանցեալ մարդասիրութիւնն, անհաւատալի գործ նախախնամութեանն, զվասն մեր մարմնաւորութիւնն Աստուծոյ։

Իսկ վասն զի ոչ առ նոսա միայն է բանս, այլ և առ 'ի հեթանոսս, բե՛ր և 'ի ձեռն այլոց՝ որովք նոքայն հաւատան՝ ցուցցուք նախախնամութիւն գոլ։ Արդ, զի է նախախնամութիւն՝ 'ի ձեռն նոցունց ոք արդեօք ցուցցէ, որովք թէ Աստուած է՝ ցուցաք։ Քանզի յարամնայութիւն ամենայնի, և մանաւանդ որքան եղելութեամբն և ապականութեամբն, և դրութիւն և կարգք էիցս միշտ պահպանեալք, ըստ նորին յեղանակի և աստեղաց բերումն, և ոչ ինչ ոչ երբեք փոխել, շրջագայութիւնք տարւոյ, և ժամուց դարձումն, տունջեան և գիշերոյ՝ որ ըստ տարւոյն հաւասարութիւնն, պակասամասնութիւն իւրաքանչիւր ուրուք՝ աճելով և նուազելով, ոչ նուազ և ոչ առաւել չափով, զի՞արդ արդեօք կատարէր նմանապէս՝ հաւանեալ եթէ ոչ էր նախախնամութիւնն։

Եւ ոչ այս միայն, այլ և յանցանիացն հետևելն պատիժ, յայտ զի և նոցունց մեղացն յայտնումն՝ յորժամ ոչ ոք գոլով յանդիմանիչ՝ ոմանց վտանգից 'ի յերևոյթ գայ, և ցուցանէ նախախնամութիւն գոլ։ Լի են այսպիսեօք պատմութեամբք և՛ Եբրայեցւոյն գիրք և՛ Հելլենացւոցն պատմութիւնք։ Քանզի այսպիսի ինչ ասա-

ցաւ 'ի գիրս և վասն Շուշանայ կրիցն. իսկ Հեղենացւոցն և վասն Իւբեկեայ[1] բանաստեղծի. քանզի 'ի սպանանելն զնա ոմանց՝ ոչ զոք օգնական և վկայ դաւաճանութեան ունելով, և տեսեալ երամ խորդուց՝ Դուք, ասէ, ով խորդք, խնդրեցէք զվրէժ սպանմանս իմոյ: իսկ քաղաքին խնդրեալ զսպանողսն, և ոչ կարացին գտանել: Դէպ եղև թէատրոն, և մինչդեռ նստէին ռամիկքն, տեսեալ զնոսա սպանողացն՝ ծիծաղեցան և ասեն. Ահա վրէժխնդիրքն Իւբեկեայ: իսկ մի ոմն յորոց մերձ նստէին՝ լուաւ. պատմեաց իշխանացն. և ըմբռնեալք՝ խոստովանեցին զսպանումնն: Շատից և այլոց այսպիսեաց է գրեալ զհնոցն. զոր թէ ոք կամեսցի ժողովել՝ յանբաւ յերկայնութիւնս ձգի բանս: իսկ եթէ ոչ ամենեցունց որք մեղանչենն՝ նոյն յեղանակ յանդիմանութեան գայ 'ի վերայ, այլ է երբեք զի և զերծանիլ կարեն, մի ոք ուրասցի վասն այսորիկ զնախախնամութիւն. քանզի ոչ ըստ միոյ միայն յեղանակի առնէ զմարդկան հպատակս, այլ ըստ բազմաց և ըստ տարբերից:

Ոչ վայրապար իւնչ գոլ ցուցանէ նախախնամութիւն և մարմնոցն՝ որ 'ի լինելութեան և յապականութեան՝ կազմութիւն և համեմատութիւն, հանապազ նմանապէս պահեալ: Քանզի ամենայն մասին մարմնոյ երևի նախախնամութեան գործ, զորս Ջանասիրացն է պարտ 'ի յոլովից գրոց ժողովել: իսկ և գունոյն զանազանութիւն որ 'ի կենդանիսն զնոյն զարդ միշտ պահելով աղաղակէ նախախնամութիւն գոլ: Եւ հասարակաց առ 'ի յամենայն մարդկանէ խոստովանեալն՝ թէ պարտ է աղօթել և ուրախացուցանել զԱստուած պատարագօք և այլովք այսպիսեօքս, նախախնամութեանն է յայտնողական, զի առանց նախախնամութեան գոլով ամենայնի, ով արդեօք կամ զինչ ոք աղօթեսցէ: Եւ փոյթ՝ որ յերախտաւորութիւնսն բնաւորապէս յանթիւրելիսն փութացեալ, զնախախնամութիւնսն երևեցուցանէ. քանզի որ յայսմանէ[2] վարձուց ակն ունելով, և զոր ոչ

1 Τὸ κατὰ Ἴβυκον τὸν ποιητήν.
2 Այս է՝ 'ի նախախնամութենէ:

են կարող փոխարէն հատուցանել, բարի առնել յօժարեցուցանեմք։

Իսկ Նախախնամութեան 'ի բաց բարձեցելոյ, թոյլ տուեալ լինի անիրաւութիւն՝ որոց կարողն են անիրաւել. 'ի բաց բառնայ և ողորմածութիւն և երկիւղ Աստուծոյ. ընդ նմին 'ի բաց բառնայ հանդերձ այսոքիւք՝ առաքինութիւն և բարեպաշտութիւն. քանզի եթէ ոչ նախախնամէ Աստուած, և ոչ պատժէ և ոչ որոց զբարիսն գործեն՝ յաղթանակս բաշխէ, և ոչ զանիրաւացելոցն վնասս արգելու, ո՜վ արդեօք երկրպագէր Աստուծոյ, եթէ ոչ ինչ իւիք լինէր նպաստ։ Ի բաց բառնայ և մարգարէութիւնն և ամենայն նախագիտութիւն. այլ ոչ համաձայնի այս՝ գրեթէ զօրհանապազ երևեցելոցն. քանզի բազում երևմունք աստուածայինք լինին 'ի պէտս. բազում ինչ և 'ի ձեռն երազոց տուեալ հիւանդաց դեղ. բազում նախախնամութիւնք[1] եկին յառաջ յամենայն ազգ։ Բազում սպանողք, և կամ այլ ինչ չարագործք՝ փախստականք լինին զտիւ և զգիշեր։ Այլ որպէս բարերարն է Աստուած, բարերար գոլով բարեգործէ. և եթէ բարերար գոլով բարեգործէ, և՛ նախախնամէ։

Զինչ պարտ է ասել զստացուածոցս գործ, և զհամեմատութիւն սորա և զյօդաւորութիւն և զգիրն և ըզկարգն և զպէտսն՝ զոր իւրաքանչիւր ումեք տայ ամենայնիւ. և որպէս ոչ կարէ այլազգ բարուք գոլ ունելն՝ քան որում այժմս ունի. և որպէս ոչ յաւելուած ընդունի, և ոչ յէիցս պակասիլ ինչ կարէ, այլ կատարեալ ամենայն և բարի և իմաստասիրաբար և արարչագործապէս են եղեալ։

Այլ արարչագործութեանն բանի տացուք զայսոցիկ արտադրութիւն. զի մի կրեսցուք՝ որ ինչ բազումք յաղագս Նախախնամութեան անգիտողացն[2] կրեցին, քան-

1 Ի լուսանցս օրինակաց՝ Նախագիտութիւն, համաձայն յոյն բնագրին։

2 Ի լուսանցս օրինակացն՝ անգրողացն։ Ըստ յոյն բնագրին իմանալի է. Այլ զայս ամենայն թողցուք 'ի մէջ անել՝ յորժամ զարարչագործութենէ բանք լինիցին, զի մի ըստ օրինակի ոմանց՝ անգիտաբար չփոթեսցուք զարարածոցս լինելութիւն ընդ նախախնամ-

զի զարարածս փոխանակ նախախնամութեան դնեն.
արդ, առաջնորդեալ մեզ 'ի նախախնամութեանն բան
ըստ բազում տարբերութեան. քանզի ոչ է նոյն նախա֊
խնամութիւն և արարածս, զի արարածի գործ է՝
բարիօք առնել զեղեալսն. իսկ նախախնամութեան՝
բարիօքն հպատակել եղելոցն. և ոչ են գոյակից այսո֊
քիկ ամենայն իրօք միմեանց: Որպէս է տեսանել և 'ի
մարգին՝ զոր ինչ ըստ իւրաքանչիւր արուեստի և գոր֊
ծոյ. քանզի ոմանք 'ի նոցանէ միայն առնելովն՝ այնու֊
հետև բարւոք կան, և ոչինչ այլ տանին հոգ. որպէս հիւ֊
սունք և նկարագրողք և անդրիաստեղծք. իսկ ոման֊
միայն հպատակեն և խնամ տանին. որպէս իմն անդէք
ուղք և հովիւք: Ապա ուրեմն և մեք՝ յորում յաղագս
արարածոյս բանի՝ որպէս պարտ է ցուցանեմք եթէ
բարւոք են եղեալքս. իսկ յորում յաղագս նախախնա֊
մութեան՝ թէ Ա՛ պիտանի հպատականացն հանդիպին
յետ լինելոյն:

Զիա՞րդ մարդ 'ի մարդոյ և արջառ յարջառոյ ծնանի,
և իւրաքանչիւր ինչ յիւրմէ սերմանէ բուսանի և ոչ
յայլոյ, եթէ առանց նախախնամութեան են: Քանզի
թէ ասասցէ ոք թէ ըստ իսկզբանէ լինելութեան՝ յօդ֊
մամբ իմն յառաջ գայ իրն, զայս լինի ասացեալն՝ թէ
ընդ արարածոյ գոյակից է ամենայն իրօք նախախնա֊
մութիւնն: Քանզի յօդմամբ յառաջ դալն արարածոյն՝
յայտնէ ընդ արարածոցն լինել և զնախախնամութիւն.
քանզի նախախնամութեան է յետ առնելոյն՝ յառաջն
գալ էիցս: Եւ այսպէս ոչ այլ ինչ ոք արդեօք ասիցէ,
քան թէ զնոյնն զօլ արարչագործ՝ համանգամայն և նա֊
խախնամող էիցս:

Ո՞վ ոք տեսանելով զկերպից մարդկան փոփոխումն
յայնչափ բեւրս, և ոչ ուրեք անգանել 'ի միմեանս,
ոչ զքանչանայցէ ընդ գործն: Զմտաւ ածեալ զպատ֊
ճառն՝ գտցէ նախախնամութեան սակս զտարբերու֊

մութեան. զի Թէպէտ և ստեղծանելոյն բան առաջնորդէ մեզ առ֊
խնդիր նախախնամութեան, այլ խտիր մեծ 'ի միջի կայ ընդ արար֊
չագործել և ընդ նախախնամել. քանզի ոչ նոյն է նախախնամու֊
թիւն և արարածս (առնելն), և այլն:

թիւն կերպից՝ այլ և այլ իւրաքանչիւր ուրուք։ Քանզի տես, զի եթէ նոյն կերպարան պահէր ամենեցունց՝ անվրէպ նմանութեամբ, որքան ինչ շփոթումն իրաց լինէր. որքան անգիտութիւն և խաւար ունէր զմարդն՝ ոչ զիւր ճանաչելով և ոչ զօտարն, կամ զթշնամին կամ զվստահարն 'ի սիրելոյն և 'ի պիտանոյն որոշել. քանզի ամենայն ինչ լինէր ճշմարտապէս խառնակ իր, ըստ Անաքսագորայ[1]։ Եւ այսօրիկ այսպէս գոլով ոչ ինչ արգելոյր ընդ քերց կամ ընդ մարց լինել, և յափշտակել և ոչ այլ ինչ չար գործել յայտնապէս, թէ առժամն միայն խոյս տայր. քանզի ոչ ոք զնա ճանաչէր յետ այնորիկ։ Ոչ արդեօք ոչ օրէնք և ոչ քաղաքավարութիւն կարգիւր. ոչ հարք և ոչ որդիք զմիմեանս գիտէին, և ոչ այլ ինչ էր հաստատուն մարդկան, քանզի որպէս կոյր իմն լինէր մարդն. բայց միայն 'ի հասակէ և 'ի մեծութենէ՝ այլ ոչ ինչ ճանաչիւր։ Այսքան բարութեան եղև մեզ պատճառ նախախնամութիւն, զանազանելով զկերպարանս մարդկան հանապազ, և ամենայն ուրեք և ոչ 'ի միում ժամանակի յառնելոյն զայս նուազեալ։ Որ և մեծ իմն նշան է հանդիպել նախախնամութեան, և իւրաքանչիւր ոք տպով ստեղծուածոյ պատկերին և ձայնիւն ճանաչին[2], քանզի չափաւորապէս և զայս յաւել 'ի մեզ նախախնամութիւն։ Եւ զգունոցն զտարբերութիւն, զի ըստ բազում յեղանակի օգնեսցի մարդոյս բնութեան տկարութիւն։

Վարկանիմ և զբազումս 'ի կենդանեաց և՛ ըստ տեսակի համաձևս, որպէս են ագռաւք, ունել ինչ ըստ տեսակաց տարբերութիւնս, որով ճանաչեն ըստ զուգակցութեան զմիմեանս։ Քանզի ագռաւք երամանան և յոլովակի 'ի բաց զատանին ըստ զուգակցութեանն, իւրաքանչիւր ուրուք ճանաչելով զմիմեանս զուգակցացն. զիա՞րդ արդեօք ճանաչէին զմիմեանս,

1 Լծմն. — ԶԱնաքսագորայ խառնակ իր առէ. զանդահարեւն առէ, որ ամենն խառնեցաւ, ոտք և ձեռք և գլուխ, որ բաժանէիր ոչ։

2 Իմա, զի իւրաքանչիւր ոք ոչ միայն տպով ստեղծուածոյ պատկերին, այլ նաև ձայնիւն ճանաչի։

եթէ ոչ ինչ էր 'ի նոսա ըստ իւրաքանչիւրում տեսա-կի պատկեր, մեզ դժուարորոշք, բայց իւրայոցն դիւ-րաւ ճանաչելիք[1]։

## ԳԼՈՒԽ ՔԱՌԱՍՆԵՐՈՐԴ ԵՐՐՈՐԴ

*Ցուցանէ թէ զինչ է նախախնամութիւն։*

Այլ զի է նախախնամութիւն՝ և 'ի ձեռն այսորիկ յայտ է և որովք ասելոցս եմք։ Ասասցուք եթէ զինչ է նախախնամութիւն։ Նախախնամութիւն է՝ յԱստուծոյ յէսս եղեալ հպատակումն։ Սահմանեն և այսպէս զնախա-խնամութիւն. Նախախնամութիւն է կամք Աստուծոյ, որով ամենայն էքս առնուն զպատեհն իւրեանց ելս։ Իսկ եթէ Աստուծոյ կամքն են նախախնամութիւնն, հարկ է ամենայնիւ և ըստ ուղիղ բանի, և գեղեցիկս և աստուածավայելուչս և ամենեւին բարուոք լինել եղե-լոցս, որպէս զի լաւագոյն ինչ կարգ այլ ոչ ընդունել։ Հարկ է և նորին (Աստուծոյ) գոլ արարիչ էիցս և նա-խախնամող. զի և ոչ իսկ է վայելուչ այլում առնել և այլ ումեք հպատակել եղելոցս, քանզի և 'ի տկարութեան տեսեալ լինի այսպիսիս։

Բազում ինչ և յանքանս կայ ասացելոցս։ Ամենայն ինչ որ ծնանի և կերակրով հպատակէ ծնիցելոցն։ Իսկ մարդ՝ և այլոցն ամենեցունց որոց ըստ կենցաղոյս՝ որ-պիսի են նախախնամէ, իսկ որոց ոչն նախախնամէ՝ վասն տկարութեան ոչ նախախնամէ։

Արդ, ցուցաւ Աստուած գոլ նախախնամող. իսկ նա-խախնամութիւն կամք նորա։

1 Յոյն բնագիրն յաւելու աստէն զհետագոյ բանս, որք պա-կասին 'ի ձեռագիր օրինակս մեր. «Նաև նշանք և պատգամք և ըղ-ձութիւնք և սքանչելիք (քանզի առ Յոյնս մանաւանդ են բանք իմ) որք միշտ, ըստ ասելոյ նոցա, 'ի ճշմարիտ յարակցութեան գտանին ընդ դիպելոց իրաց, յայտնապէս ցուցանեն նախախնամութեան, և հաւաստի գործեն զազդեցութիւն նորա 'ի վերայ եղելոցն իրաց»։ — Յետ այսորիկ՝ 'ի յոյնն նոր գլուխ բանից սկսանի, առաջինն խորագրաւ, ըստ որում և մեք կարգեցաք յառաջնկայս. այլ ձեռա-գիր օրինակք մեր՝ միաբար ընդ առաջնոյն ունին զհամառօտս զայս գլուխ բանի։

# ԳԼՈՒԽ ՔԱՌԱՍՆԵՐՈՐԴ ՉՈՐՐՈՐԴ

*Յաղագս թէ ո՞յց է նախախնամութիւն ։*

Արդ՝ զի է նախախնամութիւն և զինչ է՝ ասացաւ. բայց ասելի է՝ թէ ո՞յց է նախախնամութիւնն. արդեօք ըստ բոլորում թէ ըստ իւրաքանչիւրում, թէ՝ ըստ բոլորում և ըստ իւրաքանչիւրեցն ։

Պղատոն[1] և՛ զորս ըստ բոլորում և՛ զորս ըստ իւրաքանչիւրեցն՝ նախախնամութեան կարգաւորել ախորժէ. տարորոշելով զնախախնամութեանն բան՝ յերիս. քանզի առաջին զոլ զառաջնոյն Աստուծոյ[2], և նախախնամել սմա նախատեսութեանցն, ապա ամենայն բոլոր զարդուն, իբրև երկնից և աստեղաց, և ամենայնի որոց ըստ բոլորումն, այսինքն ըստ սեռից, էութեան և որակութեան և քանակութեան և այլոց այսպիսեաց, և ընդ սոքօք ստորադասեցելոյն տեսակաց ։ իսկ լինելութեան անհատիցն կենդանեացն և տնկոցն, և ամենայն՝ որք լինելութեամբ և ապականութեամբ, զերկրորդան զաստուածսն՝ զորս շուրջ զերկնիւ՝ ասէ զոլ նախախնամողս ։ Եւ Արիստոտելէս զայնոցիկ լինելութիւն վերագրէ արեգական և կենդանատեսակացն շըրջագայութեան ։ իսկ ելիցն և վախճանի գործականաց, և հանգիպման՝ որոց ըստ կենցաղոյս բնաւորականաց և նիւթականացն և գործարանականացն կոչեցելոցն բարութեանց և զայսոցիկ հակակայիցն, զերրորդն ասէ զոլ նախախնամութիւն Պղատոն. և առաջնորդել այսմիկ՝ զիւաց ոմանց կարգեցելոց 'ի յերկրի և պահապանս գործոց մարդկան ։ Եւ լինէր (ըստ Պղատոնի) երկրորդին և երրորդին նախախնամութեան զոլն՝ յառաջնոյն Աստուծոյ կարգաւորեալ, ամենայնի կարգողին[3] առաջինս և երկրորդս և երրորդս նախախնամողս ։

1 Ի գիրս Օրինացն. Գլ. Ժ ։

2 Լծմն. — Առաջ՚ն նախախնամութիւն ասէ յԱստուծոյ եղեալ, յառաջին և մեծ Աստուծոյն, (πρώτην μὲν γὰρ εἶναι, τοῦ πρώτου θεοῦ).

3 Յօրինակն մեր՝ կարողին. ուղղեցաւ ըստ յոյն բնագրին ։

Արդ, յԱստուած վերաբերելն զամենայն և նորա կամացն հաստատիլ ասել ամենայն նախախնամութեան՝ արժանի է գովելոյ, բայց ոչ ևս և երկրորդն ասել նախախնամութիւնս, զորս շուրջ զերկնիւն։ Քանզի ոչ նախախնամութիւն է եղեալն, այլ ճակատագիր և հարկ. քանզի որպէս նոքայն ձևանան՝ հարկ է և եղելոցն լինել, և այլազգ ոչ գոլ հնար։ Իսկ որոց ըստ նախախնամութեանն են՝ ոչ ինչ անգանել ընդ հարկիւ՝ յառաջագոյն ցուցաւ։

Իսկ Ստոյիկեանքն իմաստասէրք զճակատագիրն հաստատեն, և զոր 'ի մեզն է առնել՝ ոչ խոստովանին[1], և ոչ մի տեղի նախախնամութեանն թողուն, այլ ճշմարտութեամբք՝ և՛ զոր 'ի մեզն է առնելն 'ի բաց բառնան, որպէս ցուցաւ յառաջագոյն։

Իսկ Դիմոկրիտոս և Հռակլիտոս և Եպիկուրոս, ոչ ըստ բոլորում և ոչ ըստ իւրաքանչիւրոցն նախախնամութիւն գոլ ախորժեն[2]։ Արդ՝ ոդքա հետևին իւրեանց սկզբանցն. քանզի ինքնամատոյց համարելով գոլ ամենայնի, վայելչաբար առանց նախախնամութեան գոլ ասեն զամենայն։ Քանզի որոց ոչ ոք է արարչագործ, այսոցիկ ո՛վ իցէ նախախնամող։ Յայտ է թէ ինքեանց ինքեամբք 'ի հարկէ բերիլ՝ իսկզբանն ինքնամատոյցն եղեալքն[3]։ Պարտ է այժմ առաջնոցն նոցա կարծեացն[4] ընդդիմանալ. զի այսոցիկ 'ի բաց բարձելոյ՝ բաւական են ասացեալքս 'ի ցուցումն նախախնա-

1 Ըստ յունին՝ τὴν εἱμαρμένην καὶ τὸ ἐφ' ἡμῖν πρεσβεύοντες, որ է. Մ՚ և զճակատագիրն և՛ զոր 'ի մեզն (զանձնիշխան կամս) միանգամայն խոստովանելով՝ չթողուն բնաւ տեղի նախախնամութեան։

2 Յոյն բնագիրն յաւելու զհետագայսդ, որք պակասին յօրինակս մեր. «Քանզի ասէր Եպիկուրոս. Որ երջանիկ և անմահն իցէ էակ՝ ոչ ինքն հոգ ինչ ունի և ոչ այլոց տայ ունել. վասն որոյ չիք 'ի նմա ոչ բարկութիւն և ոչ քաղցրութիւն. զի այդ ամենայն հետեւանք են տկարութեան։ Դարձեալ, բարկութիւն օտար է յԱստուծոյ. քանզի յայնժամ տեղի գտանի բարկութեան, յորժամ հակառակ ինչ կամացս գիպեսցի. այլ ոչ ինչ հակառակ կամացն Աստուծոյ հանդիպել մարթիցի»։

3 Ըստ յունին. Δῆλον γάρ, ὡς αὐτομάτως ἀνάγκη φέρεσθαι τὰ τὴν ἀρχὴν αὐτομάτως γενόμενα. — Լծմն. Ինքնամատոյցս, որպէս եթէ յինքենէ որպէս դէպ եղեն ստեղծան։

4 Զառաջին կարծիս (πρώτην δόξαν) իմա զհիմնական սկզբունս։

մութեան գոլոյ։ Արդ, պահելով իւրոյն ժամանակի զսորայն յանդիմանիչն, եկեսցուք յԱրիստոտելի կարծիսն, և յայլոցն՝ որք առանց նախախնամութեան ասեն գոլ զիւրաքանչիւրսն [1]։

Քանզի Արիստոտելէս 'ի բնութենէ միայնոյ կարգաւորիլ ախորժէ զորս ըստ մասինն, որպէս նշանակեաց յիւր անդ գրեալսն [2]. վասն զի զայս (բնութիւն) աստուածային գոլով և յեղականօս յամենեսին լինելով, իւրաքանչիւր ումեք բնաւորապէս 'ի ներքոյ գնէ զօգտակարացն զյօժարութիւնն և 'ի վնասակարացն փախուստ։ Քանզի իւրաքանչիւր ոք 'ի կենդանեաց՝ որպէս և ասացաւ իսկ՝ և զոր ըստ իւրն կերակուր ընտրէ և զօգտակարացն զհետ ընթանայ և զբժշկութիւնս ախտիցն բնաւորապէս գիտէ։

Իսկ Եւրիպիդէս և Մենանդրոս միապէս զմիտսն՝ որ յիւրաքանչիւրն ումեք՝ ասեն նախախնամօղ իւրաքանչիւրումն. յաստուածոցն և ոչ մի ոք։ Այլ միտք՝ որոց 'ի մեզն են՝ է միայն, զի կամ գործականացն և արուեստից, կամ տեսութեան. բայց նախախնամութիւն է՝ ոչ յորոց 'ի մեզն է առնելն. քանզի և հարստանալոյն և ոչ, և ողջ գոլոյն և ոչ, յայսցանէ [3] ոչ ինչ կարեն առնել միտք. այլ և ոչ բնութիւնս, որպէս Արիստոտելի թըւեցաւ. զի յայտնի են բնութեանս գործք։ Իսկ զինչ առ միտսն կամ առ բնութիւնն՝ երբեմն պատժիլ ազատոզին և երբեմն փախչիլ։ Եթէ ոք ասիցէ զմտացն և զբընութեան՝ նախախնամութեան գոլ, իսկ 'զերկրորդն ճակատագրին, իսկ եթէ մտաց և բնութեան նախախնամութեան է, բայց հետևող այսորիկ՝ ճակատագրին, 'ի բաց բառնայ որ 'ի մեզն է առնելն։ Այլ ոչ ունի այսպէս. քանզի որ ինչ մտացն է գործականին և տեսականին՝ 'ի մեզ առնելոյն ցուցաւ։

Բայց ոչ ամենայն որ ըստ նախախնամութեան՝ բնու-

1 Τὰ καθ' ἕκαστα, այն է՝ զառանձին առանձին իրս, զմանրամասն իրս։

2 Յոյնն ունի. Որպէս նշանակեաց 'ի վեցերորդի մատենին իւրում զԲարոյից առ Նիկոմաքոս։

3 Յօրինակս ինչ՝ յորոց։

թեան է, թէ և որ ինչ բնութեանն է՝ ըստ նախախնամութեան լինի։ Զի բազում ինչ որ ըստ նախախնամութեան լինի, ոչ է բնութեան գործ, որպէս 'ի վերայ սպանողին ցուցաւ։ Քանզի է մասն նախախնամութեան բնութիւնս, ոչ նոյնն նախախնամութիւն։

Արդ, սոքա բնութեանն և մտացն մակագրեն զնախախնամութիւնն՝ որ ըստ իւրաքանչիւրիցն։ Իսկ այլքն (առեն) Աստուծոյ փոյթ լինել էիցս յարամնայութեան, որպէս զի մի ինչ յեղելոցս պակասիլ. և այսորիկ միայնոյ առնել նախախնամութիւն[1]. իսկ իւրաքանչիւրիցն բերիլ որպէս և դէպ լիցի։ Եւ վասն այսորիկ (առեն) բազում անիրաւութեանց և զարշ սպանութեանց և միահամուռ ասել՝ ամենայն չարութեան քաղաքավարիլ 'ի մարդիկ. և սոցա որպէս և դէպ լիցի՝ ոմանց փախչել 'ի դատաստանէ և ոմանց տանջիլ, ոչ յորոց ըստ ուղիղ բանի և ոչ յորոց ըստ օրինաց ամենայն իրօք դիպեցելոց։ Իսկ ուրանօր ոչ օրէնք և ոչ բան ընկալեալ լինի, զիարդ արդեօք ասիցէ ոք Աստուած գոլ հպատակող. քանզի պատահի և քաղցունցն[2] յոլովակի անիրաւիլ և տառապիլ և ընդ բիւրօք չարեօք անկանիլ, իսկ չարացն և բռնաւորացն՝ աճել զօրութեամբ և հարստութեամբ և իշխանութեամբ, և այլովք կենցաղոյս բարութեամբք։

Ինձ թուի՝ որ զայսն ասեն՝ բազումս և այլս ինչ յորոց նախախնամութեանն են՝ անգիտանալ տեսութեանց, մանաւանդ զհոգւոյ անմահութիւն. քանզի մահկանացու զնա վարկանին գոլ, այսր կենաց պարագրելով զորս ինչ մարդոյն են։ Եւ ապա խոտորեալս ունին զորս յաղագս բարութեանցն դատողութիւնս. քանզի համարին զորս 'ի հարստութիւնսն են անկեալք և զօրացեալ պատուօք և այլովք նիւթականօք բարութեամբքս պայծառացեալք՝ երջանիկս գոլ և երանելիս. իսկ զհոգւոյն բարութիւնսն առ ոչինչ դնեն, բազում չափովք քան զմարմնականն և զարտաքոյս[3] զգերա-

1 Իմա՛, և յայսմիկ ևեթ կացուցանեն զբովանդակ գործ նախախնամութեանն։

2 Χρηστός, քաղցրաբարոյից, լաւաբարոյից։

3 Իմա՛ զերևելիս (ἐκτός)

զանցեալն. քանզի վեհագոյն են՝ վեհագունին բարութիւնքն: Արդ, այսքան առաքինութիւնք քան զհարըստութիւն և քան զողջութիւն և քան զայլսն լաւագոյն են, որչափ հոգի քան զմարմին: Քանզի և միայնք և համդերձ այլովքն՝ առաքինութիւնք երանելի առնեն զմարդն. այլովքն՝ ըստ լայնութեան, իսկ միայն և ըստ ինքեանց՝ ըստ պարագրութեան: Քանզի յէիցս են ինչ՝ որ ըստ պարագրութեան իմանին, որպէս երկկանգուն, և են ինչ՝ որ ըստ լայնութեան, որպէս չեղջ. քանզի 'ի չեղջ եթէ առնուցուս չափս երկուս՝ թողեալըն 'ի նմա լինի չեղջ և ըստ լայնութեանն. յերանութեանն թէ 'ի բաց առցես զոր ինչ մարմնոյն և զորս արտաքոյ բարութիւնքն, և թողուս միայն զառաքինութիւնսն, մնայ և այսպէս երանելի. քանզի առաքինութիւն և ըստ ինքեան բաւական է յերջանկութիւն:

Արդ, ամենայն բարի՝ երանելի է, և ամենայն չար՝ թշուառական, թէ և զամենայն միահամուռ ունի զասացեալսն բախտի բարութիւնս: Զոր անգիտացեալք բազումք՝ միայն երանելիս գոլ համարին զմարմնով զուարճացեալսն և զհարստացեալս: վասն որոյ մեղադրեն զնախախնամութիւնն, որ ոչ միայն յերևելեացս կարգաւորէ զմեզ, այլ և ըստ իւրոյն նախախնամութեան[1]: Քանզի գիտելով Աստուած թէ քան զայժմուս բարիս՝ օգտակար է տնանկանալն, թէ ապականէ զբարոյս նորա՝ հարստութիւնն եկեալ 'ի վերայ, 'ի տնանկութեան պահէ զնա օգտակարապէս: Եւ տեսեալ յոլովակի զհարուստն թէ դժնդակագոյն լինելոց է՝ պակասեալ յինչս[2], յաւազակութիւնս ձեռնարկեալ կամ 'ի սպանութիւնս կամ յայլ ինչ մեծագոյն չարիս, թողու վայելել զհարըստութիւնն: Ապա ուրեմն և տնանկութիւն յոլովակի օգտակար եղև մեզ, և զաւակաց մահ և ծառայից փախուստ. քանզի դառնագոյն արդեօք քան զկորուստն նոցա լինելոց էր ապրելն վատթար զաւակացն և աւազակ ծառայիցն. քանզի մեք ոչ գիտելով զոր ինչ լինե-

1 Յօրինակն 'ի լուսանցս՝ Ամենագիտութեան:
2 Յօրինակս երկուս՝ յընչից:

լոցն է՝ առ մերձակայս միայն հայիմք, ոչ ուղղակի դատելով զորս ինչ պատահելոցն է. բայց Աստուծոյ՝ հանդերձեալքն որպէս առընթերքս են։

Այլ այսորիկ առ ստգտողսն ասացան, առ որս և պատշաճ է ասել զգրեալսն. Մինթէ ասիցէ կաւն ցբրուտն։ Զիարդ ոչ է փախչել 'ի մարդոյ՝ որ ընդ դէմ օրինադրէ Աստուծոյ, և հակառակս հրամայէ Նախախնամութեան գործոյ, որ և ոչ մարդկային օրինադրութեան ընդդիմանալ իշխէ։ Արդ, թողեալ զայսպիսիս յանցանս՝ յաւէտ զամբարշտութիւնս, ցուցցուք թէ որպէս ոչ այլազգ ասի նոցա առանց Նախախնամութեան՝ որոց ըստ իւրաքանչիւրեացն[1]. քանզի կամ անգիտանալ Աստուծոյ եթէ բարուք է և այսոցիկ հոգ տանել, և կամ ոչ կամել և կամ ոչ կարել։ Այլ անգիտութիւն և անուսմնութիւն ամենայն՝ ամենևին օտար է երանականին էութեան. քանզի նոյն (իՍքՍ) գիտութիւն է և իմաստութիւն և մակացութիւն։ Զիարդ (անգիտանալ հնար իցէ Աստուծոյ, զոր և ոչ)[2] մարդ բարուք իմացող՝ անգիտանայցէ, թէ որոց ըստ մասինս են՝ ամենեցունց ապականեցելոց, և որք ըստ բոլորումն են՝ ապականեսցին. քանզի յամենեցունց յորոց ըստ մասինս են՝ կան հաստատուն որք ըստ բոլորումն. զի հաւասարէ զտեսակսն համանգամայն՝ որոց ըստ մասին, և ընդդէմ դարձուցանէ[3], և 'ի միասին ապականի, և 'ի միասին ամբողջ պահի։ Եւ ոչ ինչ արգելու ամենայն անհատիցն կորընչել՝ թէ և ոչ միոյ 'ի վերուստ հոգա-

1 Այսպէս խառնակ և պակասաւոր յամենայն օրինակս մեր։ Ըստ յունին թարգմանելի է. Ցուցցուք զի ոչ իրաւամբք 'ի բաց տանին զնախախնամութիւնն 'ի մանրամասն իրաց, որք զընդհանուրս և զգլխաւոր իրս (զտեսակսն) կախեալ զայնմանէ խոստովանին։ Քանզի երիս պատճառս եթէ մարթ է նոցա 'ի մէջ ածել՝ որովք զատանել զնախախնամութիւնն Աստուծոյ յիւրաքանչիւրեացն կարասցեն. քանզի կամ անգիտանալ, և այլն։

2 Փակագծեալք պակասի յօրինակս մեր. յաւելաք ըստ յունին՝ առ 'ի լրումն իմաստիցն։

3 'Εξισάζει γοῦν τὰ εἴδη πᾶσιν ὁμοῦ τοῖς κατὰ μέρος, καὶ ἀντιστρέφει. Կամի ասել՝ զի մասունքն և բոլորն փոխադարձ են իրերաց, որով յապականել միոյն՝ ապականի և միւսն, և այլն. զի զտեսակն հաւասարեն կամ լինին՝ որք ըստ մասինն են։

բարձութեան հանդիպեսցի. և այսոցիկ ապականեցելոց՝ և որք ըստ բոլորումն են ապականեցին։ Իսկ եթէ զայս միայն ասեն նախախնամել նմա (Աստուծոյ), զի մի որք ըստ մասինն[1] են կորընչել, զի ամբողջ պահեսցին տեսակքն, զանխլանան ինքեանց ասելով գոլումն և ըստ իւրաքանչիւրիցն նախախնամութիւն. քանզի զայսոսիկ նախախնամելով, որպէս նոքայն ասեն, պահէ զտեսակն և զսեռն։

Այլ ասեն. ոչ անգիտանայ, այլ ոչ կամի նախախնամել։ Այլ ոչ կամելն՝ վասն երկուց պատճառաց լինի, կամ վասն հեղգութեան և կամ վասն անվայելուչ գոլոյն։ Եւ զիա՞րդ ոչ իցէ մոլեգնեալ՝ որ հեղգութեան պատճառս ածիցէ 'ի վերայ Աստուծոյ. քանզի դարձեալ յերկուց յայսցանէ ծնանի հեղգութիւնն, 'ի հեշտութենէ և յերկիւղէ. քանզի կամ 'ի հեշտութենէ քարշեալք հեղգանամք, կամ վասն երկեղի 'ի բաց կամք։ Բայց և ոչ մի յայսցանէ արժան է ածել զմտաւ վասն Աստուծոյ։ Իսկ եթէ հեղգութիւն ածել 'ի վերայ հրաժարեն, բայց ասիցեն եթէ ոչ վայել է Աստուծոյ, քանզի անարժան է այնքան երանութեանն՝ յանարգսն և 'ի փոքունսն զիջանել, և իբր զի չաղախել 'ի նիւթականս և յօժարականս անտեղութիւնս[2], և վասն այսորիկ ոչ կամել. անգիտանան. երկուս ախտս վատթարս հպեցուցանեն յԱստուած, հպարտութիւն և չաղախումն. զի կամ վասն հպարտութեան անտես առնէ զարարչագործն՝ զսկիզբն և զկարգաւորութիւնն՝ որոց ըստ մասին, զոր է անտեղի ասել. կամ 'ի չաղախումն խոնարհել, որպէս նոքայն ասեն։ Իսկ եթէ արեգականայնոյն ճառագայթից՝ բնութիւն ունելով յինքն քարշել զամենայն խոնաւուտ, ոչ ասեն չաղախել արեգականն, այլ և ոչ նոցունց ճառագայթիցն յորժամ 'ի վերայ 'ի տղմոյ իրիք ծագիցէ, այլ մնալ անարատս և մաքուրս, զիա՞րդ համարին չաղախիլ Աստուծոյ յայսպիսեաց գործոց։ Ոչ է մարդկան գիտողաց զբնութիւն

1 Օրինակս մեր խառնակ թուի զոչ ամենայնի որք ըստ մասին են. յարմարեցաք ըստ յունին։

2 Օրինակս երկուս 'ի լուսանցսն՝ անբողոքրինս։

Աստուծոյ այսոքիկ օրինադրութիւնք. քանզի անախտ է և անապական և անաղտ և 'ի վեր քան զամենայն այլայլութիւն աստուածութիւնն. քանզի շաղախումն և ամենայն այսպիսիքս՝ յեղման իրիք գործ է։ Զիա՞րդ ոչ է անտեղի, (զի) արուեստաւորք զի՞նչ և է արուեստի, և մանաւանդ բժիշկք՝ հոգ տանելով բոլորումն՝ ոչ ինչ յորոց ըստ մասինն և ոչ փոքր ինչ՝ թողուն անարուեստ և անհպատակ, գիտելով թէ 'ի բոլորն ընթանայ 'ի մասնէն. և զարարչագործն Աստուած և քան զարուեստաւորսն ցուցանեն անուսմնագոյն։

Այլ արդեօք կամիցի և ոչ կարիցէ։ Եւ զիա՞րդ ոչ հակառակ երևեցուցանէ տկար ասել զԱստուած և անզօր 'ի բարի առնել։ Իսկ այլազգ, ըստ երկուց յեղանակաց սասանցէ ոք զԱստուած անզօր գոլ նախախնամել զանհատս, կամ ինքն ոչ բնաւորիլ, կամ զօրս ըստ մասինն՝ անընդունակս գոլ նախախնամութեան։ Այլ զի ինքն բնաւորեալ է նախախնամել, և նոքա խոստովանին՝ որովք ասենն զնա ըստ բոլորումն[1] նախախնամել։ Իսկ այլազգ, նուաստագունիցն հասանել 'ի գերակայսն՝ ոչ է կարողութիւն, բայց վեհագունիցն զօրութիւն մինչև ցյետինսն և անզգայսն ամբողջ պահելիջանէ. քանզի ամենայն ինչ կազմեալ է Աստուծոյ կամօքն, և 'ի նմանէ առնու զկարամնայութիւնն և զփրկութիւնն։ Իսկ զի և անհատիցն և բազմաց ելոց գոյացութիւն նախախնամութեան է ընդունակ՝ յայտ է և յանբանիցն, որք յիշխանութեանց իմն և յառաջնորդաց կարգաւորին, որոց բազումք տեսակք (են). քանզի և մեղուք և մրջիւնք և բազումք յերամացելոցն՝ յառաջնորդաց ումանց կարգին, որոց հետևին հաւանեալքն։ Մանաւանդ թէ և ոք զայս ածեալ զմտաւ՝ 'ի մարդկան քաղաքավարութիւն հայեսցի. քանզի և երևի զօրինադրացն և զիշխանացն ընկալեալ կարգաւորութիւն և հոգաբարձութիւն։ Իսկ եթէ այսոցիկ ընդունական է, զիա՞րդ արդեօք իցէ արարչագործին նախախնամութեան անընդունակ։

1 Ցօրինակն մեր 'ի լուսանցս՝ զբոլորումն։

Ոչ փոքր ինչ նշանակ է իւրաքանչիւրոյն նախախնամութեան հանդիպելոյ՝ բնաւորապէս սերմանեալն 'ի մարդիկ գիտութիւնն նորա. քանզի 'ի վտանգս ինչ ըմբռնեալք, անդէն վաղվաղակի յԱստուած և յաղօթս ապաւինիմք. բնութեանս ածեալ զմեզ՝ առանց ուսանելոյ՝ յօգնականութիւնն որ 'ի նմանէ. քանզի ոչ արդեօք ածէր զմեզ՝ առանց ուսանելոյ բնութեանս՝ յոր ոչ ունէր բնութիւն առնել: Քանզի յանկարծակի անկեալ 'ի խռովութիւնս և յահս՝ անյօժարաբար և նախ քան զնկատելն ինչ՝ առ Աստուած աղաղակեմք: Արդ՝ ամենայն որ այսպէս բնաւորապէս հետևին, հզօրապէս ունիցի ցուցումն, և ոչ մի ինչ ընդդիմաբանութիւն ընկալեալ:

Արդ, ուստի եկն յառաջ այս բանք որ զայսն օրինադրեն. նախ՝ կարծելովն 'ի միասին լուծանել մարմնոյն և հոգւոյն. երկրորդ՝ եթէ ոչ կարէ բան քննել զըստ մասինն նախախնամութիւն: Այլ զի ոչ է մահկանացու անձն, և ոչ այսու կենցաղաւ չափի որ ինչ մարդոյս է, յայտնի են 'ի Հելլենացւոց լեզուն իմաստասիրացն ասացեալն մարմնափոխութիւնք, և ասացեալքն տեղիք անձանց վիճակիլ առ 'ի իւրաքանչիւր ուրուք վարս, և պատիժք անձանց՝ զորս պատժին ըստ ինքեանց: Քանզի և այսոքիկ թէ և խոտորին ըստ այլ իրիք, այլ զանձն գոլ ասեն յետ կենցաղոյս այսոցիկ, և դատաստան ընդունել յանցանացն իւրոց խոստովանին:

Իսկ եթէ անհասանելի է մեզ՝ որոց ըստ մասինն նախախնամութեանն բան, որպէս և է, ըստ որում եթէ Անքննելի են դատաստանքն նորա, և անզննելի են ճանապարհքն նորա. այլ ոչ վասն այսորիկ պարտ է ասել թէ ոչ է նախախնամութիւն: Քանզի ոչ՝ վասն զի զչափ ծովու անգիտանեմք և զթիւ աւազոյ, ասիցէ ոք ոչ ծով և ոչ աւազ գոլ. այսպէս արդեօք ասիցի ոչ մարդ և այլ կենդանի գոլ, վասն զի զթիւ մարդկան և այլոց կենդանեաց անգիտանան: Քանզի անհասքն՝ անբաւանդակելիք են մեզ, իսկ անբաւանդակելիքն մեզ՝ անգիտելիք մեզ. և որք ըստ բոլորումն՝ յոլովակի լինին ըմբռնելիք բանիւ, բայց որք ըստ մասինն՝ անկար է:

Արդ՝ կրկին գոլով ըստ իւրաքանչիւր մարդոյ տարբերութեան, առ այլ մարդ և առ ինքն, (քանզի բազում ինչ և առ ինքն իւրաքանչիւր ուրուք (գոյ) զօրհանապազ փոփոխումն և տարբերութիւն, 'ի վարս և 'ի գործս և 'ի ցանկութիւնս և 'ի պատահմունս. քանզի և դիւրադարձ է այս կենդանի՝ պիտոյիւք և ժամանակօք, վաղվաղակի փոփոխմամբք), հարկ է և զպատշաճ իւրաքանչիւր ումեք նախախնամութեանն զանազան և պէսպէս և բազմադրուագեալս և ընթացակից բազմացելոցն անհասութեան ունել։ Եթէ պարտ է ըստ պատեհութեան՝ իւրաքանչիւր ումեք ըստ իւրաքանչիւր իրի և իւր գոլ զնա, անբովանդակելի է ըստ մասինն տարբերութիւն. անբովանդակելի է ուրեմն և պատշաճ նախախնամութեանն նոցա բան։ Իսկ եթէ անբովանդակելի և անգիտելի է մեզ, արդ ոչ է պարտ զիւր անգիտութիւնն 'ի բաց բարձումն առնել էիցս հոգաբարձութեան։ Քանզի զորս կարծեսն դու ոչ բարւոք, այսոքիկ ըստ բանի արարչագործին լինի. բայց դու ոչ գիտելով զպատճառսն, ոչ ըստ բանի ասես լինել։ Քանզի զոր 'ի վերայ այլոցն անգիտելեաց կրեմք, զնոյն և 'ի վերայ գործոյն նախախնամութեան. յաղօտ նմանութենէ իմեքէ իմանամք զնորայսն, ուրուականս իմն և ստուերս գործոցն նորա, յեղելոց նմանութիւն իմն առեալք։

Արդ, ասեմք լինել ինչ ըստ թոյլ տալոյ Աստուծոյ. իսկ թոյլ տալոյն տեսակք բազումք։ Քանզի թոյլ տայ յոլովակի և արդարոյ անկանիլ 'ի փորձութիւնս, զի զծածուկն 'ի նմա առաքինութիւնս ցուցցէ այլոց, որպէս զՅովբայն։ Իսկ այլազգ, թոյլ տայ անտեղի ինչ գործել, զի 'ի ձեռն գործոյն թուեցելոյն անտեղւոյ՝ մեծ ինչ և սքանչելի կանգնեսցի, որպէս 'ի ձեռն խաչին զփրկութիւնն մարդկան։ Ըստ այլ յեղանակի, թոյլ տայ և սրբոց կրել ինչ չարչարանս, զի մի յուղիղ խորհրդոյն և 'ի տուեցելոյ նմա զօրութենէն անկցի 'ի հպարտութիւն, որպէս Պաւղոսի։ Թողեալ ոք լինի առ ժամանակ մի՝ յուղղութիւն այլոց, զի 'ի նորա դիպմանէն՝ այլք խրատեսցին, որպէս 'ի Ղազարուն և 'ի մեծատանն։ Քանզի բնաւորապէս՝ տեսեալ զոմանս 'ի կիրս

ինչ՝ ամփոփիմք. որպէս ասէ բարւոք և (Ըի) Մենանդրեայ, եթէ «Երկուցեալք յԱստուծոյ 'ի քոյոյդ կրից»։ Թողեալ լինի ոք և 'ի յայլոյ փառս, ոչ վասն իւր և կամ վասն ծնողաց մեղաց, որպէս 'ի ծնէ կոյրն՝ 'ի փառս Որդւոյն Աստուծոյ։ Դարձեալ թոյլ տուեալ լինի չարչարել ումեք՝ յայլոց նախանձ. զի փառք չարչարեցելոյն մեծացեալ՝ անդանդաղելի լիցի այլոցն չարչարել, յուսով հանդերձեցելոցն փառաց և ցանկութեամբ ակնկալեաց բարեաց, որպէս մարտիրոսացն, և որք զանձինս իւրեանց ետուն փոխանակ հայրենեաց և ազգի և տերանց։

Իսկ եթէ թուեսցի արտաքոյ բանի գոլ չարչարել սրբոցն չարաչար՝ առ 'ի յայլոցն ուղղութիւն, գիտասցէ եթէ կենցաղս այս հանդէս է և ասպարէզ առաքինութեանց, և որքան մեծագոյն են աշխատութիւնքն, այնքան մեծամեծք են և պսակքն. քանզի առ այնչափ համբերութիւնն և՛ յաղթանակացն տուրք։ Վասն այնորիկ և Պաւղոսի թոյլ տուաւ լինել 'ի բեւրս նեղութիւնս, զի մեծ և կատարեալ առցէ զյաղթութեանն պսակ։

Արդ, ամենայն բարւոք և պիտանի լինի նախախնամութեանն գործ։ Եւ զի բարւոք և պիտանի և որպէս միայն ընդունական է, ամենայնի կարգաւոր է Աստուած, երկոքումբք դիտմամբքս այսոքիւք վարեալ յամենեցունց խոստովանելեօք՝ ուղիղս դիտեսցէ։ Բարերար է Աստուած և միայն իմաստուն. ապա ուրեմն վասն բարերար գոլոյն՝ վայելչաբար և նախախնամող է, և վասն իմաստուն գոլոյն՝ իմաստնաբար և բարւոք հոգտանի էիցս. քանզի թէ ոչ նախախնամէ՝ ոչ է բարերար, և եթէ ոչ բարւոք՝ ոչ է իմաստուն։ Արդ՝ պարտ է այսոցիկ զգուշանալ դիտմանց, և ոչ ըստգտանել զնախախնամութեանն գործ, և ոչ հայհոյել. այլ առանց քննելոյ՝ զամենայն յանձն առնուլ, ընդ ամենայն սքանչանալ, զամենայն ասել բարւոք և պիտանի զեղեալս, թէ և երևեսցի բազմաց անիրաւ, զի մի առ ինչ հայհոյութիւն, բազում ինչ և անուանութեան մերոյ 'ի վերայ արկցուք պարսաւանս[1]։

1 Այսպէս յօրինակս մեր։ Ըստ յունին միտք բանին են. Զի մի առաւելուցումք զչափ հայհոյանացս՝ տգիտութեամբս մերով։

Իսկ յորժամ ասեմք զամենայն ինչ բարւոք լինել, յայտ է թէ ոչ վասն չարութեան մարդկան և ոչ որոց 'ի մեզն է առնել գործոց, և ոչ 'ի մէնջն եղելոցն ասեմք, այլ յաղագս որոց նախախնամութեանն են, որոց առնելն ոչ է 'ի մեզ:

Արդ, զիարդ արք սուրբք 'ի դառն մահս անկանին և 'ի սպանումն անպատճառ. զի թէ անիրաւութեամբ՝ վասն էր ոչ արգել արդար նախախնամութիւն զսպանումն. իսկ եթէ իրաւամբք՝ անմեղաք են ամենայն իրք սպանողքն: Առ այսորիկ ասեմք, թէ և որ սպանանէն՝ անիրաւութեամբ սպանանէ. և որ սպանանին՝ կամ իրաւամբք սպանանի, կամ՝ վասն օգտի. իրաւամբք՝ է երբեք վասն անտեղի գործոց, բայց մեզ անյայտ. իսկ ըստ օգտի՝ յառաջեալ նախախնամութեանն, քանզի 'ի հանդերձեալսն լինել 'ի նմանէ չար գործս, և եթէ լաւ է նմա մինչև ցայս վայր կեալ. որպէս և Սոկրատեայ և սրբոցն: Իսկ որ սպանն՝ անիրաւութեամբ սպան. քանզի ոչ վասն այնորիկ և ոչ զի պարտ էր նմա, այլ վասն շահու և աւազակութեան կամաւորութեամբ:

Քանզի 'ի մեզ են գործք. բայց կիրքն ոչ 'ի մեզ, որպէս սպանանելն: Եւ մահ ոչ մի է չար, բայց միայն վասն մեղացն, որպէս յայտ է 'ի սպանեցելոցն սրբոց արանց: Իսկ մեղաւորն թէպէտ և 'ի մահիճս, և թէպէտ յանկարծակի առանց ցաւոց վախճանեսցի, չարաչար մեռաւ, չար թողակ տարեալ ընդ իւր զմեղսն: Բայց որ սպանն՝ չարաչար սպան. վասն զի թէ իրաւամբք սպան՝ 'ի դահճացն դասս կարգեաց զինքն. իսկ եթէ ըստ օգտի՝ 'ի գարշ սպանողացն և 'ի պղծոց:

Այսոքիկ և 'ի վերայ այնոցիկ՝ որք պատերազմաւն ըսպանանեն և գերեն և զամենայն չար առնիցեն գերելոցն: Այսոքիկ և 'ի վերայ ժլատիցն և յափշտակողացն զինչսն. քանզի յորոց հանեն՝ թերևս վասն օգտի, իսկ յափըշտակողքն՝ անիրաւք. զի վասն ժլատութեան, և ոչ վասն օգտի հանեն 'ի նոցանէն:

## Յիշատակարան Թարգմանչին

Ի վեցհազարերորդի երկերիւրերորդի քսաներորդի եօթներորդի արարածոց աշխարհիս, ըստ յունարէն թուոյ՝ 'ի չորեքտասաներորդի ընդիքտիոնին. իսկ ըստ հայոցս թուի ՄԻԱ (772), յառաջին ամի թագաւորութեան Լէօնի, թարգմանեցան գիրք սրբոյն Գրիգորի, Նիւսեայ եպիսկոպոսի, 'ի ստոյգ օրինակաց, 'ի Կոստանդնուպօլիս[1]. 'ի ձեռն Դաւթի հիւպատոսի, և թագաւորական սեղանոյն կենաառի. 'ի ձեռն Ստեփանոսի քահանայի[2] և քերթողի, աշակերտի տեառն Մովսէսի Սիւնեաց եպիսկոպոսի: Յիշեցէք զնոսա ընդօրինակողք, և փոխեցէք զբանս յիշատակի 'ի յոյս փրկութեան աշխատողացն և յիշողացդ՝ առ Քրիստոս. որում փառք յաւիտեանս. ամէն:

1 Որպէս յիշեցաք 'ի սկզբան՝ զմատեան զայս Նեմեսիոսի՝ վերագրեն նախնիք մեր յանուն Ս. Գրիգորի Նիւսացւոյ:

2 Որ է ծանօթն և հռչակաւորն Սիւնեցին Ստեփանոս. այլ խնդրելի է թէ արդեօք ինքնի՞ն իցէ թարգմանիչն թէ լոկ սրբագրող կամ յարդարող թարգմանութեան յիշատակելոյն 'ի նմանէ Դաւթի հիւպատոսի. որում յիրաւի 'ի դէպ էր ընծայել զյունախօս հայերէնդ քան հեղինակի վսեմական Աւագ Օրհնութեանցն, եթէ չէին 'ի միջի և այլ յունաբան թարգմանութիւնք վերջնոյս և վկայութիւնք պատմագրաց զգործոյ նորա 'ի քաղաքին Կոստանդնուպօլսի:— Իսկ թէ զինչ նշանակէ կենաառ պատուոյ կոչումն՝ զոր վերագրէ Դաւթի՝ անգիտանամք:



# ՑՈՒՑԱԿ ՅԱՏՈՒԿ ԱՆՈՒԱՆՑ


Աղեքսանդրիա քաղաք 55.
Ամմոնի (Սակկաս) իմաստասէր 27, 53.
Անաքսագոր իմաստասէր 148.
Անաքսարքոս իմաստասէր 114.
Անաքսիմենէս իմաստասէր 68.
Ապողինարէս, եպիսկոպոս Լաւոդիկեայ 9, 44, 45, 67.
Արիստոտելէս իմաստասէր 10, 13, 26, 27, 38, 39, 40, 43, 57, 58, 60, 63, 64, 66, 72, 87, 88, 96, 105, 136, 150, 152.
Բաբելոն 144.
Գաղիանոս, Գաղինոս բժշկապետ 34, 35, 50, 72, 85, 100, 105,
Դանիէլ մարգարէ 24.
Դաւիթ մարգարէ 45.
Դիմոկրատէս կամ Դիմոկռիտոս իմաստասէր 26, 105, 151.
Դինարքոս իմաստասէր 27, 33.
Դիոնիւսիս բռնաւոր 114.
Եբրայեցիք 20, 67, 83, 144.
Եգիպտացիք և Եգիպտոս 127, 144.
Եթովպացիք 115.
Եղիա մարգարէ 133.
Ենովք նահապետ 133.
Եպարքոս Մենտապոնտինոս 68.
Եպիկուրեանք 72.
Եպիկուրոս իմաստասէր 26, 95, 151.
Եւբեկլիոս քանաստեղծ 145.
Եւնոմիոս (հերեսիովտապետն) և Եւնոմիոսեանք 42, 43, 44, 56.
Եւռիպիտէս 152.
Զենոն իմաստասէր ստոյիկեան 87, 114.
Թաղէս իմաստասէր 26, 68.
Թէոդորոս իմաստասէր 47.
Իպպոն իմաստասէր 26.
Լակեդեմոնացիք կամ Ղակեդեմոնացիք 136.
Կղէանթէս իմաստասէր 30, 31.
Կռէտիաս իմաստասէր 26.
Կռինոս իմաստասէր 47.
Կրետացիք 136.
Հելլենացիք, Յոյնք 47, 144, 145, 158,

Հերակլիտոս կամ Եռակլիտոս իմաստասէր 26, 68, 151.
Հիպիկռիոնտէս բռնաւոր 115.
Հիպպարքոս կամ Իպպարքոս իմաստասէր 72.
Հիւպոկռատ իմաստասէր 35, 58, 67.
Հռովմ քաղաք 55.
Հրէայք 144.
Մանիքեցիք 27, 45.
Մենանդրոս 152, 160.
Մովսէս մարգարէ 14, 16, 43, 44, 67.
Յամբլիքոս իմաստասէր 47.
Յոբ 67, 139, 159.
Յովսէփ (Նահապետն) 115.
Նումենիոս իմաստասէր 27.
Շուշան 115, 145.
Որոգինէս կամ Իւրիւգինէս 57, 83, 115.
Ուրիա (Քետացի) 45.
Պանետիոս իմաստասէր 87.
Պաւղոս Առաքեալ 14, 24, 159, 160..
Պիւթագորաս իմաստասէր և Պիւթագորեանք 26, 42, 83.
Պղատոն իմաստասէր 10, 27, 33, 46, 47, 48, 51, 52, 64, 65, 66, 71, 72, 83, 84, 94, 131, 132, 134, 150.
Պղատոնեանք 30, 47.
Պղոտոնիոս (Պղոտինոս) իմաստասէր 9, 53.
Պորփիւռիոս իմաստասէր 47, 56, 73.
Սողոմոն (Իմաստունն) 45.
Սիմիաս իմաստասէր 33.
Սոկրատ իմաստասէր 33, 134, 161.
Ստոյիկեանք 26, 28, 30, 43, 66. 69, 70, 126, 133, 134, 151.
Փիլիպատոս կամ Փիլոպատիս իմաստասէր 126, 127.
Քռիւսիպպոս իմաստասէր 30, 32, 126.
Քսենոկռատէս իմաստասէր 42.



# ՑԱՆԿ ՆԻՒԹՈՑ

---


ՆԱԽԱԲԱՆ . . . . . . . . . 5

Ա. Յաղագս Բնութեան մարդոյ . . . . . 9

Բ. Յաղագս Անձին է բան, այսինքն է հոգւոյ մարդոյ . 26

Գ. Յաղագս միաւորութեան հոգւոյ և մարմնոյ . . 51

Դ. Յաղագս Մարմնոյ . . . . . . 58

Ե. Յաղագս Տարերց . . . . . . 60

Զ. Յաղագս Տեսողականի . . . . . . 69

Է. Յաղագս Երեսաց . . . . . . 72

Ը. Յաղագս Շօշափողականին . . . . . 77

Թ. Յաղագս Ճաշակելեաց . . . . . . 80

Ժ. Յաղագս Լսելեաց . . . . . . 81

ԺԱ. Յաղագս Հոտոտելեացն . . . . . 82

ԺԲ. Յաղագս Իմացողականին . . . . . —

ԺԳ. Յաղագս Յիշողականին . . . . . . 83

ԺԴ. Յաղագս Ներտրամագրեցելոյ և յառաջ բերեցելոյ բանի . . . . . . . . . 86

ԺԵ. Այլազգ տարորոշումն անձին . . . . 87

ԺԶ. Յաղագս անբանին մասին կամ տեսակի, որ և ախտական և հարկաւոր ցանկականն կոչի . . 88

ԺԷ. Յաղագս Ցանկականին . . . . . . 91

ԺԸ. Յաղագս Հեշտութեանց . . . . . 92

ԺԹ. Յաղագս Տրտմութեան . . . . . . 97

Ի. Յաղագս Արտմտութեան . . . . . 98

ԻԱ. Յաղագս Երկիւղի . . . . . . 99

ԻԲ. Յաղագս անբանին և անհնազանդին բանի . . . 100

ԻԳ. Յաղագս Կերակրականի . . . . . 101

ԻԴ. Յաղագս Շնչերակաց . . . . . . . 103

ԻԵ. Յաղագս ծննդականի կամ սերմնականի . . . 104

ԻԶ. Այլ տարորոշումն զօրութեանց կենդանւոյ . . 106

ԻԷ. Յաղագս ըստ յարձակման կամ ըստ յօժարութեան շարժութեան, որ է հարկաւոր ցանկականին . 107

ԻԸ. Յաղագս Շնչոյ . . . . . . . . 108

ԻԹ. Յաղագս Կամաւորի և Ակամայի . . . . 113

Լ. Յաղագս Ակամային . . . . . . . 114

ԼԱ. Յաղագս անգիտութեան ակամայի. . . . 116

ԼԲ. Յաղագս Կամաւորի . . . . . . . 118

ԼԳ. Յաղագս Նախայօժարութեան . : . . 120

ԼԴ. Յաղագս որոց խորհիմքն . . . . . 122

ԼԵ. Յաղագս Ճակատագրի . . . . . . 125

ԼԶ. Յաղագս աստեղաց Ճակատագրի . . . . 227

ԼԷ. Յաղագս որոց ասեն զյօժարութիւն գործոցն 'ի մեզ գոլ . . . . . . . 129

ԼԸ. Յաղագս եթէ զիարդ ասէ Պղատոն զՃակատագիրն . 131

ԼԹ. Յաղագս որ 'ի մեզն է առնելն, որ է՝ անձնիշխանականին . . . . . . . . 134

Խ. Յաղագս որոյ թէ են ինչ՝ որ 'ի մեզ է առնելն . 137

ԽԱ. Թէ վասն զի՞նչ պատճառի անձնիշխան եղեաք . . 140

ԽԲ. Յաղագս Նախախնամութեան . . . . 143

ԽԳ. Յաղագս թէ զի՞նչ է Նախախնամութիւն . . 149

ԽԴ. Յաղագս թէ ո՞յց է Նախախնամութիւն . . . 150

Յիշատակարան Թարգմանչին . . . . . 162

Ցուցակ յատուկ անուանց մատենիս . . . . 163




